# ՀԱՅԿԱԿԱՆ
## ԸՆԴՀԱՆՈՒՐ
# ԴՐԱՄԱԳԻՏՈՒԹԻՒՆ
## ԵՒ
# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ԴՐԱՄՆԵՐ

*Զարդարուած հարիւր քառասուն պատկերներով*

ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ

Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ

---

Պսակուած «Սրբոց Թարգմանչաց–Դուրեան Գրական Մրցանակ»ով



ՎԵՆԵՏԻԿ
ՏՊԱՐԱՆ – Ս. ՂԱԶԱՐՈՒ
1936

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴՐԱՄԱԳԻՏՈՒԹԻՒՆ

# NUMISMATIQUE GÉNÉRALE ARMÉNIENNE

# NUMISMATIQUE GÉNÉRALE

DE

# L'ARMÉNIE

(MONNAIES ARMÉNIENNES

ET

AUTRES MONNAIES FRAPPÉES EN ARMÉNIE)

Ornée de cent quarante gravures

PAR

**K. J. BASMADJIAN**

---

**Lauréat du Prix littéraire «Sahak-Mesrop»**
fondé par Monseigneur É. Tourian, Patriarche arménien
de Jérusalem.

---

VENISE
Imprimerie de Saint Lazare
1936

# ՀԱՅԿԱԿԱՆ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ

# ԴՐԱՄԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ԵՒ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ԴՐԱՄՆԵՐ

*Զարդարուած հարիւր քառասուն պատկերներով*

ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ

Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ

---

Պսակուած «Սրբոց Թարգմանչաց–Դուրեան Գրական Մրցանակ»ով

---



ՎԵՆԵՏԻԿ

ՏՊԱՐԱՆ – Ս. ՂԱԶԱՐՈՒ

1936

# ԶՕՆ

ՏԱՍՆԵՐԵՔ ԱՆԴԱՍՏԱՆՆԵՐԷ ՀԱՒԱՔԱԾ

ԱՅՍ ՓՈՒՆՋՍ

ԿԸ ԶՕՆԵՄ ԿԸ ՆՈՒԻՐԵՄ

Ի ՅԻՇԱՏԱԿ

ՅՈՅԺ ՀԱՄԱԿՐԵԼԻ

ԳԵՐԱԶՆԻԻ ԵՐԻՏԱՍԱՐԴԻՆ՝

ՈՂԲԱՑԵԱԼ ԱՆԵՐՈՐԴԻՈՅՍ՝





2. Անի. – Տապա-նաքարեր.

## ԳԷՈՐԳ ԳԸՐԼԱՆԿԸՃԵԱՆԻ

ՈՐ ԱՆՈ՜ՅՇ ԵՐԱԶՆԵՐՈՎ ԹՌԱՒ

ԱՆՄԱՀԱՑԱՒ «ԾԻԾԱՌՆ» ԱՆՈՒԱՆ ՏԱԿ

ՔԵՐԹԵԼՈՎ ԵՐԳԵԼՈՎ

ՀՐԱՇԱԼԻՔՆԵՐԸ ԲՆՈՒԹԵԱՆ

---

Ծն. 1878 Սեպտ. 23 եւ † 1919 Նոյ. 14, ի Կ. Պոլիս.

---

Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ

## ՆԱՄԱԿ

# ՈՂԲԱՑԵԱԼ ՆՇԱՆ ԳԱԼԸՊՃԵԱՆԻ

Բարիզ, 15 Սեպտ. 1934

Ամենապատիւ

Տ. Թորգոմ Արքեպիսկոպոս Գուշակեան

Պատրիարք Ս. Յակոբեանց Առաք. Աթոռոյ

Յ'ԵՐՈՒՍԱՂԷՄ

Սրբազան Հայր,

Ձեր Սրբազնութեան 6 Օգոստոս 1934 թուակիր և 3336/29 թուահամար յանձնարարեալ նամակը ընդունած եմ, որով պատիւ ըրած էք ինձ գնահատման ենթարկելու, Բանասէր Պ. Կ. Յ. Բասմաջեանի մի երկասիրութիւնը որ կը կոչուի «Հայկական ընդհանուր Դրամագիտութիւն»:

Սոյն երկասիրութեամբը Պ. Բասմաջեան, կ'ըսէք, մասնակցած է «Սրբոց Թարգմանչաց – Դուրեան» Գրական Մրցանակին:

Սրբազան Հայր, նախ պարտ է ինձ ըսել թէ Հայկական և այլ հին դրամներու (Collectionneur) դրամահաւաք մը եղած եմ 30–40 տարիներէ ի վեր, ուստի աւելի իբր Amateur կարող եմ խօսիլ քան թէ մասնագէտ:

Բայց դրամահաւաքութեան սէրս, անշուշտ զիս մղած և պարտադրած է նաեւ ուսումնասիրել մեր Ազգ. Պատմութիւնն ու դրամներն որոնք անբաժանելի են իրարմէ:

Ուսումնասիրութիւններս հիմնուած են Langlois-ի 2 հատորներուն, Հայր Սիպիլեանի, Պետրովիչի, Մօրկանի, Բասմաջեանի և այլ բանասիրաց գործերուն վրայ:

Հայկական դրամներու փառապսակը կը կազմեն Տիգրան Մեծի և իւր որդւոյն Արտաւազդի դրամները, որոց գեղեցկագոյն օրինակներն ունիմ հաւաքածոյիս մէջ, ինչպէս նաեւ Կիլիկեան Հայ դրամներու շքեղ Série մը:

Հայաստան՝ ինչպէս իր պատմութիւնն կը հաստատէ, Քրիստոսէ առաջ և վերջ, դարերու ընթացքին չէ ունեցած երկարատեւ միակերպ անկախ Ազգ. իշխանութիւններ և այդ իշխանութիւններէն բղխած դրամներու շրջաբերութիւն:

Ըստ իս, Հայկ. դրամներու ուսումնասիրութիւնը տակաւին իր կատարելութեան չէ հասած:

Պ. Բաստամեանց հեղինակութիւն մըն է այդ ճիւղին մէջ, որոյ ինձ ղրկուած երկասիրութիւնը յիրաւի արժանի է ամէն գովասանքի և քաջալերութեան. ուշի ուշով կարդացած եմ իր ձեռագիր գործը. և կ'ամփոփեմ մտածումներս տեղեկագրի մը մէջ:

Հայաստանի ներկայ կառավարութիւնը ամէն ջանք չ'խնայեր երկրին հնութիւնները երեւան հանելու. և յուսալի է որ պեղումներու միջոցին նորանոր դրամներ գտնուին:

Մի քանի տարի առաջ Հայ Պետական Թանգարանը իր դրամագիտական բաժինը կարգի դրած և հին դրամները դասաւորած էր, ըստ հետեւեալ ցուցակի:

«Պարսիկ Արշակունիներու, — Հռոմէական, — Հայկական Արշակունիներու, — Կիւրիկեան Բագրատունիներու, — Ռուբինեաններու, — Բիւզանդական, Վրացական և Ռուսական» դրամները:

Հաւաքածոյիս մէջ բոլոր այդ Catégorie դրամներն անխտիր հաւաքած եմ, որոց մասին հակիրճ տեղեկատուութիւն մը եղած է «Սիոն»-ի 1932 Ապրիլ 4 թիւին մէջ:

Հաւաքած Հայ դրամներուս հրատարակութեանն փափաքը Idéal մը եղած է ինձ, բայց նորանոր դրամներ ձեռք ձգելու յոյսս, այդ փափաքս յետաձգելու պարտադրած էր զիս մինչեւ ցարդ:

Ուրախ եմ որ Պ. Բաստամեանց կանխած է զիս և իր հեղինակութեամբ ոչ միայն դրամագիտութեան գործ մը արտադրած է իր այս հրատարակութեամբ, այլ պատմական նորանոր լուսաբանութիւններով ճոխացուցած է իր գործը:

Ներփակելով յառաջաբան գրոյս հակիրճ տեղեկագիր մը այս մասին, կը խնդրեմ որ ընդունիք, Սրբազան Հայր, խորին յարգանացս հաւաստիքն:

(Ստորագրութիւն)

ՆՇԱՆ Մ. ԳԱԼԸՊՃԵԱՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



3. ՌԱՎԵՆՆԱ. — Սան Վիտալ. խճանկար Ներսէսի և Թէոդորայի.

Ազգերն իրենց յիշատակարաններով ճանչցուած են իբրեւ ազգ. իսկ երբոր մարդ մը շօշափելի փաստերով չկարենայ ապացուցանել իր ինքնութիւնը, իր ցեղն և իր ազգը, անիկա կը նկատուի վայրենի կամ թէ վրանաբնակ ազգերէ մէկուն պատկանող թափառական մը, որ չէ ունեցած անցեալ մը, չէ ունեցած իր անցեալը յիշեցնող վկայ մը, — քար մը, գիր մը, նոյն իսկ գիծ մը։ Այս վկան կը կոչուի՝ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ։

Յիշատակարաննե՛ր են Արձանագրութիւնները, Դրամները, նախնեաց կողմէ յաջորդ սերունդին աւանդ ձգուած ձեռագիր և մինչեւ իսկ տպագիր Գրքերը, Գեղարուեստական գործերը, Շէնքերը, Կոթողները, և այլն։

Արդ, մենք՝ Հայերս ալ ունինք մեր բազմաթիւ ու բազմահազար յիշատակարանները։

Մենք մեր հայրենի երկրին անունը կրող շատ մը Դրամներ ունինք, որոնք — մեզի պէս աստանդական — եկած հասած են մինչեւ մեր ձեռքը, յիշեցնելով մեր երբեմնի փառքն ու ճոխութիւնը, ինչպէս նաեւ մեր անկման տխուր օրերը։

Պարծանքով պէտք ենք յիշել այս հայադրամներու գոյութիւնը, և հպարտութեամբ պէտք ենք ցուցադրել զանոնք, որոնք անհերքելի ապացոյցներն են մեր հնութեան, մեր քաղաքակրթութեան և մեր

տոկունութեան, որքան որ «քաղաքակիրթ» ազգերն ուրանան մեր անցեալն ու մեր պատմութիւնը։

Գուրգուրանքով պահպանենք այս թանկագին յիշատակարանները, նոյն իսկ այն պարագային՝ երբ անոնց գոյութիւնը մեզ համար նպաստաւոր չըլլայ։ Բայց վերջապէս անոնք մեր պատմութեան միսն ու ոսկորը կը կազմեն։

Իրարու յաջորդող դրամներու շարքն և իրենց թուականներուն կարգը՝ մեզի որոշ կերպով ցոյց կու տան, թէ ի՛նչ ուղղութեամբ քալած է թշնամին մեր երկրին մէջ, և ո՛րքան ժամանակ բռնաբարած է ան՝ մեր ազգային անկախութիւնը։

*
* *

Հայկական ընդհանուր Դրամագիտութեան մասին գրի առած այս աշխատութիւնս՝ իր ներկայ վիճակին մէջ՝ ո՛րքան որ «ընդհանուր» վերնագիրը կը կրէ, չի կրնար՝ սակայն՝ կատարեալ (complet) գործ մը համարուիլ, քանի որ՝ բառիս իսկական նշանակութեամբ՝ «կատարեալ» գործ մը չկայ աշխարհիս վրայ։

Ասիկա՝ հայ լեզուով լոյս տեսած առաջին փորձն է, մեր ընդհանուր դրամագիտութեան վրայ գրուած։

Հարկ կը զգամ շեշտել՝ «հայ լեզուով» ու «ընդհանուր» բառերուս վրայ. վասն զի հայ լեզուով գրուած մասնակի աշխատութիւն մը գոյութիւն ունի, Հ. Կղեմէս Վ. Սիպիլեանի հմտալից գրչէն ելած, որ կը խօսի մեր Կիլիկեան թագաւորներու դրամներուն վրայ, — «Դասաւորութիւն Ռուբենեան դրամոց», Վիեննա, 1892։ Նոյնպէս Արշակունի դրամներու վրայ գրուած հայերէն երկու մասնակի աշխատութիւններ գիտենք, — մին՝ վիպասան Ատրպետի կողմէ «Ազգագրական Հանդէս» ի մէջ տպուած, իսկ միւսը՝ ողբացեալ անզուգական բանասէր Հ. Յակովբոս Վ. Տաշեանի կողմէ գրի առնուած, կամ համառօտուած, հայազգի Աղեքսանդր Պետրովիչի «Արշակունեաց դրամներ»ու (Arsaciden – Münzen) մասին գրած գերմաներէն ու-

ուսումնասիրութենէն, — որոնք կը խօսին նաեւ «Հայ – Արշակունեաց դրամներ»ու վրայ։

Բայց, ինչպէս ներկայ գործիս ընթացքին մէջ պիտի տեսնենք, Հայ – Արշակունեաց դրամ... գոյութիւն չունի։

Գալով վերնագրիս մէջ գործածած «ընդհանուր» բառիս, պէտք եմ յայտարարել, թէ ներկայ աշխատութեանս հրատարակութենէն շատ տարիներ յառաջ, 1859ին, նշանաւոր և արդիւնաշատ հայերէնագէտ ֆրանսացի մը՝ Վիկտոր Լանգլուա, ֆրանսերէն լեզուով հրապարակ հանած է գրեթէ համանման աշխատութիւն մը, — միակն իր տեսակին մէջ, — որ կը կրէ հետեւեալ վերնագիրը· « Numismatique générale de l'Arménie», այն է՝ «Հայկական ընդհանուր Դրամագիտութիւն», որ բաժնուած է երկու գլխաւոր մասերու· — Ա· « Numismatique de l'Arménie dans l'antiquité » (Հին Դրամագիտութիւն Հայոց), տպուած ի Պարիս, 1859ին· և Բ· «Numismatique de l'Arménie au moyen âge » (Միջին դարու Դրամագիտութիւն Հայոց), նոյնպէս տպուած ի Պարիս, 1855ին։

Լանգլուայի այս երկասիրութիւնը նկատի առնելով՝ համարձակութիւն մանաւանդ թէ իրաւունք չպիտի ունենայի — անշուշտ — միեւնոյն նիւթին վրայ միեւնոյն վերնագրով աշխատասիրութիւն մը պատրաստելու և հրապարակ գալու· բայց Լանգլուայի գործին հինցած վիճակը՝ հետեւաբար և արդի գիտութեան տեսակէտով մեծ մասամբ քննադատելի ու մերժելի մասերը տեսնելով, համարձակեցայ ձեռք զարնել այս աշխատութեան։ Համբաւաւոր գիտնական՝ Գ. Շլումբերգեր, այս բառերով կ'որակէ Լանգլուայի գործը· «Վ. Լանգլուայի արդէն հնացած երկը՝ լի է կոշտ սխալներով և կարօտ ամբողջական նորոգութեան[1]»։

Լանգլուայի գլխաւոր սխալն հոն է, որ Մովսէս Խորենացւոյ հետեւելով՝ Ոսրոյենի (Եդեսիոյ) «հայ» թագաւորութիւն մը ստեղծած

---

1· *Archives de l'Orient latin*, հտ. Ա., եր. 675։

է և եղեսեան ասորի թագաւորներու դրամները նկարագրած է իբրեւ Հայոց դրամներ։ Այս ծթրած գաղափարը բարձի թողի եղած է հիմայ, և Հայոց պատմութենէն դուրս նետուած է ան, իր հետքերը ձգելով միայն եկեղեցւոյ մէջ, անշուշտ ժամանակուան մը համար եւս, մինչեւ որ Եկեղեցւոյ Հայրերն ալ իրենց վերջնական վճիռն արձակեն և վտարեն անկէ։

Լանգլուա կը խօսի նաեւ Հայաստանի անունով տպուած հռովմէական դրամներէ ոմանց վրայ, բայց պարսկահայ, արաբահայ, մոնղոլահայ, սելճուկահայ և այլ դրամներու մասին կը լռէ։ Նոյն գրքին երկրորդ մասին մէջ Լանգլուա գրած է Ռուբինեան դրամներու վրայ ալ, որուն անճշտութիւնները մատնանիշ ըրած է Սիպիլեան, իր վերոյիշեալ ընտիր գործին մէջ, եր. 73–76։

Այս բոլոր դրամներու վրայ ժամանակագրական կարգով առանձինն խօսած եմ ներկայ աշխատութեանս մէջ, իւրաքանչիւր շրջանի մասին տալով հարկ եղած պատմական հակիրճ տեղեկութիւնները։ Այս նպատակով՝ ամբողջ գործը բաժնած եմ տասներեք որոշ և իրարմէ անկախ Շրջաններու։

Գործիս մէջ կենսագրական խիստ հակիրճ տեղեկութիւններ տուած եմ այն անձին վրայ, որուն դրամը կը նկարագրեմ։ Բայց, այսքան միայն։ Աւելին՝ փնտռելու է կենսագրական բառարանի մը և կամ պատմական զանազան գրքերու մէջ։ Իմ գլխաւոր նպատակս եղած է հոս՝ դրամներու պատմութիւնն ընել, ո՛չ թէ վեհապետներու պատմութիւնը։

Դրամներու դասաւորութեան և յիշատակութեան մէջ ընդհանրապէս հետեւած եմ այս դրութեան. — Օրինակի համար, այսինչ կամ այնինչ վեհապետին կամ թէ իշխանին զանազան թուականներու տակ տպած դրամներուն մետաղի տեսակն ու դրամին քաշականը յիշատակելէ ետք՝ անցած եմ ուրիշ նիւթի։ Եւ սակայն՝ ասիկա չի նշանակեր, թէ նոյն վեհապետը կամ իշխանը՝ ուրիշ տեսակի և ուրիշ թուականով դրամ չունի։ Ես նշանակած եմ միայն այն՝ ինչ որ մատչելի եղած է ինծի, և կամ ծանօթացած եմ անոնց՝ այլ և այլ

հրատարակութիւններէ, որոնցմէ ամենէն կարեւորներուն անուններն յիշատակած եմ ամէն մէկ Շրջանէ վերջ դրած «Մատենագրութիւն» (Bibliographie) բաժնին մէջ, որ կը ցուցնէ նոյն Շրջանին համար դիմուելիք գլխաւոր աղբիւրները:

Մահմեդական դրամներու ժամանակագրութիւնը նշանակելու համար՝ հետեւած եմ նոյն դրամներու վրայ տպուած Հիջրի թուականներուն, որոնց քով՝ փակագծերու մէջ՝ դրած եմ միանգամայն իրենց համազօր Քրիստոնէական թուականները: Իսկ հոն ուր մէկ տեսակ թուական կը տեսնէք, Քրիստոսի թուականն հասկընալու է:

Աշխատութիւնս աւելի օգտակար դարձընելու համար զարդարած եմ նաեւ հայադրամներու բազմաթիւ ու բազմապիսի պատկերներով, որոնց նմանահոյլ կաղապարները (clichés) կը պարտիմ բարեացակամութեանը Mme Jacques de Morganի, որ իմ տրամադրութեանս տակ դրաւ իր ողբացեալ ամուսնոյն և իմ ու բոլոր Հայութեան անկեղծ բարեկամին՝ Mr Jacques de Morganի ձեռքով գծուած պատկերներու նմանահոյլները, նախապէս հրատարակուած իր «Histoire du Peuple arménien» թանկագին գործին մէջ (Paris, 1919): Երկասիրութեանս վերջը դրած եմ նաեւ երկու Տախտակ, ըլլա՛յ իմ անձնական հաւաքածոյէս, — որուն կազմութեան նպաստած է բարեկամս՝ Հայկազն Հայպէշեան, — ըլլա՛յ եւրոպական զանազան մատենադարաններէ, մասնաւորապէս Bibl. Nationaleի Cabinet des Médaillesէն, ուր ամէն անգամ որ դիմած եմ՝ սրտագին ընդունելութիւն գտած եմ ողբացեալ դրամապետ Mr Ernest Babelonէ, և հիմայ ալ իր գիտնական որդիէն՝ Mr Jean Babelonէ, որոնց կը յայտնեմ հոս ջերմ շնորհակալիքս: Շնորհակալութիւն նաեւ Օրիորդ Արաքսի Մըրհեանի, դուստր լուսահոգի սրտակից բարեկամիս՝ Յարութիւն Մըրհեանի, որ Մարկովի և այլոց ռուսերէն դրամագիտական գրքերէն հայադրամներ որոնելու գործին մէջ ինձ օգնեց:

Այս գիրքը կարելի էր աւելի ընդարձակ բռնել և քառապատիկ ծաւալով հրապարակ հանել. բայց, ասիկա ժամանակի խնդիր է.

*անգամ մը հիմը դրուելէ ետք՝ մնացեալը դիւրին է այլ եւս։ Եթէ ես ուրիշ հոգեր և զբաղումներ չունենայի, կրնայի այս գործը շատ սիրով կատարել։ Եւ սակայն, օրուան հոգերէ դուրս, անդին ունիմ դեռ տասնեակ մը աշխատութիւններ, զորս կ՚ուզեմ ի գլուխ հանել ընդ փոյթ, առանց ժամանակ կորսնցընելու, քանի տակաւին կենդանի եմ և քանի գրիչ բռնելու կարողութիւնն ունիմ դեռ, հակառակ աջ բազուկիս կծկութեան* (crampe des écrivains)։

**Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ**

*Պարիս*, 1936.



4. ՌԱՎԵՆՆԱ. – Սան Վիտալ.
*Հայ կառավարչին՝ Իսահակի դամբարանը.*



5. ՍԵՒԱՆ. – Կղզի և մենաստան.

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴՐԱՄԱԳԻՏՈՒԹԻՒՆ

Մեր նիւթին ձեռնարկելէ յառաջ՝ կարեւոր կը համարիմ քանի մը խօսք ըսել առհասարակ ԴՐԱՄի մասին։

Վերջին դարերուս մէջ՝ ինչպէս ծանօթ է, մեր ձեռքը գտնուող դրամներն երկու տեսակ են. մետաղ և թուղթ։ Իսկ հին ժամանակ՝ երբ դրամի այս երկու տեսակները գոյութիւն չունէին, ուտելիքի կամ թէ ապրանքի փոխանակութիւնը կը կատարուէր ուղղակի, այսինքն՝ մարդիկ իրենց առօրեայ պէտքերը կը հոգային իրենց ունեցածովը. օրինակ՝ գիւղացին իր տրեխներու կաշին գնելու համար, փերեզակին կը «վճարէր»՝ հաւկիթ, կարագ կամ թէ պանիր, ինչ որ աչքովս ալ տեսած եմ, մեր օրերուն իսկ, հայկական գաւառները պտըտած ժամանակս։

Միջերկրական ծովի արեւելեան երկիրներու մանաւանդ ասիական կողմի ժողովուրդներու փոխանակութեան գլխաւոր առարկաներն էին՝ պաճարն ու ոչխարը։

Ծայրագոյն Արեւելքի, Հիւսիսային Ամերիկայի և Աֆրիկէի մէջ խեցիներու գործածութիւնը՝ մինչեւ վերջին ժամանակներս՝ հասարակ սովորութիւն դարձած էր։ Այս խեցիներէն ամենէն յարգին և ամենէն աւելի ըղձալին ու տարածուածն էր՝ բնապատում Լիննէի կողմէ *Cypraea moneta* կոչուած տեսակը։

Դրամի գոյութենէն յառաջ՝ ծանօթ էր նաև զանազան մետաղներու հետ աշխատութեան վարձատրութեան կամ թէ ապրանքի փոխանակութեան դրութիւնը, որ ընդունուած էր Եգիպտացիներէ, Ասորեստանցիներէ, Եբրայեցիներէ, Փիւնիկեցիներէ և ուրիշ հին ազգերէ, որոնք սակայն փոխանակ կոշտ մետաղի՝ ձոյլ մետաղի գործածութեան յանգեցան, ինչպէս նաև, անշուշտ ժամանակի ընթացքով, օր մըն ալ՝ զայն կշռելը պարտաւորիչ օրէնք դարձուցին վերջնականապէս։ Այս կարգի որոշ կերպով կշռուած մետաղադրամ մըն է, հայասէր մեծ գիտնական Ժակ դը Մորգանի՝ նախկին ռուսական Հայաստանի (իր բառերով՝ Arménie russe) պեղումներէն հանած իրերու մէջ ագուցիկ մատանին, որ մետաղադրամի ամենահին նմոյշներէն մէկն է[1]։

Ն. Ք. իբր 1900ին՝ Աբրահամ նահապետ ագարակ մը գնելու համար 400 սիկղ արծաթ «կշռեց» և տուաւ անոր տիրոջը, Եփրոնին։ (Ծննդ. ԻԳ, 15–16)։

Բաբելոնի մէջ դրամի գործածութիւնը ծանօթ էր Ն. Ք. իբր 3150 թուականին։

Ժակ դը Մորգանի կողմէ Շօշի պեղումներէն հանուած Համմուրաբիի Օրէնագրքին մէջ (իբր 2000 տարի Ն. Ք.) թանկագին մետաղի մը գործածութիւնը կը յիշատակուի, վճարելու համար արհեստաւորի ո և է աշխատութիւնը։ Նոյն մետաղը գործածուած է նաև առևտուրի ժամանակ։ — Այս մետաղը՝ արծաթն էր։

Առևտուրը կը կատարուէր նաև ցորենի փոխանակութեամբ։ Նոյնպէս ցորենով կը վճարուէին մշակը, հօտաղը, և նոյն իսկ կառավարական պաշտօնեաներն ու դատաւորները։

Այս փորձերէ և խարխափումներէ ետք՝ Քրիստոսէ ութը դար յառաջ՝ Լիւդացիներու ձեռքով հաստատուեցաւ իսկական դրամը, պետական հսկողութեամբ և պետական հակակշռի տակ (Ձև 6)։

Այն ժամանակ դրամը կը տպուէր արծաթի, ոսկիի, արծաթախառն ոսկիի և պղնձի վրայ։ Միա՛յն Սպարտացիք էին, որ՝ Լիկուրգոսի օրէնքին հպատակելով՝ արծաթ և ոսկի դրամ կամ թէ անոնցմէ շինուած զարդեղէն գործածելու իրաւունքէ զրկուած էին, այլ՝ փոխանակութեան համար կը գործածէին միմիայն երկաթէ ձողեր, այն ալ՝ քացախի մէջ թաթխուած, որպէս զի երկաթով չկարենան զարդ շինել։ Իսկ Ժրդ դարուն մէջ՝ արաբական տիրապետութեան ժա-

1. J. de **Morgan**, Recherches sur les origines des peuples du Caucase, երես 107։ Paris, 1889.

մանակ՝ խեցիի և մինչեւ իսկ կաշեղրամի գործածութեան դիմեցին մարդիկ, հրամանով իրեն խօսրով ամիրայի, ինչպէս կը պատմէ Ասողիկ (Գիրք Գ, գլ. ժգ). — «Իբրեւ խօսրով մեծարեալ պատուէր զքրիստոնեայս, մինչեւ զամենայն տօնս տէրունականս համարձակապէս կատարել յաշխարհի նորա։ Այլ և ինքն իսկ ի գալուստ Փրկչին ի տաճարն, որ Տեառն–ընդ–առաջ կոչի՝ պայծառաբորբոք ջահիւք և մոմեղինօք և բազմակոյտ վշով գլուցմունսն կատարեաց։ Այլ և զաղաւնեացն նաւթիւ և հրով գթեւս պայծառացոյց, և ընդ երկինս առաքէր։ Սա թագ եղեալ՝ թագաւոր թագաւորաց կոչեցաւ, զոր ոչ էր օրէն Տաճկաց զարմին։ Եւ զսպիտակափայլ արծաթ ընդ պղնձոյ և ընդ կապարոյ հրամայեաց խառնել, որ ի չընտրել վաճառականացն՝ զանուն իւր ի վերայ խեցւոյ և կամ կաշւոյ հրամայեաց գրել




6. Լիւդական դրամներ.

և տալ ի ձեռս ոմանց, զի գնեսցեն այնու կերակուր կամ հանդերձ. և ոչ ոք իշխեաց ընդդիմանալ»։

Թ. դարէն կաշեղրամի գործածութեան ուրիշ վկայութիւն մը ծանօթ է, հռովմէական գրականութեան մէջ պահուած, զոր կը յիշատակէ Պրոֆ. Ադոնց[1]։ Իսկ աւելի հին ժամանակներու մէջ՝ ճգնաժամի պահուն՝ կաշեղրամի գործածութիւնը կը յիշատակէ Ե. Բաբլոն[2]։

(Վերը՝ դիտմամբ «արծաթ»ը «ոսկի»էն յառաջ յիշատակեցի, ցոյց տալու համար որ արծաթը՝ ոսկիէ աւելի կը գործածուէր։ Ոսկին՝ հին ժամանակներէ ի վեր՝ զարդի կարգ անցած էր, և յետոյ դրամի՝ այն է առեւտրական միջնորդի վերածուեցաւ)։

---

1. **N. Adontz,** Les légendes de Maurice et de Costantin V, empereurs de Byzance, էր. 10–11։

2. **E. Babelon,** Traité des monnaies grecques et romaines, Մասն Ա, հատոր Ա, էջ 375։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. — **Jacques de Morgan,** Manuel de Numismatique Orientale de l'antiquité et du moyen âge. Paris, 1923–1936. — **Édouard Cuq,** Études sur le Droit babylonien, les Lois assyriennes et les Lois hittites. Paris, 1929. — **Barclay V. Head,** Historia numorum. London, 1911. — **François Lenormant,** La Monnaie dans l'antiquité. Paris, 1878.

*
* *

*Հիմայ գանք մեր դրամներուն։*

*Այստեղ «մեր» սեպհականութիւնը՝ բացատրութեան կարօտ է։ «Մեր» կ'ըսեմ այն բոլոր դրամներու՝ որոնք կա՛մ զուտ հայկական են, և կամ՝ խսկականին մէջ մերը չեն, բայց տպուած են Հայաստանի հողին վրայ կամ ոչ, և կը կրեն կա՛մ լատինատառ* «Armenia» *(Հայաստան) վերտառութիւնը, ինչպէս հռովմէական հայադրամներու վրայ կ'երեւան, կա՛մ արաբատառ* ارمينية *(Արմինիյա = Հայաստան) անունը կը կարդանք անոնց վրայ, ինչպէս մահմեդական (արաբական, մոնղոլեան և այլ) հայադրամները կը կրեն, և կամ՝ հոն կը տեսնենք անունը Հայաստանի քաղաքներէն մէկուն, որուն փողերանոցէն ելած են անոնք, թէեւ չըլլան հայատառ։ Ճիշտ այս նկատումով է, որ երկասիրութեանս վերնագրին վրայ աւելցուցած եմ «Հայաստանի վերաբերեալ դրամներ» բառերը։*

*Հոս «Հայաստան» ըսելով կ'իմանամ Մեծ Հայոց, Փոքր Հայոց և Կիլիկիոյ միացեալ սահմաններուն մէջ գտնուած ընդարձակ երկրամասը, պատմական առումով*[1]*։*

*Իսկ հայատառ դրամներն, որոնք հոյլ մը կը կազմեն, բոլորն ալ կոխուած են մեր Ռուբինեան Հարստութեան շրջանին, Կիլիկիոյ մէջ, և կամ Տայոց աշխարհին մէջ, ի Թորթում, որմէ միակ նմոյշ մը ունինք, ինչպէս պիտի տեսնենք իր կարգին։*

*Այս դրամները կա՛մ ոսկիէ են, կա՛մ արծաթախառն ոսկիէ, կա՛մ արծաթէ, կա՛մ արծաթապղնձէ, կա՛մ անագապղնձէ, և կամ՝ թղթադրամներ են պարզապէս։ Այս ամէն տեսակներէն եւս դրամ ունեցած ենք, որոնք մեր ձեռքն ալ հասած են մեծ մասամբ, անեղծ կերպով։*

*Արդ, այս բոլոր հայադրամները շրջան առ շրջան դասաւորելով՝ կ'ունենանք տասներեք կարգ դրամներ, հետեւեալ սահմաններով.*

---

1. *Խոստովանիմ, թէ երբեմն երբեմն այս սահմաններէն դուրս ելլելու փորձութիւնն ունեցած եմ, տարուելով դէպքերու անդիմադրելի հոսանքէն։*

*Ա. Նախամեսրոպեան Շրջան* (519 Ն. Ք. – 414 Յ. Ք.), որուն մէջ կը մտնեն՝ հայ գրոց գիւտէն յառաջ Հայաստանի հողին վրայ տպուած հայադրամները։

*Բ. Մեսրոպեան Շրջան* (414–1187), որուն մէջ կը մտնեն՝ հայ գրոց գիւտէն ետք Հայաստանի մէջ տպուած ենթադրական հայադրամները, մինչեւ Ռուբինեան Հարստութեան սկիզբը։

*Գ. Հռովմէական Շրջան* (69 Ն. Ք. – 183 Յ. Ք.), ուր կը մտնեն՝ Հռովմայեցւոց կողմէ Հայաստան գրաւուելէ ետք մեր երկրին անունով տպուած լատինական դրամները։

*Դ. Պարսկական Շրջան* (273–627), որուն մէջ կը մտնեն Արշակունի և Սասանեան Պարսից կողմէ Հայաստան գրաւուելէ ետք՝ անոնց ձեռքով հոն տպուած դրամները։

*Ե. Բիւզանդական Շրջան* (582–1341), ուր կը մտնեն Բիւզանդիոնի կայսրներու կողմէ տպուած այն դրամներն՝ որոնք հեռուէն կապ ունին Հայոց հետ։

*Զ. Արաբական Շրջան* (661–932), ուր կը մտնեն՝ Արաբներու տիրապետութեան ժամանակ Հայաստանի մէջ տպուած արաբական հայադրամները։

*Է. Մոնղոլեան Շրջան* (1185–1445), որուն մէջ կը մտնեն՝ Հայաստան Մոնղոլներու իշխանութեան տակ անցնելէ ետք հոն տպուած դրամները։

*Ը. Փոքր իշխանութեանց Շրջան* (879–1508), որուն մէջ կը դասեմ Սաջիները, Սալլարեանները, Համդանեանները, Մերվանեանները, Շեդդադեանները, Դանիշմէնդեանները, Մենկուջեանները, Սալդուկեանները, Որտուկեանները, Շահի–Արմէնները, Էյուբեանները, Արտենեանները, Կարամանները, Կադը–Օղլուները, Կարա–Կօյունլուներն և Ակ–Կօյունլուները, որոնք Հայաստանի զանազան մասերը գրաւելով դրամ տպած են հոն, իրենց անձնական պէտքերը գոհացնելէ զատ՝ իրենց անիծեալ անուններն անմահացնելու փառամոլութեամբ։

*Թ. Սելճուկեան Շրջան* (1192–1291), ուր կը մտնեն՝ Սելճուկեան Թուրքերու կողմէ Հայաստանի այլ և այլ հողերուն վրայ տպուած դրամները։

*Ժ. Ռուբինեան Շրջան* (1187–1489), ուր կը մտնեն՝ մեր Ռուբինեան Հարստութեան ժամանակ Կիլիկիոյ մէջ տպուած բոլոր հայատառ ու երկու լատինատառ դրամներն, ինչպէս նաեւ Կիլիկիոյ հայ թագաւորութեան վերնալէն անմիջապէս ետք՝ Հայաստանի անունով տպուած կիպրոսեան լատին դրամները։

*ԺԱ. Վրական Շրջանը* (1124–1236) կը կազմէ այն ժամանակն՝ երբ Հայաստան անցաւ Վրաց իշխանութեան տակ։

*ԺԲ․ Օսմանեան Շրջան* (1512–1823), *ուր կը մտնեն՝ հայկական քաղաքներու մէջ օսմանեան սուլտաններու կողմէ տպուած դրամները։*

*ԺԳ․ Նոր Շրջան* (1918) *կ'անուանեմ այն՝ որուն մէջ տպուած են Անդրկովկասեան Դաշնակցային Հանրապետութեան՝ ինչպէս նաեւ Հայաստանի Հանրապետութեան կողմէ հրապարակ հանուած թղթադրամներն ու գանձային թղթերը։*




7. Միհրդատ Զ. Եւպատոր.




8. Չորեքդրամեան Աղեքսանդր Մեծի.

## Ա.

# ՆԱԽԱՄԵՍՐՈՊԵԱՆ ՇՐՋԱՆ

**[Avant l'invention de l'alphabet arménien** (519 av. J. – C. – 414 ap. J. – C.)]

(519 Ն. Ք. – 414 Յ. Ք.)

*Պարսից Աքամենեան Հարստութեան մեծանուն թագաւորին՝ Դարեհ Ա.ի* (Ն. Ք. 521-485) *արձանագրութիւններէն գիտենք, թէ Ք. Ա. վեցերորդ դարուն՝ Պարսից արքայից արքային բանակին վրայ յարձակելու չափ զօրաւոր իշխանութիւն մը ունէին Հայերը, այնպէս որ՝ հինգ անգամ փախուստի մատնած են պարսկական զօրքերը. բայց՝ յետոյ՝ ուժասպառ յաղթուեցան, և Հայաստան վերածուեցաւ պարսկական նահանգի* (519 Ն. Ք.)*։*

*Արդեօք դրամ տպա՞ծ են Դարեհի ժամանակակից Հայերը։*

*Հաստատ չենք գիտեր։*

*Ըսե՛նք. — Թերեւս տպած ըլլան, և կամ՝ փոխանակութեան իբրեւ միջնորդ՝ եթէ ոչ ուլունքի, ժժմակի, խեցիներու և ասոնց նման նիւթերու այլ գէթ մետաղներու օգնութեան դիմած ըլլան, որոնք մեր ձեռքը չեն հասած. իսկ եթէ հասած ալ են, զանոնք կարելի եղած չէ զանազանել մեր դրացի պետութեանց դրամներէն, հաստատելու համար հայկական նախնական դրամներու դաս* (série) *մը։*

*Այսչափ գիտենք, սակայն, որ Դարեհ Աի յաղթանակին հետեւանքով երբ Հայաստան Աքամենեան Պարսից իշխանութեան տակ անցաւ, կազմելով անոր՝ ըստ Հերոդոտոսի* (Գ, 93)՝ 13րդ *նահանգին մէկ մասը, միւս գրաւուած երկիրներու նման՝ Հայաստան եւս կառավարուեցաւ Պարսից կողմէ դրուած փոխարքաներով, որոնք ամենալայն իրաւասութիւններ կը վայելէին։ Այս իրաւասութիւններէն*

մին էր, մանաւանդ գլխաւորը, դրամ կոխելու կամ կտրելու իշխանութիւնը։ Արդ, գիտենք թէ նոյն Աքամենեաններու երկու փոխարքաներ, ՏՐԻԲԱԶ՝ Ն. Ք. 393ին, և ՈՐՈՆՏԷՍ՝ Ն. Ք. 362ին, իրենց անունով արծաթ և նոյն իսկ ոսկի դրամներ տպած են. իսկ 330ին՝ երբոր Մեծն Աղեքսանդր Պարսից պետութիւնը կործանեց, Հայոց վրայ կուսակալ նշանակուեցաւ ՄԻՀՐԱՆ անունով Պարսիկ մը, որմէ դրամ չունինք սակայն։ Բայց՝ Աղեքսանդրի մահով (323)՝ ամբողջ պետութիւնն իր զօրավարներուն միջեւ բաժնուեցաւ, և Հայաստան բաժին ինկաւ ՓՐԱՏԱՓԵՌՆԷՍի, որով հայկական նոր պետութեան մը հիմը դրուեցաւ[1]։

---

## ՏՐԻԲԱԶ [Tribaze]

(Ն. Ք. 400)

ՏՐԻԲԱԶի դրամներն արծաթէ են, և տպուած են Կիլիկիոյ Իսսոս, Մալլոս, Սոլի և Տարսոն քաղաքներուն մէջ, որոնց անունները գրուած են երբեմն յունարէն և երբեմն ալ արամերէն տառերով։

Տրիբազ նախապէս Հայաստանի փոխարքայ էր, երբոր Քսենոփոնի նկարագրած Բիւրուց նահանջը կը կատարուէր (400 Ն. Ք.). բայց յետոյ՝ Փոքր Ասիոյ պարսկական բանակին ընդհանուր հրամանատարութեան պաշտօնին կոչուեցաւ։

---

1. Այս և յաջորդ երեսներու մէջ տեսնուած հայ անուններու տարօրինակութիւնը կամ ոչ-հայկական ձեւերը՝ բնաւ չզարմացնեն մեզ, վասն զի շատ հին դարերէ սկսեալ մինչեւ մեր օրերը, մինչեւ ցայսօր, մենք՝ մեզի դրացի օտար ազգերու անունները գործածած և իւրացուցած ենք, ինչպէս՝ օրինակի համար՝ զուտ հայկական ճանչցուած անուններէն — Անահիտ, Արշակ, Արտաշէս, Արտաւազդ, Արտաւան, Երուանդ, Զարեհ, Խոսրով, Հմայեակ, Մեհրուժան, Միհրան, Ներսեհ, Ներսէս, Շահէն, Շաւարշ, Պապ, Սանատրուկ, Սուրէն, Վահրամ, Վաղարշ, Վաղարշակ, Վարդան, Տիգրան, Տրդատ, ևն. որոնց բոլորն ալ պարսկական անուններ են։ Իսկ նոր անուններու գալով, ունինք — Աբաս, Ագիգ, Ագբուղա, Ամիր Հասան, Ամիրտովլաթ, Ապլղարիպ, Ապուղամր, Աւշին, Բախտիար, Բուբարաք, Բուղղա, Գոհարիկ, Ջահրա, Ջուհալ, Խաթուն, Խարիփ, Համզէ, Հասան, Հասան-Ջալալեան, Ղարիփ, Մխիթար, Մուկաթլ, Նուասին, Նուրայդին, Շահնշահ, Շամշատին, Շապադին, Շարապշահ, Ջալալ, Սահիպ Դիւան, Սահմադ, Վախրադին, Փախրադին, Քարիմադին, Քուրդ, ևն. ևն. բոլորն ալ արաբական-մոնղոլեան-սելճուկեան անուններ, որոնք լիբրեւ հայ անուններ գործածուած են մեր մէջ։ (Տեսնել իմ «Les Inscriptions arméniennes d'Ani», ևն. գործիս ծաւելի ցանկը, եր. 211-236)։

*Այսոր դրամներէն ոմանց առաջին երեսին վրայ Որմզդի պատկերը կայ, որ աջ ձեռքով պսակ մը բռնած է, իսկ ձախովը՝ արեւի գունտը։ Երկրորդ երեսին վրայ կայ Բահաղ աստուածը, կանգնած, որ աջ ձեռքով արծիւ մը բռնած է, իսկ ձախովը՝ երկար ցուպի մը յեցած է, որուն ետեւը կը կարդացուի «Տրիբազ» անունը։*

---

## ՈՐՈՆՏԷՍ կամ ՀՐԱՆՏ [Orontès]

(Դ. Դար)

*ՈՐՈՆՏԷՍի գալով, ասիկա նախապէս արեւելեան Հայաստանի փոխարքայ էր. յետոյ՝ նոյն պաշտօնով՝ փոքր Ասիոյ հիւսիսային արեւմտեան մասը ղրկուեցաւ, ուր պարսկական պետութեան դէմ ապստամբելէ ետք՝ իր անունով ոսկի դրամ մը տպեց։*

* * *

*Ցաւալի է տեսնել, որ այս նոր պետութեան հիմնարկութեան յաջորդած են՝ Ն. Ք. չորրորդ դարուն իսկ՝ երնք տեղ հայկական զատ և իրարու մրցակից թագաւորութիւններ...։ (Ա) Մեծ Հայոց, (Բ) փոքր Հայոց և փոքր Ծոփաց, (Գ.) Մեծ Ծոփաց և փոքր Հայոց մէկ մասին թագաւորութիւնները։*

*Այսպէս եղած են նաեւ ԺԱ. դարուն՝ մեր կաթողիկոսութիւնները, վեց տեղ միաժամանակ. – 1. Ծամընդաւ, Սեաւ լերինք և այլուր թափառական, – Գրիգոր Բ Վկայասէրի կաթողիկոսարանը։ 2. Ծամընդաւ, – Գէորգ Լոռեցւոյ կաթողիկոսարանը։ 3. Անի, – Բարսեղ Անեցւոյ կաթողիկոսարանը։ 4. Հոնի, – Սարգիս Հոնեցւոյ կաթողիկոսարանը։ 5. Մարաշ, – Պաւղոս Վարագուրականցւոյ կաթողիկոսարանը։ 6. Աղուանից կաթողիկոսութիւնը։*

*(Պէտք չէ մոռնալ, սակայն, որ ԺԱ. դարուն՝ Ասորիք ալ չորս կաթողիկոսութիւն ունեցած են)։*

*Թուենք հիմայ վերոյիշեալ երեքճիւղեան Հայաստանի թագաւորներն ու դրամները։*

**Ա. ՄԵԾ ՀԱՅՈՑ** *թագաւորներն էին. – 1. Փրատափեռնէս կամ Նէոպտոլմէոս* (Ն. Ք. 323–322), *Որոնտէս Ա կամ Հրանտ* (322–

301), 3. Արդուատէս կամ Երուանդ (301–260?), 4. (Պարապ), 5. Արտաբազանէս կամ Արտաւազ (239–220?), 6. Որոնտէս Բ (220?–215), 7. Արտաքսիաս կամ Արտաշէս (190–159)։

Բ. ՓՈՔՐ ՀԱՅՈՑ և ՓՈՔՐ ԾՈՓԱՑ թագաւոր ընդունուածներն էին. — 1. Քարասպէս (Ն. Ք. 260–240?), 2. Արսամէս[1] կամ Արշամ (240–210?), 3. Աբդիսսարէս (210? – 190?), 4. Քսերքսէս (190? – 170)։

Գ. ՄԵԾ ԾՈՓԱՑ և փոքր Հայոց մէկ մասին թագաւորներն էին. — 1. Զարիադրէս կամ Զարեհ և կամ Զահրադ (Ն. Ք. 190–165), 2. Միհրոբուզանէս (165–150?), 3. Մորփիլիգոս (150? – 148), 4. (Պարապ), 5. Արտանէս (100? – 93)։

Այս երեք թագաւորութիւններէն դրամներ ծանօթ են ինծ՝ Նէոպտողմէոսէ, Քարասպէսէ կամ Խարասպէսէ, Արշամէ, Աբդիսսարէսէ, Քսերքսէսէ, Զահրադէ և Մորփիլիգոսէ, որոնց վրայ թագաւորին անունն ու արքայական տիտղոսը նշանակուած են — առ ի չգոյէ սեպհական հայ տառերու — յունական տառերով, սակայն առանց «Հայաստանի», կամ թէ «Հայոց», որոշիչ անուններու, այլ այսպէս. ΒΑΣΙΛΕΩΣ ΧΑΡΑΣΠΟΥ, այսինքն՝ «Արքայի Քարասպեայ», և կամ՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΑΡΣΑΜΟΥ, այսինքն «Արքայի Արշամայ», կամ թէ՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΑΒΔΙΣΣΑΡΟΥ, այսինքն՝ «Արքայի Աբդիսսարեայ»։

Իսկ յաջորդ շրջանի դրամներէն շատերուն վրայ կը կարդացուին «Հայաստանի» կամ «Հայոց» անուններէն մին, ինչպէս պիտի տեսնենք քիչ յետոյ։

---

1. Արսամէսի «Հայ» ըլլալը կասկածելի է, ըստ նոր քննութեան, զոր կատարած եմ վերջերս իր դրամին վրայ, ի Bibl. Nationale de Paris. Արդիւնքը տե՛ս Հոս, երես 28, և «Սիոն», 1934, երես 309։




9․ Քարասպէսի դրամը․

## ՔԱՐԱՍՊԷՍ [Charaspès]

(Ն․ Ք․ 260–240?)

*ՔԱՐԱՍՊԷՍի կամ ԽԱՐԱՍՊԷՍի անունը պատմութեան մէջ յիշուած չէ․ ուստի՝ իր մասին ո և է ծանօթութիւն չունինք։ Իր պղնձէ դրամը, – միակ օրինակը որ կը պահուի Պարիսի* Bibliothèque National*eին մէջ, – կը կշռէ* 9 *գրամ* 55 *հարիւրորդագրամ․ իսկ տարածութիւնն է* 24 *հազարորդամետր։*

*Առաջին կողմը կը տեսնուին Դիոսկուրեանց աջ դարձած դափնեպսակ գլուխներն․ իսկ երկրորդ կողմը՝ նոյնպէս աջ դարձած արծիւ մը, որ կանգնած է շանթի վրայ* (*Ձեւ* 9)։

*Խորագիրն է, ինչպէս տեսանք,* ΒΑΣΙΛΕΩΣ ΧΑΡΑΣΠΟΥ։

*Ե․ Բաբլոնի կարծիքով՝ Քարասպէսի այս միակ դրամը վերաբերելու է Հայաստանի, ո՛չ թէ ուրիշ երկրի․ բայց չ՚ըսեր, թէ ի՞նչ հիման վրայ։ — Ես նոյնութեամբ համաձայն չեմ։*

---



10. Արշամի դրամը.

## ԱՐՍԱՄԷՍ կամ ԱՐՇԱՄ [Arsamès]

(Ն. Ք. 240–210?)

ԱՐՇԱՄի *թագաւորանիստ քաղաքն էր Արշամաշատ կամ Աշմուշատ, որուն հիմնադիրը կը համարուի Արշամ։*

*Հ. Կ. Վ. Սիպիլեան Արշամի դրամին վերտառութիւնը ժամանակ մը սխալ կարդալով իբր՝* ΩΙΣΑΜΟΥ, *«Ոյսամէս» անուն մը հրապարակ նետած է, որ՝ դժբախտաբար՝ նոյնութեամբ ընդունուած է նաեւ գիտնականներէ ոմանց կողմէ։*

*Արշամի պղնձէ դրամը կը կշռէ* 6 *գրամ* 60. *իսկ տարածութիւնն է* 20 *հզրրդմետր։*

*Առաջին կողմին վրայ՝ շրջանակի մը մէջ՝ Արշամի աջ դարձած կիսանդրին կայ, գլուխը գդակ* (calotte) *և արքայական ապարօշ. իսկ երկրորդ կողմը՝ դէպ ի աջ վազող նիզակակիր ձիաւոր մը* (*Ձեւ* 10), *որուն գլխուն վերեւ գրուած է՝ երկու տողի վրայ՝ հետեւեալ ծանօթ խորագիրը.*

ΒΑΣΙΛΕΩΣ
ΑΡΣΑΜΟ[Υ]

*այսինքն՝ «Արքայի Արշամայ»։*

*
* *

*Այս թագաւորը՝ Խորենացւոյ վկայութեան հետ համաձայնեցնելու համար՝ փոքր Ծոփաց հայ թագաւորներու կարգը կը դասեն դրամագէտք, չկարենալով ուրիշ տեղ տալ անոր. բայց մանրամասն քննութենէ և խորագնին ուսումնասիրութենէ ետք կը համոզուինք, որ Արսամէսի ընծայուած այս դրամը կապպադովկիոյ և կամ՝ աւելի հաւանականօրէն՝ Կոմմագենէի վրայ իշխող թագաւորներէ մէկուն կը պատկանի, ո՛չ թէ Հայոց, և ոչ իսկ՝ Սօրոյենէի, որ այս անունով*

թագաւոր չի ճանչնար[1], ինչպէս որ Աբգարի մասին խօսուած ժամանակ պիտի տեսնենք։

Դրամիս երկրորդ կողմը ներկայացնող ձիաւորը՝ շատ մեծ նմանութիւն ունի կապպադովկիոյ Արիարամնէս թագաւորին պղնձէ դրամին երկրորդ կողմին, ինչպէս կը շեշտէ Ե. Բաբլոն իր « Les rois de Syrie, d'Arménie et de Commagène » պատուական գործին մէջ (եր. CXCIII)։

կոմմագենեցիք Ք. Ա. 140ին «Սամէս» անունով թագաւոր մը ունեցած են, որուն մայրաքաղաքն էր Սամոսատ, Շամուշատ կամ Շամշատ, և որուն դրամին վերտառութիւնն է՝

ΒΑΣΙΛΕΩΣ ΣΑΜΟΥ

այսինքն՝ «Արքայի Սամեայ»։

Փ. Ցուստիի կարծիքով՝ Սամէսի որդի՛ն է Արսամէս. հետեւաբար՝ կոմմագենեցի։ Նոյնը կը հետեւցնենք նաեւ Նեմրուդ–դաղի արձանագրութենէն, որ գրուած է Անտիոքոս Դ.ի կողմէ, Քրիստոսի 60–72 թուականներուն։

Արսամէսի գդակն ալ՝ հակառակ Վ. Լանգլուայի և Ե. Բաբլոնի կարծեաց՝ «հայկական» չէ, այլ լատին քահանաներու գդակին նման գլխադիր (coiffure) մը, որ ամբողջ մազերը կ'ընդգրկէ և ճակատէն խոպոպիկներ դուրս կու տայ, ինչպէս որ անձամբ ստուգած եմ այս պարագան, բուն դրամը քննելով։

Այս դրամի մասին խօսած եմ հոս, ցարդ ընդունուած կարգը պահելու համար պարզապէս, ապա թէ ոչ՝ – Արսամէս կամ Արշամ՝ հայ թագաւոր չէ։

---

1. Ոսրոյենէի թագաւորներու (Աբգարներու եւն.) ցանկը տես իմ « Իսկական Պատմութիւն Հայոց» գործիս մէջ, երես 110-111. իսկ Արշամի մասին տես նոյն գրքին մէջ՝ երես 103, և «Սիոն»՝ 1934, եր. 309։

## ԱԲԴԻՍՍԱՐԷՍ [Abdissarès]

(Ն. Ք. 210? - 190?)

**ԱԲԴԻՍՍԱՐԷՍ**՝ *Քարասպէսի նման՝ անծանօթ է պատմիչներէ։*

*Ասոր արծաթէ դրամները կը կշռեն* 2 *գրամ* 15. *իսկ տարածութիւնն է* 12 *հզրրդմետր։*

*Պղնձէ դրամները կը կշռեն՝* 7 *գրամ* 40 *հարիւրորդագրամ,* 23 *հզրրդմետր տարածութեամբ. և՝* 1 *գրամ* 85, 12 *հզրրդմետր տարածութեամբ։*

*Առաջին կողմին վրայ՝ Աբդիսսարէսի եպիսկոպոսական միթրի կամ «չաթալթագ»ի նման երկճղի, սրածայր, ծոպարձակ, հայկական խոյրով և արքայական ապարօշով, աջ դարձած՝ մօրուօք կիսանդրին կայ։ Իսկ երկրորդ կողմը՝ դարձեալ աջ դարձած՝ կանգուն արծիւ մը կայ, ոմանց վրայ. ուրիշներու վրայ ալ՝ աջ դարձած ձիագլուխ մը կայ։*

*Խորագիրը տեսանք վերը, որ է՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΑΒΔΙΣΣΑΡΟΥ = *«Արքայի Աբդիսսարեայ»։*

*(Դրամը տե՛ս Տախտակ Բ, Թիւ* 9)։

*Ասոր որդին կը կարծուի Քսերքսէս։*

---



11. *Քսերքսէսի դրամը.*

## ՔՍԵՐՔՍԷՍ [Xerxès]

(Ն. Ք. 190? - 170)

**ՔՍԵՐՔՍԷՍ**՝ *իբրև Հայոց թագաւոր՝ ծանօթ է յոյն պատմիչներէ, գլխաւորաբար Պողիւբիոսէ*[1], *որուն համեմատ՝ Սելեւկիացւոց Անտիոքոս Դ. Եպիփան թագաւորը* (Ն. Ք. 175–164) *երբոր Փոքր Հայոց մայրաքաղաք Արշամուշատը պաշարելու մօտ էր, Քսերքսէս*

1. Excerpta de virt. et vit., VIII, 25.

*փախուստ տուաւ մայրաքաղաքէն. բայց, երբոր՝ Անտիոքոսի հեռաւոր քաղաքականութեան շնորհիւ՝ հաշտութիւն գոյացաւ մէջերնին, Քսերքսէս ամուսնացաւ Անտիոքոսի քրոջ՝ Անտիոքիսի հետ, և իրեն զաւակ ընդունեցաւ անոր Միհրդատ որդին, որ յետոյ՝ Արիարաթէս Ե. անունով թագաւորեց Կապպադովկիոյ մէջ* (*Ն. Ք.* 163–130)։

*Քսերքսէսի պղնձէ դրամները կը կշռեն* 5 *գրամ* 40 *և* 1 *գրամ* 90. *իսկ տարածութիւնն է՝* 21 *և* 14 *հզրրդմետր*։

*Առաջին կողմին վրայ՝ եպիսկոպոսական միթրի կամ խոյրի (չաթալթագ)ի նման երկճղի, սրածայր, ծոպարձակ, հայկական խոյր մը կայ, զոր կը կրէ արքայական ապարօշով աջ դարձած մօրուսաւոր գլուխը Քսերքսէսի։ Երկրորդ կողմը՝ կանգուն և ձախ դարձած Յաղթանակ մը կայ, որ իր աջ ձեռքը բռնած պսակը կ'երկարէ դրամին վրայ գրուած* ΞΕΡΞΟΥ (= *Քսերքսէսի*) *անունին վրան. Յաղթանակին կոնակը՝* ΒΑΣΙΛΕΩΣ (= *թագաւորի*)*. իսկ ձախ ձեռքով՝ ոմանց վրայ՝ Յաղթանակն իր նափորտին ծալքերը կը բռնէ. ոմանց վրայ ալ՝ իր վահանին կը կռթնի* (*Ձեւ* 11)։

---

## ԶԱՐԻԱԴՐԷՍ կամ ԶԱՐԵՀ [Zariadrès]

(Ն. Ք. 190–165)

ԵՒ

## ԱՐՏԱՔՍԻԱՍ կամ ԱՐՏԱՇԷՍ [Artaxias]

(Ն. Ք. 190–159)

*Յայտնի է, թէ Ն. Ք.* 215 *թուականէն մինչեւ* 190 *թուականը՝ Սելեւկիացւոց պետութեան ձեռք անցած էր Հայաստան, որուն վրայ Անտիոքոս Գ. Մեծի* (*Ն. Ք.* 222–187) *կողմէ կուսակալ դրուեցան՝* ԱՐՏԱՔՍԻԱՍ *կամ* ԱՐՏԱՇԷՍ*. Հայաստանի հիւսիսային արեւելեան բաժնին համար, իսկ* ԶԱՐԻԱԴՐԷՍ *կամ* ԶԱՀՐԱԴ *և կամ* ԶԱՐԵՀ*, Հայաստանի հարաւային արեւմտեան բաժնին համար*։

*Արդ, Անտիոքոսի և Հռովմայեցւոց միջեւ կատարուած վերջին պատերազմին ժամանակ* (*Ն. Ք.* 190) *երբոր Անտիոքոս Մագնեսիայի* (= *Մաղնիսա*) *մօտերը յաղթուեցաւ, Հայաստանի յիշեալ երկու կուսակալներն առիթէն օգտուելով՝ Հռովմայեցւոց կողմն անցան և ինքզինքնին անկախ թագաւոր հռչակեցին*։

Նախապէս Արտաշէսի երկիրը կը բովանդակէր՝ Չորրորդ Հայք, Աղձնիք, Տուրուբերան, Այրարատ ու թերեւս նաեւ Սիւնիք նահանգները. իսկ Զարեհի երկիրը՝ Ծոփք, Անձիտ, Ոտոմանտիս եւ ուրիշ քանի մը գաւառներ միայն. բայց յետոյ՝ Հայաստանի տարածութիւնը շուտով մեծցաւ, այս երկուքին ձեռքով։

Արտաշէս, որ Հայաստանի մեծագոյն մասին տէր դառնալով՝ Արտաշիսեան Հարստութիւնը հիմնած էր, ո եւ է դրամ չէ ձգած. մինչդեռ Զարեհ՝ իր յիշատակն անմահացնող պղնձէ դրամ մը ձգած կը կարծուի, վրան յունական տառերով գրուած՝

ΖΑΔΡΙΑΔΟΥ – ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ

այսինքն՝ «Զարեհի, Թագաւորաց Թագաւորի»։

Զարեհի այս դրամը՝ դժբախտաբար կեղծ է, վասն զի Զարեհ՝ այս տեսակ հազիւ թէ նորածին թագաւորութեան մը ժամանակ՝ չէր կրնար «Թագաւորաց Թագաւոր»ի նման մեծադղորդ տիտղոս մը կրել։ Իրանի Արքայից Արքաներուն յատուկ այս բարձր տիտղոսը վերապահուած էր Հայոց մէջ՝ Տիգրան Մեծի, որ ամէն իրաւունք ունէր զայն գործածելու։ Ասոր հետեւեցաւ Արտաւազդ Գ, Տիգրանի որդին եւ յաջորդը։ Իսկ Տիգրան Դ՝ հազիւ թէ «Մեծ Թագաւոր» տիտղոսը գործածեց իր դրամներուն վրայ, զգուշանալով «Թագաւորաց Թագաւոր» տիտղոսէ յառաջ գալիք անհանգստութիւններէ։ Հետեւաբար, Զարեհ չէր կրնար ինքզինքը «Թագաւորաց Թագաւոր» կոչել, նկատի առնելով իր փոքրիկ եւ աննշան իշխանութիւնը։

Զարեհի ուրիշ դրամ մըն ալ ծանօթ է, որ բոլորովին տարբեր է նախորդէն, եւ կը կրէ միայն՝

ΔΣΑΡΙ ΑΝΙΣΑ ΔΩ

վերտառութիւնը, զոր Ոտտոյ Բլաու կը կարդայ՝ Δσαρίαδρις Ἀνισάδης, այսինքն՝ «Զարիադրիս, (որդի) Անիսադէսի[1]»։ Ասոր վրայ՝ «Թագաւորաց Թագաւոր» տիտղոսը չկայ։ Ասկէ զատ, երկու դրամներուն վրայի դէմքերն ու խոյրերն ալ իրարու նմանելէ շատ հեռու են։ — Ես կը կարծեմ, թէ ետքինն՝ որ Բերլինի Թանգարանը կը պահուի, աւելի հարազատ է քան թէ առաջինը, որուն վրայ հանգուցեալ Հ. Յովհաննէս Վ. Միսքճեան յօդուած մը գրած է «Բանասէր»ի մէջ, 1904ին, էր. 14։

---

1. **Otto Blau**, Վիեննայի Numismatische Zeitschrift թերթին մէջ, հտ. Թ, էր. 104.

## ՄՈՐՓԻԼԻԳՈՍ [Morphilig]

(Ն. Ք. 150? – 148)

ՄՈՐՓԻԼԻԳՈՍ՝ *հաւանական է, որ Զարեհի որդին ըլլայ, ինչպէս կ'ընդունի նաեւ Ռոսթոյ Բլաու։ Այս թագաւորին պղնձէ միակ դրամը կը պահուի Բերլինի Թանգարանը։*

*Առաջին երեսին վրայ կայ՝ Մորփիլիգոսի աջ դարձած անմօրուս գլուխը, կրելով կապպադովկիական սրածայր խոյր մը. իսկ երկրորդ երեսը՝ Անահիտ չաստուածուհիին արձանը, ձեռքը ծաղիկ բռնած, և յունարէն՝* ΜΟΡΙ *ու* ΣΑΡΙ *անունները, զոր Բլաու կը կարդայ՝* Μοριφίλιγος Σαριάδριος, *այսինքն՝ «Մորփիլիգոս, (որդի) Զարեհադրէսի»։*

---

## ԱՐՏԱՇԷՍ Ա. [Artaxias]

(Ն. Ք. 190–159)

*Հայաստանի մէջ՝ յիշեալ Արտաշէսի անունը կրող հարստութեան մը հաստատումով (Ն. Ք. 190)՝ նոր և փառաւոր թուական մը բացուեցաւ մեզ համար։*

*Այս Արտաշէսը՝ Մովսէս Խորենացիի կողմէ նկարագրուած Արտաշէս Բը չէ, որու շուրջ առասպելախառն պատմութիւն մը հիւսած է Մովսէս, այլ բո՛ւն Արտաշէսն է, իսկական Արտաշէս Աը, որուն համար Աննիբալ հիմը դրած է Հայոց Արտաշատ մայրաքաղաքին, որ Հռովմայեցւոց Կոմմոդոս կայսեր դրամին վրայ տպուած է՝* ΑΡΤΑΞΙCΑΤ *ձեւով, իսկ Ստրաբոնէ (Գիրք ԺԱ, Գլ. ժդ, 6) կը յիշուի՝* Ἀρτάξατα *և* Ἀρταξίασατα *ուղղագրութիւններով, որոնք կը նշանակեն՝ «Արտաքսիասի ուրախութիւն»։*

*Այս թագաւորէն ո՛ և է դրամ չունինք։*

*Ասկէ ետք կու գան Տիգրաններու և Արտաւազդներու դրամները։*

---



11. Շքադրամ Տիգրան Մեծի.
(Brit. Museum)

## ՏԻԳՐԱՆ Բ. կամ ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆ [Tigrane le Grand]

(Ն. Ք. 94-54)

*Հայոց պատմութիւն գրողներէ շատերուն կողմէ Տիգրան Ա. և Տիգրան Բ. շփոթուած են իրարու հետ։ Տիգրան Ա՛ որդին է Արտաւազդ Ա՛ի, և հայրը՝ Տիգրան Մեծի (Բ), ու դրամ չէ տպած. բայց ծանօթ է օտար հին պատմիչներէ, մասնաւորապէս Ապպիանոսէ* (*De Reb. Syr.*, 48)։

ԱՐԾԱԹ. *Տիգրան Բ՛ի կամ Մեծն Տիգրանի Չորեքդրամեան արժարճերը կը կշռեն՝* 12 *գր.* 10, 15 *գր.* 25, 15 *գր.* 30, 15 *գր.* 70, 15 *գր.* 75, 15 *գր.* 80, 15 *գր.* 90 *և* 16 *գրամ։ իսկ ասոնց տարածութիւնն է՝* 25 *հզրրդմետր.*, 26 *հզրրդմետր.*, 27 *հզրրդմետր. և* 28 *հզրրդմետր.*։

*Առաջին կողմի պատկերը կը ներկայացնէ՝ Տիգրանի աջ դարձած կիսանդրին, հայկական ժանեկաւոր խոյրով*[1] *և արքայական ապարօշով։ Խոյրին վրայ նկարուած քանդակուած են երկու արծիւներ, որոնց մէջտեղը դրուած է խոշոր աստղ մը կամ՝ լաւ եւս՝ արեւը։*

---

1. *Այս ժանեկաւոր խոյրը կը գործածէին նաեւ Փոքր Ասիոյ պետութիւններէն ոմանք. այսպէս՝ հիներէն Քաղդէաստանի թագաւորները. իսկ համեմատաբար նորերէն՝ ինչպէս մեր Ձեւ 13 պատկերէն կ'երեւայ, Կոմմագենէի Անտիոքոս Ա. թագաւորը* (Ն. Ք. 69–34)։

*Շրջափակ զարդը՝ ոմանց վրայ երիզակերպ հանգուցաւոր կապ մըն է, իսկ այլոց վրայ՝ մարգարիտի շար մը կամ հատաւոր ծիր մը։*

*Երկրորդ կողմի պատկերը կը ներկայացնէ Անտիոքի Բախտը՝* (La Fortune) *աջ դարձած, քօղարկուած, և ժայռի մը վրայ նստած դիրքի մէջ, աջ ձեռքն արմաւենիի տերեւ մը բռնած. ոտքերուն տակ՝ Որոնտէս գետի ոգին կիսանդրին, լողալու դիրքի մէջ բազկատարած։ Շրջափակ զարդը՝ սովորաբար դափնիէ հիւսուած պսակ մըն է։*

*Խորագիրն է. – աջը՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախը՝* ΤΙΓΡΑΝΟΥ. *այսինքն՝ «Արքայի Տիգրանայ»* (*Ձեւ* 12)։

— *Տարբերութիւնք. Բ կողմ՝ Անտիոքի Բախտը, ձախ դարձած, կիսամերկ, և ժայռի մը վրայ նստած. աջ ձեռքը կը տարածէ, իսկ*



12. *Չորեքդրամեան Տիգրան Մեծի.*

*ձախովը՝ Ամաղթեղջիւր* (La Corne d'Abondance) *մը կը բռնէ։*

*Կշիռն է՝* 15 *գր.* 25, *իսկ տրծ.* 27 *հզրրդմետր.։*

— *Տարբ. Ա կողմը՝ Տիգրանի հայկական թագով նոյն կիսանդրին, աջ դարձած։ Շրջափակ զարդն՝ երիզակերպ հանգուցաւոր կապ մըն է։*

*Բ կողմ. աջը՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախը՝* ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ. *այսինքն՝ «Արքայից Արքայի՝ Տիգրանայ»։ Անտիոքի Բախտն՝ աջ դարձած, քօղարկուած, և ժայռի մը վրայ նստած. աջ ձեռքն արմաւենիի տերեւ մը բռնած է. ոտքերուն տակ՝ Որոնտէսի ոգին կիսանդրին, լողալու դիրքի մէջ բազկատարած։ Շրջափակ զարդը՝ երբեմն երիզակերպ հանգուցաւոր կապ մը, իսկ երբեմն ալ դափնեհիւս պսակ մըն է։*

*Կշիռն է՝* 16 *գր.* 20, *իսկ տրծ.* 29 *հզրրդմետր.։*

*Պատկերը տե՛ս Տախտակ Բ, Թիւ* 10։

*ՊՂԻՆՁ. կիսադրամ. տրծ. է՝* 17 *հզրրդմետր., իսկ կշիռը՝* 7 *գր.* 80։

Մի և նոյն պատկերները։ Իսկ խորագիրն է՝

ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ

առանց «Արքայից Արքայ»ի, այլ միայն՝ «Արքայի Տիգրանայ» (Ձեւ 14)։

— Տարբ. Բ կողմի Բախտը՝ ձախ դարձած և ոտքի կանգնած է, աջ ձեռքովը կռթնելով ձողի մը. իսկ ձախ ձեռքով՝ Ամաղթեղ-



13. Անտիոքոս Ա. Թէոսի դրամը. King of Commagene 69-34 B.C.

ջիւր մը կը բռնէ։ Գլուխը՝ կողովաձեւ խոյր մը դրած է։ Շըրջապատը՝ հատաւոր ծիր մը կայ։ Կշիռն է 3 գր., իսկ տրծ. 15 հզրրդմետր.։

— Տիգրան Մեծի դրամներէն Լոնդոնի Բրիտանական Թանգարանին մէջ պահուած անագապղնձէ մէկ օրինակն ալ, որուն Բ կողմը նոյնպէս յունարէն «Արքայից Արքայի՝ Տիգրանայ» խորագիրը կը



14. Պղինձ Կիսադրամ Տիգրան Մեծի.

կարդացուի, Հերակլէսի կամ Վահագնի կանգուն մէկ արձանը դրած է, որ աջ ձեռքովն իր լախտին կռթնած է, իսկ ձախ ձեռքով՝ առիւծի մորթ մը բռնած է։

Տիգրանի այս բոլոր դրամները տպուած են Անտիոքի մէջ, երբոր Հայոց և միանգամայն Սելեւկիացւոց թագաւոր էր ան[1]։

---

1. Տիգրանի զանազան դրամներ տեսած եմ ողբացեալ Նշան Գալըպճեանի ճոխ հաւաքածոյին մէջ ալ.



15. Արտաւազդ Գ՛ի դրամը.

## ԱՐՏԱՒԱԶԴ Գ. [Artavazd III.]

(Ն. Ք. 54–34)

*Տիգրան Բ՛ի որդին և յաջորդն էր Արտաւազդ Գ., որուն դրամներուն վրայ ալ կը կարդանք՝ Տիգրանի դրամներէն ոմանց խորագիրներուն նման՝ «Արքայից Արքայի՝ Արտաւազդայ» շատ հաճելի և փառաւոր գրութիւնը։*

ԱՐԾԱԹ. *Արտաւազդ Գ՛ի արծաթ կիսադրամներուն կշիռն է՝* 3 *գր.* 75, *իսկ տարածութիւնն է* 18 *հզրրդմետր.։*

*Ա կողմի պատկերը կը ներկայացնէ Արտաւազդի կիսանդրին, աջ դարձած, հայկական ժանեկաւոր խոյրով և արքայական ապարօշով։ Խոյրին վրայի քանդակները նոյն են Տիգրան Բ՛ի խոյրին վրայիններուն հետ։ Շրջափակ զարդն է՝ մարգարիտի շար մը։*

*Բ կողմի պատկերը կը ներկայացնէ՝ սրարշաւ դէպ ի ձախ ընթացող քառաձի լծուած կառք մը, որուն մէջ կանգնած՝ զայն կը վարէ Յաղթանակը* (La Victoire), *ձախ ձեռքով ձիերու միացեալ սանձը բռնած, իսկ աջովը՝ պսակ մը։*

*Խորագիրն է. – ձիերուն վերեւը՝* ΒΑϹΙΛΕΩϹ, *տակը՝* ΒΑϹΙΛΕΩΝ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ. *այսինքն՝ «Արքայից Արքայի՝ Արտաւազդայ»*[1] (*Ձեւ* 15)։

ՊՂԻՆՁ. *կիսադրամներու տրծ. է՝* 20 *հզրրդմետր., իսկ կշիռը՝* 9 *գր.։*

*Ա կողմի պատկերը կը ներկայացնէ Արտաւազդի աջ դարձած կիսանդրին, հայկական խոյրով և արքայական ապարօշով։ Շրջափակ զարդն է՝ հատաւոր ծիր մը։*

*Բ կողմի պատկերն է՝ Յաղթանակ մը, որ դէպ ի ձախ կը քալէ, և աջ ձեռքովը պսակ մը կ՚երկարէ։*

*Խորագիրն է. – աջ կողմը՝* ΒΑϹΙΛΕΩϹ, *իսկ ձախ կողմը՝* ΒΑϹΙΛΕΩΝ ΑΡΤΑVΑΖΔΟΥ. *այսինքն՝ «Արքայից Արքայի՝ Արտաւազդայ»։*

---

1. *Այս շատ հազուագիւտ դրամէն օրինակ մը տեսած եմ Տ. Նշան Գալըպճեանի հաւաքածոյին մէջ։*



16. Տիգրան Գի պղնձադրամը.

## ՏԻԳՐԱՆ Գ. [Tigrane III.]

(Ն. Ք. 20–12)

*Արտաւազդի որդիներէն մին՝ Տիգրան Գ՝ յաջորդած է իրեն։ Ասոր արծաթ դրամը չեմ տեսած, եթէ ունի. իսկ*

*ՊՂՆՁԷ կիսադրամը կը կշռէ 5 գր. 55, և տրմ. է՝ 19 հզրրդմետր.։*

*Ա կողմի պատկերը կը ներկայացնէ Տիգրան Գի մօրուաւոր գլուխը, հայկական խոյրով և արքայական ապարօշով, աջ դարձած (Ձեւ 16)։*

*Բ կողմը՝ Բախտը, գահի մը վրայ բազմած դիրքի մէջ, ձախ դարձած. աջ ձեռքով սկահ մը բռնած է, իսկ ձախովը՝ Ամաղթեղջիւր մը։*

*Խորագիրն է. – Բախտին կռնակը՝ վերէն վար՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ. *այսինքն՝ «Արքայի Տիգրանայ»։*

---



17. Տիգրան Դի պղնձադրամը.

## ՏԻԳՐԱՆ Դ. [Tigrane IV.]

(Ն. Ք. 12–5 և Ն. Ք. 2–1 Յ. Ք.)

*Տիգրան Դ. որդին է Տիգրան Գի։ Ասոր ալ ՊՂՆՁԷ դրամները միայն ծանօթ են, որոնցմէ առանձինն տպուածներուն վրայ՝ «Արքայի Մեծի՝ Տիգրանայ» գրուած է, երբեմն զանազան յաւելուածներով, այսպէս.*

*Ա կողմին վրայ կայ Տիգրան Դի գլուխը, ձախ դարձած, կրելով հայկական խոյր և արքայական ապարօշ։ Շրջափակ զարդն է՝ հատաւոր ծիր մը։*

*Բ կողմը կը ներկայացնէ՝ կանգնած Յաղթանակ մը, որ աջ ձեռքովը բռնած է արմաւենիի տերեւ մը։ (Պատկերը Տ. Տախտակ Բ. Թիւ* 8)։

*Խորագիրն է. – ձախը՝* [ΒΑΣΙΛΕΩΣ] [ΜΕ]ΓΑΛΟΥ, *աջը՝* ΤΙΓΡΑΝΟΥ. *այսինքն՝ «Արքայի Մեծի՝ Տիգրանայ»։*

*Կշիռն է՝* 4 *գր.* 05, *իսկ տրծ.* 19 *հզրրդմետր.։*

— *Տարբերութիւնք. Ա. կողմը՝ մի և նոյնն է, ձախ դարձած գլուխով։*

*Բ կողմը կայ աջ դարձած կանգուն մէկը, գլուխը հայկական խոյրով, կարճ պատմուճան մը հագած. աջ ձեռքովն արծիւ մը և կամ թէ ծաղիկ մը բռնած է, իսկ ձախովը՝ յեցած է երկար ձողի մը։*

*Խորագիրն է.–ձախը՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ, *աջը՝* ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΕΛΗΝΟ(Υ). *այսինքն՝ «Արքայի Մեծի՝ Տիգրանայ, Յունասէրի»* (*Ձեւ* 17)։

*Տիգրան Դ. Պարթեւներու շնորհիւ գահ բարձրանալուն պատճառով՝ անոնց այս տիտղոսն իւրացուցած է, ի հեճուկս Հռովմայեցւոց, հաճելի դառնալու համար իր պաշտպաններուն։*

*Կշիռն է* 6 *գր.* 40, *իսկ տրծ.* 18 *հզրրդմետր.։*

— *Տարբ. Կիսադրամ մըն է։ Ա. կողմը՝ Տիգրանի գլուխը, աջ դարձած, կրելով հայկական խոյր և արքայական ապարօշ։*

*Բ կողմը՝ ձախ դարձած ձի մը, որ իր առջեւի ձախ ոտքը վեր բարձրացուցած է։*

*Խորագիրն է. – վերեւ՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *աջը՝* [ΜΕ]ΓΑΛ[ΟΥ], *ներքեւը՝* [ΤΙ]ΓΡΑΝΟΥ, *ձախը՝* ΘΕΟΥ. *այսինքն՝ «Արքայի Մեծի՝ Տիգրանայ, Աստուծոյ»։*

*Կշիռն է* 2 *գր.* 85, *իսկ տրծ.* 16 *հզրրդմետր.։*

---




18. Տիգրան Դ․ և Երատոյի դրամը։

## ՏԻԳՐԱՆ Դ․ ԵՒ ԵՐԱՏՈՅ [Tigrane IV et Erato]

*Ինչպէս ծանօթ է, Տիգրան Դ․ իր Երատոյ քրոջ հետ գահ բարձրացած է Ն․ Ք․ 12 թուականին։ Այս գահակցութեան իբրեւ ապացոյց՝ ՊՂՆՁԷ յուշադրամ մը տպած են միասին։*

*Ա կողմը՝ Տիգրանի աջ դարձած կիսանդրին, հայկական խոյրով և արքայական ապարօշով։ Շուրջանակի գրուած է․*

ΒΑΣΙΛΕΥΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΗΣ

*այսինքն՝ «Արքայից Արքայ՝ Տիգրան»։*

*Բ կողմը՝ Երատոյի ձախ դարձած կիսանդրին, սփածանելով և գլխադիրով։ Շուրջանակի գրուած է․*

ΕΡΑΤΩ ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ ΑΔΕΛΦΗ

*այսինքն՝ «Երատոյ, քոյր Տիգրանայ թագաւորի»* (Ձեւ 18)։

*Կշիռն է* 7 *գր․, իսկ տրծ․* 23 *հզրրդմետր․։*

---

## ԱՐՏԱՒԱԶԴ Դ․ [Artavazd IV.]

(Ն․ Ք․ 5-2)

*Գիտենք, թէ Հռովմայեցւոց Օգոստոս կայսրն Տիգրան Դ․ի յաջորդական կարգը մերժելով՝ հանգուցեալ Տիգրան Գ․ի Արտաւազդ եղբայրը Հայոց թագաւոր պսակեց և հռոմէական զօրքով Հայաստան ղրկեց, ուր Արտաւազդ՝ գահին վրայէն Տիգրանն ու Երատոն հալածելով՝ թագաւորական աթոռը գրաւեց* (Ն․ Ք․ 5–2)։

*Արտաւազդ Դ․ի դրամներուն վրայի խորագիրն է․*

ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΤΑΥΑΣΔΟΥ

*այսինքն «Արքայի Մեծի՝ Արտաւազդայ»։*




19․ Արտաւազդ Եի և Աւգոստոսի դրամը․

## ԱՐՏԱՒԱԶԴ Ե․ [Artavazd V.]

(2-11 Յ․ Ք․)

Արտաւազդ Ե․ ծագումով մար է, և Ատրպատականի ու միանգամայն Հայոց Թագաւոր պսակուած է, ինչպէս որ իր հայրը՝ Արիոբարզան, Ատրպատականի Թագաւորը, Հայաստանի վրայ ալ Թագաւոր նշանակուած էր Հռովմայեցւոց կողմէ (2 Յ․ Ք․)։

ԱՐԾԱԹ․ Արտաւազդ Եի Բրիտանական Թանգարանին մէջ պահուած արծաթ դրամին խորագիրն է․

Ա կողմ՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ. այսինքն՝ «Արքայի Մեծի՝ Արտաւազդայ»։

Բ կողմ՝ ΘΕΟΥ ΚΑΙΣΑΡΟΣ ΕΥΕΡΓΕΤΟΥ. այսինքն՝ «Աստուծոյ կայսերական բարերարի»․ տիտղոս մը, որ ընդհանրապէս Սելևկիացւոց Թագաւորներու կողմէ կը գործածուէր։

Նոյնպէս հետաքրքրական է նաև հաստատել, Թէ Ա կողմի նկարին վրայ, ինչպէս կը տեսնենք, Արտաւազդ Ե․ հայկական խոյր չի կրեր, այլ Սելևկեանց յատուկ ապարօշ միայն։ Իսկ Բ կողմի պատկերը կը ներկայացնէ Աւգոստոս կայսեր կիսանդրին, դափնեպսակ գլուխով (Ձև 19)։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ․ — **Ernest Babelon,** Les rois de Syrie, d'Arménie et de Commagène. Paris, 1890. — **Victor Langlois,** Numismatique de l'Arménie dans l'antiquité. Paris, 1859. — **Percy Gardner,** On an unpublished coin of Artavasdes II, king of Armenia. London, 1872. — **Warwick Wroth,** Catalogue of the Graec Coins of the Galatia, Cappadocia and Syria. London, 1899. — Հ․ ՅՈՎՍԷՓ Վ․ ԳԱԹՐՃԵԱՆ, Տիեզերական Պատմութիւն․ Վիէննա, 1849․ — Կ․ Յ․ ԲԱՍՄԱՋԵԱՆ, «Բանասէր», հտ․ Ա․ Պարիս, 1899.

*
* *

Ոմանք այս շրջանին մէջ կը դասեն «հայկական» կոչուած դրամներու խումբ մը, որոնք՝ իրականին մէջ՝ ո՛ և է կապ չունին հայութեան հետ։

Այս դրամները կրնանք երկու դասակարգի բաժնել.

Ա. Արշակունի դրամներ.

Բ. Արգարեան դրամներ։

## Ա. – ԱՐՇԱԿՈՒՆԻ ԴՐԱՄՆԵՐ [Les Monnaies Arsacides]

(53-430 Յ. Ք.)

Արշակունիք երկու ճիւղի բաժնուած են. — Հայ–Արշակունիք, և Պարսիկ–Արշակունիք կամ Պարթեւք, առանց հաշուի առնելու Արշակունեաց վրական ճիւղը։

Հայ–Արշակունեաց հիմը դրուած է Պարսիկ–Արշակունեաց Վաղարշ Ա. Թագաւորին ձեռքով, երբ ասիկա Հայաստանը Պարթեւստանի միացուց, և իր ՏՐԴԱՏ եղբայրը Հայոց վրայ թագաւոր կամ թէ փոխարքայ դրաւ, Յ. Ք. 53 թուին։

Այս պարագային՝ Հայաստան իրաւունք չունէր իր հաշուին դրամ տպելու առանձինն, անկախաբար, այլ կը գործածէր Պարսից դրամները։

Այս անվերապահ և համարձակ արտայայտութեանս դէմ պիտի առարկեն ինձ, թէ նշանաւոր արեւելագէտ մը՝ Դոկտ. Ա. Մորդման, Հայկազանց և Արշակունեաց ժամանակներէն հայ դրամներ գտած է, ինչպէս Մանուազի ու Տրդատի դրամները։

Մորդմանի «գիւտը» ծանօթ է ինձ։

Մորդման Բերլինի Zeitschrift für Numismatik հանդէսին 1877 տարուան պրակներուն մէջ (հտ. Դ, երես 152–186) գրած զգայացունց մէկ յօդուածով յայտարարած է գոյութիւնը Մանուազի ու Տրդատի դրամներուն։

Դժբախտաբար ճիշտ կարդացուած չեն դրամներուս պահլաւերէն խորագիրները։ Հոն ո՛չ Մանուազի անունը կայ, ո՛չ ալ Տրդատի։ Անոնք՝ Պարսից Աքամենեան Հարստութեան թագաւորներէն Դարեհ Աի և Վարաֆրադատ Բի դրամներն են, որոնցմէ առաջինը՝ «Մանուազ» կը կարդայ Մորդման, փոխանակ կարդալու Դարիաւ, իսկ երկրորդը՝ «Տրդատ» կը կարդայ, փոխանակ կարդալու Վարաֆրադատ։

Հետեւաբար՝ Մանուազէ ու Տրդատէ դրամներ ծանօթ չեն. և

ուրեմն՝ Հայ–Արշակունեաց անունով դրամ գոյութիւն չունի, հակառակ մինչեւ ցարդ այս ուղղութեամբ հրատարակուած երկասիրութիւնները, որոնցմէ գլխաւորն ու նորագոյնն է Ալեքսանդր Պետրովիչի գործը, – Arsaciden Münzen. Վիեննա, 1904։ Ասոր մէջ Պետրովիչ երեք առարկութիւններով իր կարծիքը կը ջանայ հաստատել, առարկութիւններ՝ որոնք հարեւանցի քննութեան իսկ պայծառ արեւին տակ ձիւնի պէս կը հալին կ'իյնան։

Այս քննութիւնը կատարած եմ Պարսամեան Եղբայրներու «Կեանք և Արուեստ» հաւաքածոյին մէջ (Ա. տարի, 1931, եր. 80–81), որմէ քաղուածաբար կը ներկայացնեմ հոս, ամբողջացնելու համար ներկայ տեսութիւնս։

Պետրովիչ կ'ըսէ, թէ (Ա) Պարթեւաց դրամներուն վրայ տպուած թագաւորին կիսանդրին՝ դէպ ի ձախ կը նայի, մինչդեռ Հայ–Արշակունեաց վերագրուածներունը՝ աչ կը նայի։ (Բ) Պարթեւաց դրամներուն շրջափակ զարդը՝ մարգարիտի շար մը կը ներկայացնէ. իսկ Հայ–Արշակունեաց վերագրուածներունը՝ երիզակերպ շրջանակ մըն է։ (Գ) Պարթեւաց դրամներուն վրայ թագաւորն ընդհանրապէս «Արքայից Արքայ» կամ թէ «Արքայ Մեծ» տիտղոսը կը կրէ. մինչդեռ Հայ–Արշակունի թագաւորք իրենց դրամներուն վրայ պարզ «Արքայ» տիտղոսը կը գործածեն։

Տեսնենք, թէ ճի՞շտ են այդ առարկութիւնները, որոնց կը փութամ պատասխանել կէտ առ կէտ։

Ա. Դրամներուն վրայի կիսանդրին աչ դարձած է, երբ դրամը տպուած է Սիւրիոյ մէջ. իսկ ձախ դարձած է, երբ դրամը տպուած է Սիւրիայէ դուրս տեղ մը և կամ Պարսկաստանի մէջ։ — Ասոր օրինակ են Տիգրան Բ՛ և Գ՛ դրամները, որոնց վրայ թագաւորին կիսանդրին՝ աչ դարձած է, երբ անոնք կոխուած են Սիւրիոյ մէջ. իսկ Տիգրան Դ՛ դրամներէն ոմանց վրայ թագաւորին կիսանդրին ձախ դարձած է, երբ ասոնք կոխուած են Տիգրանակերտի մէջ։ Նոյնպէս՝ Պարթեւաց Միհրդատ Ա՛ (Ն. Ք. 171–138) դրամներն աջ դարձած են, իսկ Միհրդատ Բ՛ (Ն. Ք. 123–88) դրամները ձախ դարձած են։

Ուշադրութեան արժանի է նաեւ այն պարագան, որ Սիւրիոյ իշխանութեանց (Սելեւկիոյ և Կոմմագենէի) բոլոր դրամներուն վրայ, – առանց բացառութեան՝ բոլորին վրայ, – ո՛չ միայն թագաւորին կիսանդրին աչ դարձած է, այլ և վրայի ձին, փիղը, թռչունն եւս աչ դարձած են։ Արդիւնք քմահաճոյքի փորագրիչ արուեստագէտին։

Հռովմայեցւոց և Յունաց դրամներուն վրան ալ ընդհանրապէս

աջ դարձած են կիսանդրիք· բայց կան նաեւ ձախ դարձած օրինակներ, որոնք՝ Պետրովիչի դրութեամբ՝ տարբեր իշխանութեան մը չեն վերագրուած։ Այսպէս՝ Ներոնի, Վեսպասիանոսի և այլոց դրամներէն ոմանց վրայ աջ դարձած են, իսկ ոմանց վրայ ալ ձախ դարձած են կիսանդրիք։

Բ· Պարթեւաց դրամներուն շրջափակ զարդը՝ միշտ ալ մարգարիտի շար չի ներկայացներ, այլ երիզակերպ շրջանակ ունեցող դրամներ ալ կան, ինչպէս՝ օրինակի համար՝ ձախ դարձած Միհրդատ Աի դրամներուն վրայ կ'երեւայ։

Ասկէ դուրս՝ Տիգրան Մեծի դրամներէն ոմանց շրջափակ զարդը կը ներկայացնէ երիզակերպ շրջանակ մը, իսկ ոմանց վրայ ալ՝ մարգարիտի շար մը, որ՝ ըստ Պետրովիչի՝ Հայոց յատուկ չէ· և սակայն այս դրամին պատկերն ալ կը դնէ Պետրովիչ, իր վերոյիշեալ գործին մէջ, Տախտակ ԻԵ, Ձեւ 6։

Գ· Թագաւորին տիտղոսին գալով, Պետրովիչ առարկելով հանդերձ թէ՝ իր կողմէ Վաղարշակի ընծայուած դրամներուն վրայ զանոնք տպող թագաւորը նախապէս «Արքայ Արշակ» տիտղոսը գործածած է, երբոր կը տեսնէ, թէ նոյն Արշակի աջ դարձած (այսինքն՝ «հայ») դրամներէն ոմանց վրայ՝ Պարթեւաց դրամներուն նման՝ «Արքայ Մեծ» տիտղոս կրողներ ալ կան, Վաղարշակի անկախութեան ժամանակ տպուած դրամներ կը կարծէ զանոնք։

Ասիկա ա՛յնքան անհեթեթ կարծիք մըն է, որ առողջ քննադատութեան չի դիմանար· վասն զի Պարթեւաց նման հզօր պետութեան մը քթին տակ՝ անոր «Մեծ Թագաւոր»ներուն յատուկ մեծադղորդ տիտղոս մը իւրացնելն, այդ ահաւոր պետութեան դէմ պատերազմ հրատարակել կը նշանակէր։ Եւ՝ այս տեսակ յայտարարութիւն մը՝ վեր էր Վաղարշակի ուժերէն։

Խնդիրը պատմական տեսակէտէ ալ քննելով՝ կը համոզուինք Հայ–Արշակունեաց դրամներու չգոյութեան։

Ինչպէս որ Տիգրաններու և Արտաւազդներու պատմութեան մէջ տեսանք, Քրիստոսի առաջին դարուն սկիզբները — նոյն իսկ աւելի ալ յառաջ — Հայաստան մերթ Հռովմայեցւոց և մերթ Պարսից տիրապետութեան տակ կամ՝ եթէ կ'ուզէք՝ գերիշխանութեան տակ կը գտնուէր։

Այս վիճակը շարունակուեցաւ Բիւզանդացւոց և Սասանեանց ժամանակ ալ, մինչեւ որ Շապուհ Գ· և Թէոդոս Մեծն՝ 387 թուին՝ իրենց մէջ բաժնեցին Հայաստանը, վերջ տալով անոր հարկատու կամ կիսանկախ թագաւորութեան· որով՝ 389էն սկսեալ՝ Բիւզանդական

Հայաստան կառավարուեցաւ Հռոմիներու կողմէ դրուած կոմեսներու (Comes Armeniae) կամ իշխաններու կողմէ. իսկ Պարսկական Հայաստան՝ ժամանակ մը Սասանեաններու կողմէ դրուած հայ կամ պարսիկ անուանական թագաւորներով կառավարուելէ ետք, 430էն սկսեալ մարզպաններու կամ պարսկական կուսակալներու հոգածութեան յանձնուեցաւ։

Այսպէս վերջ գտաւ Հայ-Արշակունեաց Հարստութիւնը, ժամանակ և միջոց չտալով դրամ տպելու մասին խորհելու։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ· — **Victor Langlois,** Numismatique de l'Arménie dans l'antiquité. Paris, 1859. — **Alexander Ritter von Petrowicz,** Arsaciden-Münzen. Wien, 1904. — Հ. Յ. ՏԱՇԵԱՆ. Արշակունի դրամներ։ Վիեննա, 1917։ — Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ, «Կեանք և Արուեստ», Ա. տարի։ Բարիզ, 1931։ — Նոյնը, Թէոդիկի «Տարեցոյց»։ Բարիզ, 1928։

---

## Բ· – ԱԲԳԱՐԵԱՆ ԴՐԱՄՆԵՐ [Les Monnaies des rois d'Édesse]

(Ն· Ք· 132-244 Յ· Ք·)

Եդեսիոյ՝ անճիշտ կերպով՝ «Աբգարեան» կոչուած աաորի իշխանութիւնն հաստատուած է Ն· Ք· 132 թուին, և վերջ գտած է Յ· Ք· 244ին։

«Աբգարեան» անունը տուած են այն դրամներու՝ որոնց շատերուն վրայ յունական տառերով ABГAPOC (Աբգար) անունը կը կարդացուի, և որոնք տպուած են Եդեսիոյ մէջ։

Մեր աւանդական պատմութենէն ծանօթ է, թէ Մովսէս Խորենացի՝ Հայոց թագաւորներու կարգին կը դասէ «Աբգար որդի Արշամայ» մը, որ Օսրոյենի կամ Եդեսիոյ աորի թագաւորներէն Աբգար Եւ Ուքամա = «սեւ» մակդրին՝ «Արշամայ» սխալ ընթերցման արդիւնքն է։

Այսպիսի սխալ հիման մը վրայ ամբողջ պատմութիւն մը կը հիւսէ Խորենացի, ըսելով թէ Տիգրան Մեծի «Արտաշէս» եղբօր որդին Արշամ՝ Պարթեւաց կողմէ Հայոց թագաւոր պսակուած է, և այլն[1]։

---

1. ԽՈՐԵՆԱՑԻ, Գիրք Բ, գլ· ԻԴ։

Մ. Խորենացւոյ համեմատ՝ այս Աբգարն է, որ Քրիստոսի հետ թղթակցած է և անոր հրաշագործութեանց հաւատալով՝ Թադէոս առաքեալի ձեռքով «մկրտեցաւ ինքն Աբգար և ամենայն քաղաքն. և զդուրս տաճարաց կռոցն փակեցին[1]»: Ուրեմն՝ ըստ Խորենացւոյ՝ Աբգար եղած է առաջին քրիստոնեայ թագաւորը:

Աբգարեան «հայ» դրամներն ընդունելու կամ մերժելու համար՝ հակիրճ կերպով քննենք խնդիրը:

Նախ, Տիգրան Մեծի եղբայրը՝ «Արտաշէս» չէր կոչուեր, այլ Արտոուադիստոս կամ Արտաւազդ, Բը իր կարգին (Ն. Ք. 123–94):

Երկրորդ, այստեղ յիշատակուած Աբգարն, — «Արշամայ որդի» Ուքամա կոչուածը, — իսկապէս Քրիստոսի ժամանակակից Աբգարն է, որ պատմական Աբգար Երրորդն է, որդի Մա՛անու Գի, և իշխած է, առաջին անգամ՝ Ն. Ք. 4 թուականէն մինչև Ց. Ք. 7 թուականն, իսկ երկրորդ անգամ Ց. Ք. 13 թուականէն մինչև 50 թուականը: Բայց Եդեսիոյ թագաւորութեան սահմաններէն ներս քրիստոնէութիւնը մտած է՝ միմիայն Մա՛անու Ըի որդի Աբգար Թի օրով (179–214 Ց. Ք.):

Աբգար Թ. Պարթևաց և Հռովմայեցւոց միջև տեղի ունեցած ճակատամարտներէն ետք՝ Հռովմ գնաց, Սևերոս կայսեր ապաւինեցաւ: Հռովմէ վերադարձին՝ իր հովանաւորութեան տակ առաւ ժամանակին համբաւաւոր գնոստիկեան Բարդածանը: Եւ որովհետև «Օրինագիրք երկրին» կոչուած գրքին մէջ կ'ըսուի, թէ Աբգար՝ քրիստոնէութիւնն ընդունելով՝ իր նախնեաց կողմէ Թարա՛թա դիցուհիին ի պատիւ կատարուած եպերելի որձատութիւնն արգիլեց, կը հետևի, թէ Աբգարի քրիստոնէութիւնը տեղի ունեցած է՝ Հռովմէ վերադարձին, այն է՝ 202 թուականէն ետք:

Եզրակացութիւն. — Եդեսիոյ թագաւորութիւնը՝ ո՛և է առընչութիւն չունի Հայոց հետ: Իսկ Աբգարի և Քրիստոսի միջև իբր թէ կատարուած թղթակցութիւնը՝ կեղծ է:

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. — **V. Langlois,** Numismatique de l'Arménie dans l'antiquité. Paris, 1859. — **J. - P. Martin,** Les origines de l'Église d'Édesse et des Églises syriennes. Paris, 1889. — **J. Dashian,** Zur Abgar-Sage. Wien, 1890. — **R. Duval,** Histoire politique, religieuse et littéraire d'Édesse. Paris, 1891. — **A. Carrière,** La légende d'Abgar. Paris, 1895. — Կ. Ց. ԲԱՍՄԱՋԵԱՆ, «Բանասէր», Բ. տարի, 1900, էր. 45–52:

---

1. ԽՈՐԵՆԱՑԻ, Գիրք Բ, գլ. ԼԳ:




20. Քարտէս Ժ. դարու Հայաստանի.
(Բաժնուած մանր թագաւորութիւններով)

Բ.

# ՄԵՍՐՈՊԵԱՆ ՇՐՋԱՆ

**[De l'invention de l'alphabet jusqu'à 1187]**

(414-1187)

*Այս շրջանին մէջ իրաւամբ՝ մանաւանդ անհամբերութեամբ՝ կը սպասէինք ունենալ հայկական տառերով կոխուած կտրուած ազգային դրամներ. բայց՝ ցաւալի է հաստատել, թէ հայ տառերու գիւտէն՝ այսինքն 414 թուականէն՝ մինչեւ Ռուբինեան իշխաններէն պարոն Լեւոն Բի ժամանակ, այն է՝ մինչեւ 1187 թուականը, հայատառ դրամի չենք հանդիպած։ Կ'ըսեմ՝ «չենք հանդիպած», խորհելով և*

փափագելով որ թերեւս գոյութիւն ունեցած ըլլան անոնք, բայց մի գուցէ մենք տեսած չըլլանք։

Եւ սակայն՝ իրողութիւնը չենք կրնար ծածկել լոկ յոյսով։

Իրողութիւնը փաստ է։

Ո՛չ Արշակունեաց վերջին մռայլ օրերէն, ո՛չ Հայաստանի Մարզպաններու և Վարդանանց աշաւոր փայլատակումներէն ու ճարճատիւններէն (430–634), ո՛չ Կիւրապաղատներու անհանդարտ ժամանակներէն (635–703), ո՛չ Ոստիկաններու դաժան շրջանէն (653–885), և ոչ իսկ Բագրատունեաց հարստութեան փայլուն համարուած օրերէն (885–1045).... ո՛չ մէկ դրամ հայկական...[1]։

Զկա՛ն նաեւ Կարուց Թագաւորութենէն (962–1064), ինչպէս նաեւ Գուգարաց կամ Աղուանից, Մածնաբերդի, Տաւուշոյ, Բաղաց և Սիւնեաց, Ձորոգետոյ կամ Կախեթի Թագաւորներէն (980–1249), և՝ վերջապէս՝ Վասպուրականի, Անձեւացեաց և Ռշտունեաց Թագաւորներէն (914–1016) ո՛ և է դրամ...։

Անգա՛մ մը միայն, անշուշտ բացառիկ պարագաներու մէջ, հայ տառերով տպուած պղնձէ դրամի մը կը հանդիպինք Կիլիկիայէ դուրս, որ միակ օրինակն է, և կը պահուի Լենինգրադի Ասիական Թանգարանին մէջ[2]։



21. Պղնձադրամ Կորիկէ կիւրապաղատի.

Դրամիս տարածութիւնն է՝ 25 հզրրդմետր.։

Ա. կողմի պատկերը կը ներկայացնէ բիւզանդական ոճով Քրիստոսի կիսանդրին, լուսապսակ գլուխով. երկու քովերը՝ «ՅՍ | ՔՍ»։

---

1. Աւստրիացի հայասէր վիպասան մը, Ֆրանց Վերֆել, իր «Մուսա – դաղի քառասուն օրերը» (Vierzig Tage des Musa Dagh) պատուական գործին մէջ «Հայոց Աշոտ Բագրատունի Թագաւորի» արծաթէ մէկ դրամին խօսքը կ'ընէ։ Բայց ասիկա գիտական աշխատութիւն մը չէ, այլ վէպ է. հետեւաբար դրամագիտական արժէք մը չի ներկայացներ։

2. Կորիկէի դրամը, որ ուրիշ դրամներու հետ միասին պահուած գտնուած է Լոռիի մէկ թաքստոցին մէջ, 1838ին Ասիական Թանգարանին նուիրած է Խուդաբաշեան։

*Բ կողմը՝ չորս տողի վրայ.*

† ՏՐՈԳ
ՆԷԿՈՐԻԿ
ԻԿՈՐԱ
Ա

*այսինքն՝ «Տ(է)Ր, օգնէ Կորիկ(է)ի կորա[պ]ա[ղատի]» (Ձեւ 21)։*

*Այս դրամը՝ որ Լօռիի մէջ գտնուած է, կը պատկանի՝ ո՛չ թէ Գուգարաց թագաւորներուն, այլ Տայոց կիւրապաղատներէն հայազգի ԿՈՐԻԿԷի, Ժ. դարու վերջերէն և կամ ԺԱ. դարու սկիզբներէն, երբ Տայոց աշխարհը կը կառավարուէր կիւրապաղատներու ձեռքով։*

*Դրամին Լօռիի մէջ գտնուած ըլլալն ապացոյց մը չէ, որ մենք Գուգարաց կամ Աղուանից Կորիկէ անունով ծանօթ երեք կամ չորս թագաւորներէն մէկուն ընծայենք զայն, ինչ որ ըրած են Բրոսէ, Լանգլուա և այլք. վասն զի (Ա) Աղուանից թագաւորները՝ մեր միւս երկրորդական արքայիկներուն նման՝ դրամ տպելու իրաւունք չունէին. (Բ) իսկ եթէ ունէին, իրենց դրամին վրայ պիտի դնէին՝ «թագաւոր Աղուանից» բառերը, փոխանակ իրենք զիրենք կոչելու՝ «կորապաղատ» կամ «կիւրապաղատ» (յն.* κουροπαλάτης), *որ բիւզանդական կայսրերու կողմէ տրուած տիտղոս մըն էր։ (Գ) Պէտք է գիտնալ նաեւ, որ Աղուանից աշխարհին՝ Առանի վրայ կը տիրապետէին Շէդդադեանք, 951 թուականէն մինչեւ 1076, որմէ յետոյ Սելճուկեաններէ ի սպառ գրաւուեցաւ երկիրը։ Այս կէտն ամենէն կարեւորն է։*

*Վերջերս առիթն ունեցայ հանդիպելու և այս կարծիքս յայտնելու Հռովմի Լեւոնեան Վարժարանի հայերէն լեզուի ուսուցիչ Հ. Ղեւոնդ Վ. Մովսէսեանի, որ Կորիկէի դրամին վրայ ուսումնասիրութիւն մը հրատարակած է Վիեննայի մէջ։ Ուրախ եմ ըսելու, որ Վեր. Վարդապետն ամբողջովին համաձայն է ինձի։*

*Արդ, ի՞նչ տարօրինակ և անսպասելի պատահարի կարելի է վերագրել հայատառ դրամներու այս ցաւալի բացակայութիւնը։ —*

*Եթէ ազգային զգացումներուս դէմ դաւաճանութիւն չհամարուէր, տխուր սրտով և ամօթահար կերպարանքով պիտի պատասխանէի, թէ յիշեալ մեծ ու փոքր թագաւորութիւններէ հայկական դրամ չունենալնուս պատճառը — Մեծն Տիգրանի և Լեւոն Մեծագործի ժամանակներէն դուրս — մեր բացարձակ անկախ պետութեան*

տէր չըլլալէն է, լինելով միշտ հպատակ կամ թէ հարկատու՝ այսինչ կամ այնինչ պետութեան, նոյն իսկ Բագրատունեաց փառաւոր շրջանին, ինչպէս որ տեսանք քիչ յառաջ, և ինչպէս որ այլուր գրած է ժաք դը Մորգան[1]։

Այս բացակայութենէն կը հետևի, թէ իրաւունք չենք ունեցած ազգային դրամ տպելու, — ինչպէս երբեմն տպած են Տիգրանեանք, — այլ գործածած ենք հռովմէական, պարսկական, արաբական, մոնղոլեան, բիւզանդական և այլ դրամներ։

Բայց, այս յոռետեսութեանս հակառակ, փոքրիկ և աղօտ նշոյլ մը կը պլպլայ շատ հեռուներէ, Բարձրբերդցի Վարդան Պատմիչէ († 1271), որ իր Պատմութեան մէջ կ՚ըսէ, թէ Հայոց Լևոն Թագաւորի ժամանակէն Կիլիկիոյ մէջ գտնուեցաւ հին՝ Հայկազանց կռապաշտ թագաւորներէն մնացած և հայերէն գրով տպուած դրամ մը. «Եւ զի լեալ է հայերէն գիր հնոյն՝ վկայեցաւ ի ժամանակս Լևոնի արքայի, զի գտաւ դրամ ի Կիլիկիա, հայերէն գրով դրոշմեալ զանուն կռապաշտ թագաւորացն Հայկազանց[2]»։



22. Շապուհ Ա.ի դրամը.

Վարդանի այս վարկածը կրկնած է, և ականատեսի վկայու-

---

1. « Malgré la richesse qui reignait alors dans les pays de l'Ararat, il semble que les princes bagratides n'ont jamais battu monnaie, car on n'a jusqu'à ce jour rencontré aucun exemplaire de coins indigènes. Soumis au tribut par les khalifes, les divers rois arméniens étaient très certainement considérés comme sujet des Arabes et, par suite, ne jouissaient pas du droit d'émettre du numéraire». **J. de Morgan**, Histoire du peuple arménien, երես 145.

2. Հաւաքումն Պատմութեան Վարդանայ վարդապետի, եր. 50. Վենետիկ, 1862.

թեամբ հաստատած է նաեւ Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան, իր «Հնախօսութիւն Հայաստանեայց» յոյժ պատկառելի գործին Գ. հատորին մէջ, եր. 75, հետեւեալ բառերով. — «Այժմ և մեք վկայեմք մեզէն լեալ ականատես. զի յերեւելի հաւաքմունս դրամոց՝ զորս ժողովեաց հռչակաւոր դեսպանն անգղիացի Այնզլէ անուանեալ յաւուրս սուլդան Համիտի (Ա), բազմութիւն հին և նոր դրամոց աստի և անտի բերեալ ի Բիւզանդիա, հազարաւոր դրամս տեսաք առ նմա ի կարգս անծանօթից դասեալ, որոց ամենեցուն թիւ հասանէր իբր ի հարիւր հազար. և որոյ հնագիր և կարգաւորօղ էր հռչակաւոր Տօմէնիքօ Սէստինին որ ի Փլորենտիա։ Ի մէջ անծանօթիցն այնոցիկ յամին 1788 տեսի հարիւրաւոր դրամս արծաթիս. ի մի կողմն դրոշմեալ ունելով ատրուշան ի մէջ երկուց մոգուց. իսկ ի միւս կողմն դէմք թագաւորի ըստ արեւելեան օրինակի սաղաւարտեալ, ունելով շուրջանակի հայկական տառս որոշ մնացեալս. Հ. Տ. Պ. Կ. Ճ, և այլն, զոմանս ուղղագիրս, իսկ զոմանս խոտորնագիրս. բայց ոչ գտանելով ի նոսա տառ ինչ ձայնաւոր՝ չեղեւ ինձ մարթ անուն ինչ ընթեռնուլ։ Գտանին այսպիսիք և յայլ հանդիսարանս դրամոց, զորս առհասարակ կոչեն դրամս Պարթեւաց արշակունեաց, այլ գիրն անծանօթ մնայ առ նոսա. զորս համարիմ լինել դրամս մերոց արշակունի թագաւորաց հին հայկական գրովք՝ յորս պակասէր ձայնաւոր»։

Նո՛յն սխալ կարծիքը, նո՛յն անկայուն վկայութիւնը նաեւ Հ. Գարեգին Վ. Զարպհանալեանէ, որ իր «Հայկական Հին Դպրութեան Պատմութիւն» երկասիրութեան մէջ (Գ. տիպ, 1897, եր. 44) Վարդանայ Բարձրբերդցւոյ և Հ. Ղուկաս Ինճիճեանի խօսքերը մէջ բերելով, անոնց ըսածները կերպով մը կը պաշտպանէ։

Այս դրամներն, ինչպէս որ մեր (Զեւ 22) պատկերէն կը տեսնուի, «հայկական» չեն, և հեռուէն իսկ կապ չունին Հայոց հետ, այլ պահլաւիկ տառերով տպուած Սասանեան Պարսից դրամներ են, որոնց վրայի տառերէն ոմանք քիչ մը կը նմանին հայերէնի[1]։

Պարսիկ – Արշակունիք իսկ իրենց դրամներուն վրայ ազգային՝ այսինքն պարսկական տառ չեն գործածած, որովհետեւ զուրկ էին անկէ, այլ կիրարկած են յունական և արամէական տառեր։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. — **M. Brosset,** Monographie des monnaies arméniennes. In «Bulletin hist. - phil. de l'Académie des Scien-

---

1. Տեսնել իմ յօդուածս «Հայաստանի կոչնակ»ին մէջ 1922, երես 1234–1235։

ces de St. - Pétersbourg», 1840. — **V. Langlois,** Numismatique de l'Arménie au moyen âge, *էր.* 28–30. Paris, 1855. — **Նոյն,** Essai de Classification des suites monétaires de la Géorgie, depuis l'antiquité jusqu'à nos jours, *էր.* 37. Paris, 1860. — Հ. ՂԵՒՈՆԴ ՄՈՎՍԷՍԵԱՆ, *Լոռիի Կիւրիկեան թագաւորներու պատմութիւնը*, *Վիեննա*, 1923։ — Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ, «*Կոչնակ*», ԺԹ. *տարի*, 1919, թիւ 42 *և* ԻԲ. *տարի*, 1922, թիւ 38։



23. ՍԻՒՆԻՔ. – *Տապանաքար Հայրապետ եպիսկոպոսի.*

## Գ․

# ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՇՐՋԱՆ

[Domination romaine]

(69 Ն. Ք. – 183 Յ. Ք.)

Այս էջերուն մէջ քանիցս տեսանք, թէ Հայաստան՝ նախաքրիստոնէական և յետքրիստոսեան առաջին դարերուն՝ Արեւելքի և Արեւմուտքի միջեւ կռուախնձոր դարձած էր։

Պարսկաստան և Հռոմ դէմ առ դէմ կանգնած էին, իրարու մրցակից։

Իսկ Հայերն՝ երկու մեծ պետութեանց միջեւ կը տատանէին, մէկ մը մէկին և մէկ մը միւսին կողմը դառնալով, ստիպողաբար։

Օր մըն ալ՝ եկաւ հասաւ այն չարաբաստիկ ժամը, երբ Հռովմայեցիք՝ առաջին անգամ ըլլալով խուժեցին Հայաստանի սահմաններէն ներս, Քրիստոսէ յառաջ 69 թուականին։

---



24. Մարկոս Անտոնիոսի և Կղէոպատրայի դրամը.

## ՄԱՐԿՈՍ ԱՆՏՈՆԻՈՍ [Marc Antoine]

(Ն. Ք. 43-30)

Հայաստանի անունով հռովմէական առաջին դրամը կը գտնենք Հռովմի եռապետութեան անդամներէն Մարկոս Անտոնիոսի ժամանակ։ Անտոնիոս Հայաստանը գրաւեց, և Հայոց Արտաւազդ Գ. թագաւորն ու արքայական ընտանիքը ձերբակալելով Աղեքսանդրիա տարաւ, իր տարփածու ԿՂԷՈՊԱՏՐԱ թագուհիին, որ Ն. Ք. 30 թուա-

կանին Արտաւազդը գլխատել տալով՝ Ատրպատական Մարաստանի Արտաւազդ թագաւորին նուէր ղրկեց գլուխը։ Ահա այս յաղթութեան ի նշան՝ Անտոնիոս Եգիպտոսի մէջ մասնաւոր յուշադրամ մը տպեց, որուն մէկ կողմը կայ Անտոնիոսի գլուխը, և շուրջը գրուած է.

ANTONI(US). ARMENIA. DEVICTA.

այսինքն՝ «Անտոնիոս. — Հայաստանի յաղթած». իսկ միւս կողմը դրոշմուած են Կղէոպատրայի կիսանդրին ու՝

CLEOPATRAE. REGINAE. REGVM FILIORVM REGVM.

այն է. «Թագաւորաց՝ որդւոց թագաւորաց՝ թագուհւոյ Կղէոպատրայի»։ (Ձեւ 24)։

---




25. Հայադրամ Օկտաւիանոսի.

## ՕԿՏԱՒԻԱՆՈՍ [Octave]

(Ն. Ք. 27 — 14 Յ. Ք.)

Անտոնիոսէ ետք՝ Հռովմի եռապետութեան միւս անդամը՝ Օկտաւիանոս, որ Օգոստոս մակդիրն առաւ, Աղեքսանդրիա բանտարկուած արքունի հայ գերիները Հռովմ փոխադրեց, և Հայաստանի մէջ խռովութիւններ յարուցանել տալով՝ Հայոց և միանգամայն Ատրպատական Մարաստանի թագաւոր Արտաշէս Բ.ը (30–20) սպանել տուաւ, և՝ վարպետ միջոցներով՝ Հայաստանն իր գերիշխանութեան տակ առաւ։

Օգոստոս՝ իր Անկիւրիայի (= Անքարա) արձանագրութեան մէջ տարբեր կերպով կը խօսի այս գրաւման մասին, յոխորտալով որ՝ Արտաշէսի սպանումէն ետք՝ կրնար Հայաստանը հռովմէական նահանգի վերածել, բայց լաւագոյն համարած է՝ անոր (Արտաշէսի) Տիգրան (Գ) եղբօրը տալ զայն։ Սակայն, Հայաստանի այս քաղաք-

կուած գրամամ յիշատակին՝ Աւգոստոսի կողմէ տպուած դրամներէն ոմանց վրայ կը կարդանք.

ARMENIA CAPTA, այսինքն՝ «Հայաստան առնուած». իսկ ոմանց վրայ ալ կը կարդանք՝

ARMENIA RECEPTA, այսինքն՝ «Հայաստան վերստին առնուած» (Ձեւ 25)։

---

## ՏԻԲԵՐԻՈՍ [Tibère]

(14-37 Յ. Ք.)

Կղաւդիոս Ներոն Տիբերիոս ծնած է Ն. Ք. 42 Թուին։ Տակաւին «կայսր» չհռչակուած՝ Ն. Ք. 20 Թուականին՝ հռովմէական բանակին գլուխն անցնելով Հայաստան արշաւեց, և Հայոց Տիգրան Գ. Թագաւորն իր գահին վրայ հաստատեց, պարսկական ոտնձգութեանց դէմ պատուար մը կանգնելով։

Իսկ Քրիստոսի 16–17 տարիներուն՝ Պարթեւաստանի գահընկէց ՎՈՆՈՆ Թագաւորը – կերպով մը – Հայաստանի Թագը ձեռք անցուցած էր. բայց Պարթեւաց Արտաւան Գ. Թագաւորը հռովմէական պետութեան դիմելով՝ գահէն վար առնել տուաւ զայն։ Ասոր վրայ Տիբերիոս կայսրն իր ամենէն մեծ զօրավարը՝ Գերմանիկոսն Հայաստան ղրկեց։

---




26. Արտաշիասի թագադրութիւնը.

## ԳԵՐՄԱՆԻԿՈՍ [Germanicus]

(17-19 Յ. Ք.)

Գերմանիկոս կայսերական գահ չբարձրացաւ, բայց Քրիստոսի 18 թուին՝ երկրորդ անգամ ըլլալով հիւպատի պաշտօնին կոչուելով՝ Տիբերիոս կայսրին կողմէ Հայաստան ղրկուեցաւ, ամենալայն իրաւունքներով։

Գերմանիկոս երբ Հայաստան մտաւ, տեսաւ որ ժողովուրդը Պոնտոսի Պոլեմոն Ա. թագաւորին որդին՝ Զենոնը Հայոց թագաւոր կ'ուզէ. ուստի՝ անմիջապէս Հայոց փափագն իրագործեց, և երկիրը խաղաղեցուց։

Թագադրութեան արարողութիւնն անձամբ կատարելու համար Արտաշատ գնաց, և Զենոնն անուանեց՝ ԱՐՏԱՇԷՍ կամ ԱՐՏԱՇԻԱՍ (Artaxias), որ 18 թուականէն մինչեւ 34 իշխեց։

Գերմանիկոս իր այս գործը յաւերժացնելու նպատակով՝ 18 թուականին՝ Հայաստանի մէջ մասնաւոր յուշադրամ մը տպեց, որուն Ա. կողմը իր կիսանդրին դրաւ, շուրջը գրելով.

GERMANICVS CAESAR TI. AVG. F.

այսինքն՝ «Գերմանիկոս, Կեսար[1], Տիբերիոսի Աւգոստոսի որդի»։

Բ կողմը՝ Արտաշէս կանգնած, որ Գերմանիկոսի ձեռքով Հայոց թագաւոր կը պսակուի. իսկ երկուքին քովը՝ վերէն վար գրուած են՝ ARTAXIAS ու GERMANICVS անունները (Զեւ 26)։

---

1. Այս տիտղոսը կը տրուէր նաեւ հռոմէական պետութեան գահաժառանգներուն։

## Ն Ե Ր Ո Ն [Néron]

(54-68)

Ներոն Կղաւդիոս Դրուսոս՝ Կղաւդիոսի որդեգիրն էր, որ երբ «կայսր» հռչակուեցաւ՝ «Տիբերիոս Կղաւդիոս Ներոն Դրուսոս» անունն առաւ, որուն վրայ աւելցուց նաեւ՝ «Գերմանիկոս» (այսինքն՝ յաղթող Գերմանացւոց) տիտղոսը, զոր Ծերակոյտը մշտնջենաւորեց Ներոնի սերունդին համար։

Ներոնի ժամանակ՝ Պարթեւները Հայոց գահին վրայ բազմեցուցած էին պարթեւազգի ՏՐԴԱՏ Ա․ը (53), որուն լուրը Հռովմ հասնելուն՝ Ներոնը զայրացուց․ ուստի Ներոն իր Դոմիտիոս Կորբուղոն զօրավարը Տրդատի դէմ ղրկեց, որպէս զի Հայաստանէն վանտէ զայն։ Կորբուղոն՝ քանի մը յարձակումէ ետք Հայոց մայրաքաղաք Արտաշատը պաշարեց և գրաւեց 59ին։ Տրդատ փախած ապաստանած էր իր եղբօր՝ Ատրպատականի Բակուր թագաւորին քով։

Այս յաղթութեան յիշատակին տպուած ARMENIACVS վերտառութեամբ արծաթ չքաղրամները ծանօթ են, ուրնց

Ա. երեսին վրայ կայ՝ Ներոնի աջ դարձած դափնեպսակ գլուխը․ իսկ շուրջը՝

NERO CLAVD. DIVI CLAVD. F. CAESAR AVG. GERMANI

այսինքն՝ «Ներոն Կղաւդիոս, Կեսար, Աւգոստոս, որդի աստուածային Կղաւդիոսի, (յաղթողի) Գերմանացւոց»։

Բ երեսին վրայ՝ աջ կողմ քալող Ցաղթանակ մը, ձեռքը պսակ մը ու արմաւենի բռնած, և՝

ARMENIACVS, այն է՝ «Հայաստանի» (յաղթող)։

Կորբուղոն՝ 60 թուին՝ Տիգրանակերտն ալ գրաւեց․ իսկ Ներոն՝ Հայաստանի վրայ թագաւոր նշանակեց Կապպադովկիոյ Արքեղայոս թագաւորին և Հրէից Հերովդէս Մեծ թագաւորին թոռնորդին, ՏԻԳՐԱՆ Զ․ը (60-62)։

---

## ՎԵՍՊԱՍԻԱՆՈՍ [Vespasien]

(69-79)

*Փլաւիոս Վեսպասիանոս ծնած է Քրիստոսի* 9 *թուականին. իսկ կայսր հռչակուած է* 69*ին։*

*Ասիոյ մէջ Հռոմի* 825 *կամ* 826 *(Քրիստոսի* 72 *կամ* 73*) թուին տպուած ասոր մէկ ոսկեդրամին վրայ տեսած եմ.*

*Ա կողմը՝ Վեսպասիանոսի աջ դարձած պսակաւոր կիսանդրին, և սա խորագիրը.*

IMP. VESPASIAN. AVG. TR. P. P. P. COS. IIII.

*այսինքն՝ «Ինքնակալն Վեսպասիանոս, Օգոստոս, Տրիբունեան իշխանութեան տէր, Հայր Հայրենեաց, Դ անգամ Հիւպատ»։*

*Բ կողմը՝ Վեսպասիանոս զինուորական համազգեստով կանգնած է, իսկ ծունկի վրայ եկած Հայաստանը՝ որուն գլուխը սովորական աշտարակիկներով զարդարուած է, վեր կը բարձրացնէ։ Խորագիրն է՝* PAX AVGVST. *այսինքն՝ «Օգոստոսեան խաղաղութիւն»։*

---




27. *Տրայիանոսի չեքադրամը.*

## ՏՐԱՅԻԱՆՈՍ [Trajan]

(98–118)

*Ժամանակ մը ետք՝ Պարթեւաց Խոսրով թագաւորը* (108–130) *նորէն Հայաստանի վրայ ոտնձգութիւններ ընել սկսաւ, որուն դէմ՝ Հռովմայեցիք Պարթեւաց հետ պատերազմի բռնուեցան* (114), *և անոնց ձեռքով Արտաշատի գահին վրայ դրուած* ՊԱՐԹԱՄԱՍԻՐԻՍ

*Թագաւորը վար առին, և վերջ տուին Հայոց Թագաւորութեան, տեղը դնելով Հռովմայեցի կուսակալ մը։*

*Այս յաղթանակին ի յիշատակ Տրայիանոս կայսրը՝* 116 *թուականին՝ չքաղրամ մը տպեց, որուն*

*Ա կողմին վրայ քանդակուած է Տրայիանոսի աջ դարձած կիսանդրին, շուրջն ունենալով հետեւեալ գրութիւնը․*

IMP. CAES. NER. TRAIANO OPTIMO AVG. GER.
DAC. PARTHICO P. M. TR. COS. VI. P. P.

*այսինքն՝ «Ի պատիւ Ներոնի Տրայիանոսի, Ինքնակալի, Կեսարի, Ամենաբարւոյ, Օգոստափառի,* (*յաղթողի*) *Գերմանաց, Դակաց և Պարթեւաց, Բարձրագոյն Քրմապետի, Տրիբունի, Զ անգամ Հիւպատի, Հօր Հայրենեաց»։*

*Բ կողմը՝ խմբանկար մը կայ, որ կը ներկայացնէ Հայաստանը՝ գետինը պառկած, երկու կողմերը՝ Տիգրիսն ու Եփրատը ներկայացնող այլաբանական արձաններ, եղէգ ի ձեռին, նոյնպէս պառկած վիճակի մէջ։ Ասոնց մէջտեղը՝ Տրայիանոս, ոտքի կանգնած, կոխած է Հայաստանի կուրծքը, նիզակ ի ձեռին․ շուրջը գրուած է․*

ARMENIA ET MESOPOTAMIA IN POTESTATEM
P. R. REDACTAE — S. C.

*այսինքն՝ «Հայաստան ու Միջագետք՝ հռովմէական ժողովրդին իշխանութեան հպատակեցուցուած։ — Ծերակոյտի վճռով»։* (*Զեւ* 27)*։*




28. *Այլ չքաղրամ Տրայիանոսի.*




29. Անտոնինոս Պիոսի չքաղրամը.

## ԱՆՏՈՆԻՆՈՍ ՊԻՈՍ [Antonin le Pieux]

(138-161)

Երբոր Տրայիանոս մեռաւ, Հայաստանի վիճակն ալ կարեւոր փոփոխութիւն կրեց:

Հռովմի Ադրիանոս կայսրը (117-138) Հայաստանի թագաւորութիւնը յանձնեց պարթեւ իշխանի մը, ՎԱՂԱՐՇ Ա. (117-140). իսկ Անտոնինոս Պիոս կայսրը Հայոց վրայ թագաւոր դրաւ Հռովմ կրթուած և Հռովմի Ծերակոյտի անդամ մէկը, ՍՈՅԵՄՈՍ (140-162), որ նոյնպէս ծագումով պարթեւ իշխան մըն էր: Ուստի, կայսրն՝ ասոր ի յիշատակ՝ 140 թուականին չքաղրամ մը տպեց, որուն

Ա. կողմը կայ՝ Անտոնինոսի աջ դարձած դափնեպսակ գլուխը, շուրջը հետեւեալ գրութեամբ.

ANTONINVS AVG. PIVS P. P. TR. P. COS. III.

այսինքն՝ «Անտոնինոս Աւգոստոս Պիոս, Հայր Հայրենեաց, Տրիբունեան իշխանութեան տէր, Գ անգամ Հիւպատ»:

Բ կողմը՝ REX ARMENIIS DATVS – S. C.

այսինքն՝ «Թագաւոր Հայոց տուեալ: — Ծերակոյտի վճռով»: Հոս՝ Անտոնինոս կանգնած է դէպ ի ձախ, և իր աջ ձեռքով Հայոց թագաւորին գլուխը թագ կը դնէ. իսկ ձախ ձեռքը բռնած է պատատ մը, որ հայ թագաւորին անուանման հրովարտակն ըլլալու է (Զեւ 29):




30. Ղուկիոս Վերոսի մեծ յուշադրամը.

## ՂՈՒԿԻՈՍ ՎԵՐՈՍ [Lucius Verus]

(138-169)

Հակառակ հռովմէական բացայայտ պաշտպանութեան, հայկական գահին վրայ Սոյեմոսի բարձրանալը՝ Պարթեւաց պետութեան կողմէ հակառակութեան բաղխեցաւ:

Արդ, Պարթեւաստանի Պերոզ կամ Վոլագասէս Գ. թագաւորը (148-190)՝ Հայաստանն իւրացնելու համար՝ Սոյեմոսի վրայ յարձակեցաւ, և զայն փախուց հեռացուց Հայաստանէն, որուն գահը նուիրեց իր Բակուր եղբօր:

Երբոր Հռովմայեցիք այս չսպասուած լուրն առին, փութացին զայն պաշարեցին Արտաշատը, և գրաւեցին զայն. իսկ Բակուրը վար առին, և կրկին գահ բարձրացուցին Սոյեմոսը (163-178): Ասոր յիշատակին՝ Մարկոս Աւրեղիոսի գահակից կայսրը, Ղուկիոս Վերոս, երկու տեսակ յուշադրամ տպել տուաւ. — մեծ և փոքր.

Մեծին Ա. կողմին վրայ կայ՝ Ղուկիոս Վերոսի պսակաւոր կիսանդրին, աջ դարձած, հետեւեալ խորագրով.

L. AVREL. VERVS AVG. ARMENIACVS

այսինքն՝ «Ղուկիոս Աւրեղիոս Վերոս, Աւգոստոս. (յաղթող) Հայոց»:

Բ կողմը՝ REX. ARMEN. DAT.

TR. P. IIII. IMP. II. COS. II. — S. C.

այսինքն՝ «Թագաւոր Հայոց տուեալ: Տրիբունեան իշխանութեան Դ. կայսերական՝ Բ. Հիւպատութեան՝ Բ. — Ծերակոյտի վճռով»: (Զեւ 30):

Այս կողմը Ղ. Վերոս նստած է դէպ ի ձախ՝ սարաւանդակի մը

վրայ, որուն պատուանդանին վրայ Սոյեմոս կանգնած՝ իր իսկ ձեռ-քով իր գլուխը թագ կը դնէ։ Տպուած է 164 թուին։




31. Ղուկիոս Վերոսի փոքր շքադրամը.

Փոքրին Ա. կողմին վրայ կայ՝ մի և նոյն կիսանդրին, բայց անպսակ, և հետեւեալ խորագիրը.

L. VERVS AVG. ARMENIACVS.

այսինքն՝ «Ղուկիոս Վերոս, Աւգոստոս. (յաղթող) Հայաստանի»։
Բ կողմը՝ ARMEN. այն է՝ «Հայաստան»։ Իսկ բոլորտիքը՝

TR. P. III. IMP. II. COS. II.

այն է՝ «Տրիբունեան իշխանութեան՝ Գ. կայսերական՝ Բ. Հիւպա-տութեան՝ Բ.»։

Այստեղ՝ Հայաստան տխուր կերպով նստած է գետինը, դէպ ի ձախ, աջ ձեռքը ծնօտին վրայ, իսկ ձախը՝ կռթնած է աղեղի մը։ Տպուած է 163 թուին (Ձեւ 31)։

---

## ՄԱՐԿՈՍ ԱՒՐԵՂԻՈՍ [Marc Aurèle]

(161–180)

Ղուկիոս Վերոսի գահակից կայսրը՝ Մարկոս Աւրեղիոս Անտոնի-նոս, մի և նոյն դէպքն ու Պարթեւաց վրայ տարած յաղթանակը յաւերժացնելու համար՝ ինքն ալ յուշադրամ մը տպեց, նախապէս սովորական դարձած՝ ARMENIACVS տիտղոսին կցելով նաեւ Մարաս-տանի, Պարթեւաստանի և «Մեծագոյն» (Maximus) տիտղոսները։

Այս դրամին Ա. կողմը դրաւ իր կիսանդրին, աջ դարձած, շուր-ջանակի հետեւեալ խորագրով.

M. ANTONINVS AVG. ARM. PARTH. MAX.

այսինքն՝ «Մարկոս Անտոնինոս, Աւգոստոս. (յաղթող) Հայաստանի, Պարթեւաստանի, (և՛) Մեծագոյն»։

Բ կողմը՝ ձախ դարձած Յաղթանակ մը, որուն շուրջը գրուած է.

TR. POT. XXI. IMP. IIII. COS. III. — S. C.

այսինքն՝ «Տրիբունեան իշխանութեան՝ ԻԱ. կայսերական՝ Դ. Հիւպատութեան՝ Գ.։ — Ծերակոյտի վճռով»։

Այս թուականները կը համապատասխանեն Քրիստոսի 167 թուին։

Ցուշադրամէս անագապղնձէ Զորեքդրամեան օրինակ մը տեսած եմ ատամնաբոյժ Տ. Արամ Բաչաճեանի հաւաքածոյին մէջ։ Կշիռն է 29 գրամ, իսկ տրծ. 30 հզրրդմետր։

Մարկոս Աւրելիոսի կիսադրամի մը վրայ ալ, — ուր նոյնպէս իր աջ դարձած կիսանդրին կայ, — կը կարդանք.

Ա կողմ՝ M. ANTONINVS AVG ARMEN PM

այսինքն՝ «Մարկոս Անտոնինոս (Աւրելիոս), Աւգոստոս, (յաղթող) Հայոց, Մեծ Քրմապետ»։

Բ կողմ՝ TR P XVIII. IMP. II COS III — ARMEN

այսինքն՝ «Տրիբունեան իշխանութեան՝ ԺԸ. կայսերական՝ Բ. Հիւպատութեան՝ Գ.։ — Հայաստանի»։ Այս կողմի պատկերը կը ներկայացնէ Հայաստանը, գետինը նստած և ձախ դարձած, գլուխն աջ ձեռքին կռթնցուցած՝ տխուր դէմքով կը խորհի։

---

## ԿՈՄՄՈԴՈՍ [Commode]

(180-192)

Կ'երեւայ թէ Կոմմոդոս կայսրը, Մարկոս Աւրելիոսի որդին, Արտաշատը նորոգել տուած և վերստին ոստանի վերածած է զայն. վասն զի 183 թուին՝

ΑΡΤΑΞΙCΑΤΩΝ ΜΗΤΡΟΠΟΛЄΩC

այսինքն՝ «Արտաշատայ մայրաքաղաքի» անունով արոյրէ դրամ մը տպած է, որուն

Ա կողմը՝ Բախտի (le Tyché կամ Fortuna) աջ դարձած գլուխը կայ, վրան աշտարակներով։

Բ կողմը՝ դէպ ի ձախ դարձած Յաղթանակ մը, որ աջ ձեռքով

պսակ մը կ՚երկարէ․ իսկ ձախով՝ արմաւենիի ճիւղ մը կը բռնէ։ Շուրջանակի գրուած է վերի խորագիրը։

Տարածութիւնն է 26 հզըրդմետր։

Այս դրամին պատկերը տե՛ս Տախտակ Բ, Թիւ 7։

---

## ՀԱՆՆԻԲԱԼԻԱՆՈՍ [Hannibalien]

(335)

Փլաւիոս Հաննիբալիանոս՝ փեսայացած էր Կոստանդիանոս Մեծի, որուն երեք աղջիկը՝ Կոստանդինան առած էր։ Այս առթիւ Կոստանդիանոս՝ Հաննիբալիանոսի շնորհած է «Պոնտոսի, Կապպադովկիոյ և Հայաստանի Թագաւոր»ի տիտղոսը․ բայց Հայաստանի անունով դրամ տպած չէ, այլ զուտ հռովմէական դրամներ։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ․ — **Henry Cohen**, Description générale des monnaies de la République Romaine. Paris, 1857. — Նոյնը, Description historique des monnaies frappées sous l'Empire Romain. Paris, 1880-1892. — **E. Babelon**, Artaxisata. («Académie des Inscriptions et Belles-Lettres» de Paris. Comptes Rendus des séances de l'année 1911).



32. Տրդատ Թագաւոր Հայոց և Պարթևաց (Musée du Louvre).

## Դ.

# ՊԱՐՍԿԱԿԱՆ ՇՐՋԱՆ

[Domination persane]

(273-627)

Հայաստան մերթ Հռովմայեցւոց և մերթ Պարսից ձեռք անցած միջոցներուն՝ շատ հաւանական է, որ Պարսիկներն ալ՝ Հռովմայեցւոց օրինակին հետեւելով՝ դրամ տպած ըլլան Հայաստանի մէջ: Սակայն՝ այս մասին որոշ ծանօթութիւն մը չունինք, այլ հաւանական ենթադրութենէ անդին չենք կրնար անցնիլ, դժբախտաբար:

Լանգլուա (*Numismatique de l'Arménie au Moyen âge*, երես 109) կ'ըսէ, թէ Մովսէս Կաղանկայտուացիի Աղուանից Պատմութեան համաձայն՝ Սասանեան Պարսից «դիդրաքմայ»ն շրջաբերութեան մէջ էր «Հայաստանի մէջ», և թէ՝ այս դրամը կը գանձուէր «ըստ սովորութեան աշխարհագրին Պարսից թագաւորութեանն»: Բայց Կաղանկայտուացի չ'ըսեր թէ այս գլխահարկը դրուած էր նաեւ Հայոց վրայ, այլ հիւսիսայնոց կողմէ դրուած էր «Պարսից վրայ», Հայոց վրայ ալ դնելու մտադրութեամբ[1]:

Ինչպէս կ'ուզէ Թող ըլլայ, «դիդրաքմա»ն է յն. δίδραχμον, փր. didrachme, որ մեր սովորական արծաթ երկդրամեանին կը համապատասխանէ, և որուն արժէքն էր՝ 1 փր. 96, ոսկեդրամով:

1. Մ. ԿԱՂԱՆԿԱՑՏՈՒԱՑԻ, Պատմութիւն Աղուանից, Գիրք Բ, գլ. ԺԶ:

## ՎԱՐԱՀՐԱՆ կամ ՎՌԱՄ Ա. [Varahran]

(273–276)

Գիտենք, որ Սասանեան Պարսից Թագաւորներէն Վարահրան կամ Վռամ Ա.ի ժամանակներէն մնացած մեծ ոսկեդրամ մը գտնուած է Հայաստանի մէջ, հռովմէական դրամներու հետ խառնուած։

Ա. կողմ՝ Վարահրանի աջ դարձած կիսանդրին։

Բ կողմ՝ բոցավառ կրակարան մը, սասանեան տառերով գրուած հետեւեալ բառերով.

Նուրա զի Վարահրան, այսինքն՝ «Վարահրանի կրակը»։

Կշիռն է՝ 7 գր. 16. իսկ տրծ. 21 հզրրդմետր։

— Տարբ. 20էն 22 հզրրդմետր և կամ 15 հզրրդմետր տարածութեամբ։

Վարահրանի դրամներն ընդհանրապէս ոսկի են, որոնց վրայի գրութիւնն է, սասանեան տառերով.

Մազդախն բագի Վարահրան մալքան մալքա
Աիրան վ Անիրան մինոչետրի մեն Եզտան.

այսինքն՝ «Որմզդի երկրպագու՝ աստուածային Վարահրան, Արքայ Արքայից Իրանի և Անիրանի, երկնային ընծիւղն աստուածներու»։

Այս 7 գր. 16 կշռող շատ հետաքրքրական ոսկեդրամը կը պատկանէր Ժակ դը Մորգանի, որուն հետ անոր պատմական և դրամագիտական բոլոր պարագաները քննելով՝ սա եզրակացութեան յանգեցանք, որ այս դրամը տպուած է Հայաստանի մէջ։

---

## ՇԱՊՈՒՀ [Sapor]

(416–420)

416 Թուականին՝ Հայաստանի գահին վրայ բազմած կը գտնենք արքայազն Պարսիկ մը, Յազկերտ Ա. Թագաւորի որդին՝ Շապուհ, զոր Հայոց Թագաւոր անուանելով Հայաստան ղրկած է իր հայրը. սակայն երբ Յազկերտ մեռաւ, Շապուհ՝ Հայոց գահը ձգելով, իսկոյն պատարի եւեւէն՝ Պարսկաստան փազեց, ինքզինք Պարսից Թագաւոր

հոչակելու համար, բայց իր հակառակորդ կուսակցութենէն սպաննուեցաւ հոն (420)։

Արդ, Շապուհ՝ Պարսից թագաւոր պսակուած չէր երբեք. հետեւաբար՝ իր անունով գտնուած բոլոր դրամները, — հակառակ որ վրան Հայաստանի անունը չկայ, — չենք կրնար Պարսկաստանի վերագրել, այլ բացարձակապէս տալու է Հայաստանի։

Այս դրամներէն արծաթեայ նմոյշ մը կը գտնուի Ֆըրդունջի Պարքի «Sasanian Coins» գրքին մէջ (Տախտակ ԺԱ, թիւ 18)։

Տարածութիւնն է 14 հզրրդմետր։

Ա կողմ՝ Շապուհի աջ դարձած կիսանդրին։

Խորագիրն է. — սասանեան տառերով գրուած՝ ՇԱՀՊՈՒ(ՀՐԻ), որ մեզ ծանօթ «Շապուհ» անունն է։

Բ կողմ՝ կրակարան, զէն ի ձեռին երկու քուրմերու միջեւ. առանց գրութեան։

*
* *

Պարսից Խոսրով Բ. Պարուէզ թագաւորն ալ (590–627) իր բոլոր արշաւանքներու միջոցին բազմաթիւ ու բազմատեսակ դրամներ տպած է, որպէս զի կարենայ վճարել իր բանակին։ Ան՝ գացած է մինչեւ Ասորիք և Պաղեստին. գրաւած ու կողոպտած է Երուսաղէմը, և Պարսկաստան գերի տարած է Ս. Խաչը, ինչպէս կը նկարագրէ ժամանակակից պատմիչը՝ Սեբէոս[1]։

Խոսրով՝ Հայաստանի տէրն ըլլալով, հոն ալ տպած է զանազան դրամներ, բայց թերեւս առանց Հայաստանի յիշատակութեան։ «Թերեւս» բառն ստորագծեցի, ցոյց տալու համար իմ կասկածս, հակառակ տարբեր մեկնութեան ժակ դը Մորգանի, զոր չկրցայ տարհամոզել այս մասին։

Այո՛, պարսկական դրամներէ ոմանց վրայ սասանեան տառերով՝ «ԱՐՄ» գրուած է, իսկ ոմանց վրայ ալ՝ «ԱՐՄՆ» համառօտագրութիւնը կայ, զոր Դոկտ. Ա. Դ. Մորդման «ԱՐՄԷՆԻա» կը կարդայ[2]. բայց Ժ. դը Մորգան չընդունիր այս ընթերցումը։ Ես՝ Մորդմանի կարծիքէն եմ, անոր համար որ՝ այս համառօտագրութիւնը տպուած է, ըստ սովորութեան, դրամին տպուած վայրը կամ փողերանոցին գտնուած երկիրը ցոյց տալու համար։

---

1. Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, գլ. ԻԴ, եր. 125–131։ Կ. Պոլիս, 1851։
2. Zeitschrift der Deut. Morg. Gesell. Թերթին մէջ, 1865, երես 403, թիւ 35։

## ՍԱՖԱՎԻՆԵՐՈՒ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Safavides]

(1502-1735)

Պարսկաստանի նոր շրջանին մէջ Սաֆավիներու Հարստութեան հիմնադիրը՝

ՇԱՀ–ԻՍՄԱՅԻԼ Ա․ (1502–1524) ոսկեդրամ մը տպած է Ամիդի մէջ։

Շահ–Իսմայիլ Ա․ի պետութեան ժամանակ՝ Վանի վրայ – միջոց մը – անկախաբար իշխեց Զիղի–Բէգ անունով քիւրդ ցեղապետ մը, որ իր անունով դրամ տպեց հոն։

Սաֆավիներու Հարստութենէն

ԱԲՈՒԼ ՄՕԶԱՖՖԷՐ ԹԱՀՄԱԶ Ա․ (1524–1576) Երեւանի մէջ արծաթ դրամ մը տպած է Հիջրի 957 (1550) թուին։

ՇԱՀ–ԻՍՄԱՅԻԼ Բ․ (1576–1577) Հիջրի 985ին (1577) արծաթադրամ մը տպած է Շամախիի մէջ։

ՄՕՀԱՄՄԷԴ ԽՕԴԱ–ԲԷՆԴԷ (1578–1587)․ Թուականները մաշած արծաթ դրամներ ձգած է Երեւանի, Նախիջեւանի, Գանձակի ու Շամախիի անուններով։

ՍԱՖԻ Ա․ (1629–1642) Հիջրի 1038 (1629) թուին արծաթ դրամ մը տպած է Երեւանի մէջ։

ʿԱԲԲԱՍ Բ․ (1642–1667) պղնձադրամ մը տպած է նոյնպէս Երեւանի մէջ, 1057ին (1647)․ իսկ 1070ին (1659), 1075ին (1664) և 1076ին (1665) արծաթադրամներ տպած է հոն։ 1052ին (1642) Գանձակի մէջ, 1069ին (1658) և 1076ին (1665) Շամախիի մէջ՝ արծաթներ։

ՍՕԼԷՅՄԱՆ Ա․ (1667-1694) Երեւանի մէջ պղինձ և արծաթ դրամներ տպած է 1084ին (1673), և ուրիշ արծաթներ՝ 1083ին (1672), 1103ին (1691), 1104ին (1692) և 1105ին (1693)․ ուրիշ արծաթ դրամներ տպած է Գանձակի մէջ 1086ին (1675), 1087ին (1676), 1103ին (1691) և 1105ին (1693)։ Անիկա Նախիջեւանի մէջ ալ արծաթ դրամներ տպած է 1096ին (1684), 1097ին (1685), 1098ին (1686) և 1101ին (1689)։ Ունի նաեւ Շամախիի մէջ 1080ին (1669) տպած արծաթ մը։

ՀՕՍԷՅԻՆ Ա․ (1694–1722) Գանձակի մէջ արծաթ դրամ մը տպած է 1110ին (1698), իսկ պղնձադրամներ՝ 1116ին (1704), 1123ին (1711), 1132ին (1719)։ Նոյնպէս արծաթ և պղինձ դրամներ

*տպած է Երեւանի մէջ՝* 1117*ին* (1705), 1120*ին* (1708), 1123*ին* (1711), 1124*ին* (1712), 1125*ին* (1713), 1126*ին* (1714), 1127*ին* (1714/5), 1128*ին* (1715), 1129*ին* (1716), 1130*ին* (1717), (1131*ին* (1718), 1132*ին* (1719), 1133*ին* (1720)․ *իսկ Նախիջեւանի մէջ՝* 1107*ին* (1695), 1130*ին* (1717), 1133*ին* (1720) *և* 1134*ին* (1721)։

ԹԱՀՄԱՍՊ Բ․ (1722–1731) *Երեւանի մէջ պղնձադրամ մը տպած է* 1136*ին* (1723), *իսկ արծաթ մը՝* 1135*ին* (1722)․ *ունի նաեւ արծաթ և ոսկի դրամներ* 1135 (1722) *թուականով, տպուած Գանձակի մէջ, ինչպէս նաեւ նոյն թուականով արծաթ մը՝ Նախիջեւանի մէջ։*

---

## ԱՖՇԱՐՆԵՐՈՒ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Afchars]

(1736-1796)

ՆԱԴԸՐ–ՇԱՀ (1736–1747) *Գանձակի մէջ պղինձ և արծաթ դրամներ տպած է* 1149*ին* (1736), 1150*ին* (1737), 1151*ին* (1738), 1154*ին* (1741), 1155*ին* (1742), 1156*ին* (1743) *և* 1158*ին* (1745)․ *իսկ Երեւանի մէջ պղինձ դրամ մը տպած է* 1160*ին* (1747)․ *Նախիջեւանի մէջ ալ արծաթադրամ մը՝* 1148*ին* (1735)։

ՍՈՒԼՏԱՆ ԻԲՐԱՀԻՄ (1748–1749) *Գանձակի մէջ արծաթներ տպած է* 1162*ին* (1748)։

ՇԱՀ ՌՈԽ (1748–1796) *Գանձակի մէջ արծաթ դրամներ տպած է* 1162*ին* (1748), 1163*ին* (1749), 1164*ին* (1750), 1166*ին* (1752) *և* 1167*ին* (1753)։

ԳԱՆՁԱԿԻ ԱՆԿԱԽ ԽԱՆԸ *արծաթ դրամներ տպած է հոն* 1176*ին* (1762), 1177*ին* (1763), 1178*ին* (1764), 1187*ին* (1773) *և* 1188*ին* (1774)։

---

## ԶԵՆԴԵԱՆՆԵՐ [Les Zendides]

ՔԷՐԻՄ ԽԱՆԸ (1750–1779) կողմէ Շամախիի, Գանձակի և Նախիջեւանի մէջ տպուած արծաթ ու պղինձ դրամներուն թուականներն են՝ 1174 (1760), 1175 (1761), 1176 (1762), 1177 (1763), 1178 (1764), 1179 (1765), 1181 (1767), 1182 (1768), 1183 (1769), 1184 (1770), 1189 (1775), 1190 (1776), 1191 (1777) և 1192 (1778). իսկ Խոյի մէջ 1189ին (1775), 1190ին (1776), 1191ին (1777) և 1192ին (1778) ոսկիներ ու պղինձ մը տպուած են։ Երեւանի մէջ ալ արծաթադրամ մը տպած է, անթուական։

ՍԱԴԸՂ ԽԱՆ (1779–1782) Խոյի մէջ արծաթ դրամ մը տպած է 1195ին (1780)։

---

## ԿԱՋԱՐՆԵՐՈՒ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Cadjars]

(1750–1925)

ԱՂԱ ՄՕՀԱՄՄԷԴ ԽԱՆ (1779–1797) Խոյի մէջ ոսկի դրամներ տպած է 1206ին (1791), 1207ին (1792) և 1208ին (1793). իսկ արծաթ դրամներ տպած է 1210ին (1795) և 1211ին (1796)։ Գանձակի մէջ ալ արծաթ դրամներ տպած է 1210ին (1795) և 1212ին (1797)։

ՖԱԹՀ–՚ԱԼԻ ՇԱՀ (1797–1834) Գանձակի մէջ արծաթ և պղինձ դրամներ տպած է 1214ին (1799) և 1215ին (1800). ոսկիներ տպած է 1217ին (1802), 1218ին (1803), 1219ին (1804), 1233ին (1817) և 1235ին (1819). Երեւանի մէջ տպած է արծաթներ՝ 1216ին (1801), 1217ին (1802) 1218ին (1803), 1219ին (1804), 1222ին (1807), 1223ին (1808), 1224ին (1809) և 1226ին (1811). Խոյի մէջ արծաթներ տպած է 1214ին (1799), 1215ին (1800), 1216ին (1801), 1217ին (1802), 1219ին (1804), 1220ին (1805), 1221ին (1806), 1222ին (1807), 1224ին (1809), 1226ին (1811), 1232ին (1816), 1236ին (1820), 1241ին (1825) և 1246ին (1830). Խոյի մէջ ոսկիներ ալ տպած է 1213ին (1798), 1216ին (1801), 1232ին (1816), 1233ին (1817), 1234ին (1818), 1235ին (1819), 1236ին

(1820), 1239ին (1823) և 1241ին (1825)։ Մարաղայի մէջ արծաթադրամ տպած է 1215ին (1800) և 1216ին (1801). Ուրմիոյ մէջ՝ 1220ին (1805), 1222ին (1807) և 1223 (1808)։

ՆԱՍՐ ԷԴ-ԴԻՆ (1848–1896) Խոյի մէջ 1266ին (1849) արծաթ դրամ մը տպած է։

---

Կան նաեւ զանազան անկախ և կիսանկախ խաներու կողմէ տպուած շատ մը դրամներ, որոնցմէ մէկ մասը կը կրէ թէ՛ խանին անունն ու տպուած վայրը, իսկ ոմանց վրայ ալ տպուած է քաղաքին անունը միայն։

Ասոնցմէ կը յիշեմ հոս զանոնք որոնք մատչելի եղած են ինձ։

## ԵՐԵՒԱՆ

Երեւանի մէջ տպուած անանուն պղնձադրամներ, որոնց թուականներն են. – Հիջրի 1004 (1595), 1052 (1642), 1057 (1647), 1084 (1673), 1117 (1705), 1120 (1708), 1122 (1710), 1127 (1714/5), 1128 (1715), 1130 (1717), 1132 (1719) 1133 (1720), 1136 (1723), 1160 (1747), 1176? (1762), 1180 (1766), 1187 (1773), 1216 (1801), 1232 (1816), 1236 (1820) և 1240 (1824)։

## ԳԱՆՁԱԿ

Գանձակի մէջ տպուած անանուն պղնձադրամներու թուականներն են. – Հիջրի 1106 (1694), 1111 (1699), 1116 (1704), 1123 (1711), 1132 (1719), 1141 (1728), 1149 (1735), 1158? (1745), 1181 (1767), 1207 (1792), 1210 (1795) և 1215 (1800)։

## ԳԱՆՁԱԿԻ ԽԱՆԵՐՈՒ ԱՆՈՒԱՆԱԿԻՐ ԴՐԱՄՆԵՐ

Գանձակի խաներու անուններն ու միանգամայն թուականները կրող դրամներն հետեւեալներն են.

ՇԱՀ ՎԷՐԴԻ (1747–1760). Գանձակի մէջ երեք տեսակ արծաթադրամ տպած է՝ 1172ին (1758), 1173ին (1759) և 1174ին (1760)։

ՄՕՀԱՄՄԷԴ ՀԱՍԱՆ (1760-1780). *Գանձակի մէջ տպած արծաթադրամներն հետեւեալ թուականները կը կրեն. Հիջրի* 1175 (1761), 1176 (1762), 1177 (1763), 1180 (1766), 1181 (1767), 1187 (1773) և 1189 (1775)։

*
* *

*Ասոնցմէ զուրս կան նաեւ Գանձակի մէջ կոխուած երկու զանազան տիպի դրամներ. — Պարսկատիպ և Ցեղական տիպով, բոլորն ալ արծաթ։*

*Գանձակի Պարսկատիպ դրամներու թուականներն են.* 1182 (1768), 1183 (1769), 1184 (1770), 1185 (1771), 1186 (1772), 1187 (1773), 1188 (1774) և 1189 (1775)։

*Գանձակի Ցեղական տիպով դրամներու թուականներն են.* 1190 (1776), 1191 (1777) և 1195 (1780)։

*
* *

*Նոյնպէս կան նաեւ Վրաց Թագաւորներու և Ղարաբաղի խաներու տեղականներուն կողմէ Գանձակի մէջ տպուած Հիջրի* 1196*ի* (1781) *ոսկեդրամ ու* 1198*ի* (1783) *արծաթադրամ։ Իսկ անուններով՝*

ՀԱՃԻ ԲԷԳ (1783-1785) *անունը կրող արծաթադրամներն,* 1198 (1783) և 1199 (1784) *թուականներով։*

ՋԱՒԱԴ ԽԱՆ (1785-1805) *անունը կրող ոսկի և արծաթ դրամները,* 1203 (1788), 1204 (1789), 1206 (1791), 1207 (1792), 1208 (1793) և 1216 (1801) *թուականներով։*

*
* *

## ԽՈՅ

*Խոյի մէջ տպուած անանուն ոսկեդրամներէն կը յիշենք հետեւեալները.* 1191 (1777), 1241 (1825), 1242 (1826) և 1245 (1829)։

## ՆԱԽԻՋԵՒԱՆ

Հին Նախիջեւանի մէջ տպուած անանուն դրամներէն կը յիշենք հետեւեալները. 1182 (1768) և 1198 (1783)։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. — **Jacques des Morgan**, Numismatique de la Perse antique. Paris, 1934. — **Furdoonjee D. J. Paruck**, Sasanian Coins. Bombay, 1924. — **P. Casanova**, Inventaire sommaire de la Collection des Monnaies musulmanes de S. A. la Princesse Ismaïl. Paris, 1896. — **Reginald Stuart Poole**, The Coins of the Sháhs of Persia, Safavis, Afgháns, Efsháris, Zands, and Kájars. London, 1887.



33. «Յումրիճանի կողակից Սրբուհի»ի կնիքը, 1669 թուէն.
(Bibl. Nat.)



34. Մօրիկ կայսեր դրամը.

## Ե.

# ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՇՐՋԱՆ

[Période byzantine]

(582-1341)

Ամենուն ծանօթ է, որ Բիւզանդիոնի կամ Կոստանդնուպոլսոյ կայսերական գահին վրայ բազմած են, — առանց հաշուելու «կայսր» հռչակուած բայց չգահակալած հայ թագապահանջները, ինչպէս՝ Վահան (635), Վաղենտիոս Արշակունի (644), Ալեքսիս Մուշեղ (790), Թովմաս Ապստամբ (821–822), — քսանեւհինգ հայ կայսրեր, տասը հայ գահակից կայսրեր, ու տասը հայ կայսրուհիներ, որոնց ամբողջական ցանկը կը ներկայացնեմ հոս, իրենց ճիւղագրութեամբ միասին։



35. Մօրիկ, Կոստանդինիա և Թէոդոս
(Հերակլի կնիքով).

## Ա. – ԿԱՅՍՐԵՐ

1. *Մաւրիկիոս կամ Մօրիկ*, 582–602.
2. *Հերակլ Ա.*, 610–641.
3. *Հերակլ Բ. կամ Կոստանդին Գ.*, 641–642.
4. *Հերակլէոնաս*, 641–642.
5. *Կոստաս Բ.*, 642–668.
6. *Գրիգորիս*, 646–652.
7. *Մազիզիոս կամ Մժէժ Գնունի*, 668–668.
8. *Կոստանդին Դ. Պոգոնատ*, 668–685.
9. *Յուստինիանոս Բ.*, 685–695 *և* 705–711.
10. *Վարդան Ա. կամ Փիլիկ*, 711–713.
11. *Արտաւազդ*, 742–744?
12. *Վարդան Բ. Թուրք*, 803–803.
13. *Արշաւիր*, 808–808.
14. *Լեւոն Ե. Հայկազն (նախապէս՝ Ամբատ)*, 813–820.
15. *Միքայէլ Գ. (նախապէս՝ Վարդ)*, 842–867.
16. *Վասիլ Ա.*, 867–886.
17. *Լեւոն Զ. Իմաստասէր*, 886–912.
18. *Աղեքսանդր*, 912–913.
19. *Կոստանդին Է. Պերփեռուժէն*, 913–959.
20. *Ռոմանոս Ա. Լեկապենոս*, 919–944.
21. *Ռոմանոս Բ.*, 959–963.
22. *Յովհաննէս Ա. Զմշկիկ*, 969–976.
23. *Վասիլ Բ. Բուլղարասպան*, 976–1025.
24. *Կոստանդին Ը. կամ՝ աւելի ճիշտը՝ Թ.* 1025–1028.
25. *Անդրոնիկ Գ. Պալէոլոգոս*, 1328–1341։






36. Ոսկեդրամ Մօրիկի.





37. Լեւոն Իմաստասէրի և Կոստանդին Պերփեռուժէնի դրամը



38. Հերակլ, Կոստանդին ու Եւդոկիա.

### Բ. - ԳԱՀԱԿԻՑ ԿԱՅՍՐԵՐ

1. Թէոդորոս Գ., հօրը՝ Մօրիկի հետ, 590–602.
2. Դաւիթ Տիբերիոս, իր Հերակլ Բ. և Հերակլէոնաս եղբարց հետ, 641–642.
3. Տիբերիոս Գ., իր Կոստանդին Դ. եղբօր հետ, 668–682.
4. Հերակլ Գ., իր Կոստանդին Դ. եղբօր հետ, 668–682.
5. Տիբերիոս Ե., հօրը՝ Յուստինիանոս Բ.ի հետ, 705–711.
6. Նիկեփոր, հօրը՝ Արտաւազդի հետ, 742–742.
7. Սմբատ կամ Կոստանդին, հօրը՝ Լեւոն Ե.ի հետ, 813–820.
8. Վարդ, իր քեռորդւոյն՝ Միքայէլ Գ.ի հետ, 856 † 866.
9. Կոստանդին, հօրը՝ Վասիլ Ա.ի հետ, 868–879.
10. Քրիստափոր, հօրը՝ Ռոմանոս Ա.ի հետ, 920։



39. Ոսկեդրամ Յուստինիանոս Բ.ի

### Գ. - ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐ

1. Մարինա, այրը՝ Կոստանդին Զ., 788–795.
2. Թէոդոսիա, այրը՝ Լեւոն Ե. Հայկազն, 813-820.
3. Եւփրոսինէ, այրը՝ Միքայէլ Բ., 823–830.
4. Թէոդորա Բ., այրը՝ Թէոփիլոս, 830–867. յետոյ՝ միահեծան կայսրուհի, 842–857.
5. Մարիա, այրը՝ Վասիլ Ա., 867?
6. Հեղինէ, այրը՝ Կոստանդին Է., 919–961.
7. Թէոդորա Գ., այրը՝ Յովհաննէս Ա. Զմշկիկ, 971–976.
8. Զօէ Բ., ա. բ. գ. այրերը՝ Ռոմանոս Գ., Միքայէլ Դ., Կոստանդին Թ. կամ Ժ., 1028–1050.
9. Թէոդորա Դ., 1054–1056.
10. Ռիթա, քոյր Հեթում Բ.ի, այրը՝ Միքայէլ Թ. Պալէոլոգոս, 1294–1333։



40. Ոսկեդրամ Թէոդորա Դ.ի

Այսոնցմէ մեծ մասը նոյնութեամբ պահած է իր հայկական անունը, ինչպէս՝ զոր օրինակ՝ յունական արտասանութեամբ իսկ. — Մագիգիոս = «Մժէժ» Գնունի, Բարդանէս = «Վարդան» Փիլիկ, Արտաւազդոս = «Արտաւազդ», Արսաբիր = «Արշաւիր», Լեոն = «Լեւոն», Սումբատիոս = «Սմբատ», Բարդաս = «Վարդ», և Ցիմիսէս = «Չմշկիկ» Յովհաննէս։ Կան նաեւ Գուրգէններ, Թոռնիկոսներ, Թաթուլներ, Վախրամիներ, Սախակիոսներ, Մելիոսներ = «Մլեհ», եւն։



41. Ռոմանոսի, Կոստանդնի և Քրիստափորի ոսկեդրամը.

Հայ կայսրերէ և կայսրուհիներէ զատ՝ կային նաեւ հայ պատրիկներ։

Հռովմայեցւոց ժամանակ Պատրիկ տիտղոսը կը գործածուէր՝ «իշխան»ի և «փոխարքայ»ի իմաստով. իսկ բիւզանդական կայսրութեան ժամանակ՝ քաղաքական և զինուորական ամենէն բարձր պատիւն էր, որ տրուած էր հայազն Հերակլեաններու (հայր՝ Հերակլ Ա. կայսեր), Նիկետասներու (որդի՝ Գրիգորիս կայսեր), Նիկեփորներու (հայր՝ Վարդան Փիլիկ կայսեր), Արշաւիրներու (աներ՝ Լեւոն Ե. կայսեր), և այլոց։




42. Թէոդորա Բ.ի և Միքայէլ Գ.ի ոսկեդրամը.

Ինչպէս որ մեր պատմիչներն և արձանագրութիւնները կը յայտնեն, Հայաստան՝ Հռոմոց իշխանութեան տակ անցնելէ ետք՝ ականատես եղաւ Բիւզանդիոնէ նշանակուած հայ պատրիկներու, ճիշտ այնպէս ինչպէս նշանակուած էին Պարսից տիրապետութեան ժամանակ՝ հայ «մարզպան»ներ, և Արաբացւոց տիրապետութեան ժամանակ՝ հայ «ոստիկան»ներ։



43. Հերակլ Ա.ի ոսկեդրամը.

Դիմացի ճիւղագրութեան մէջ 1․ 2․ եւն թուանշաններով ցոյց կուտամ հայ կայսրերու յաջորդական կարգը․ իսկ Ա․ Բ․ով կը նշանակեմ գահակիցներու անունները․ և ա․ բ․ով՝ կայսրուհիներու դիրքը։

Ինչպէս տեսնուեցաւ մեր Ազգացուցակներէն, բիւզանդական պատմութեան անհագին շրջան մըն է, որ իր փառաւոր անցեալով կը ներկայանայ մեր առջեւ։

## Ա․ – ՀԵՐԱԿԼԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Héraclides]

Հերակլեան Հարստութիւնը հաստատուած է ձեռամբ Հերակլ Ա.ի, որուն հայրը՝ Հերակլէոս զօրավար, Նախապէս Արեւելքի բիւզանդական բանակին զինուորական հրամանատարներէն մին էր, 686ին․ իսկ յետոյ՝ Ափրիկէի ընդհանուր կառավարիչ եղաւ, փոխարքայութեան տիտղոսով։ — Հերակլի դրամները տես Ձեւ 43 և 45։



44. Վասիլ Ա.ի և Կոստանդնի ոսկեդրամը.

Հերակլէոսի (հետեւաբար և իր որդւոյն) Հայ ըլլալուն գլխաւոր վկան է՝ Է․րդ դարու բիւզանդական պատմիչն Թէոփիլակտոս Սիմոկատտէս, որ իր «Պատմութեան» մէջ, – ամբողջութեամբ Մօրիկ կայսեր գործունէութեան ու կեանքին նուիրուած, – չէ վարանած յայտարարելու Հերակլէոսի ազգութիւնը։ (Հտծ. Գ. ա. 1)։

Իսկ Մօրիկի ծագման մասին հետեւեալը կ՚ըսեն հայ պատմիչները․

«Թագաւորեաց Տիբեր, և յետ նորա Մուրիկ. զսա ասեն ի Հայոց յՕշական գեղջէ, և այլք թէ ի Տարօնոյ. աղքատութեամբ

աղագաւ երթեալ ի Կոստանդինուպօլիս, և անդ ի զինուածէ իմեքէ բարբերախտիկ եղեալ Թագաւորեաց այսպիսի պատճառաւ[1]»: — «Մօրիկ (Թագաւորեաց) ամս Ի. զսա ասեն լինել յերկրէն Հայոց յԱրագածոտն գաւառէն ի գեղջէ որ Օշականն կոչի, որ ի Կոստանդնուպօլիս խնամ ածէր գեղջն իւրում[2]»: (Մօրիկի դրամները տես Ձեւ 34, 35 և 36):



45. Հերակլ Ա.ի հիւպատութեան դրամը.

Այս հարստութեան անդամներէն մին՝ Գրիգորիս կամ Գրգարիշ, որ իր եղբօր՝ Հերակլէոսի մահուանէն ետք Բիւզանդական Ափրիկէի ընդհանուր կառավարիչ և փոխարքայ եղած էր (611–646), 646ին՝ ինքզինք «կայսր» հռչակեց Ափրիկէի մէջ:

Ասոր նման՝ Մժէժ Գնունի ալ Սիրակուսայի մէջ կայսր հռչակուեցաւ, 668ին[3]:




46. Վասիլ Ա.ի պղնձադրամը.

---

1. ԿԻՐԱԿՈՍ Վ.Ի ԳԱՆՁԱԿԵՑԻՈՅ Համառօտ Պատմութիւն, եր. 27:

2. ՍՏԵՓԱՆՈՍԻ ՏԱՐՕՆԵՑԻՈՅ ԱՍՈՂԿԱՆ Պատմութիւն Տիեզերական, Գիրք Բ, Գլուխ Ձ:

3. Ասոնց կարգին թերեւս կարելի ըլլար աւելցնել, թէ Ժ. դարուն Բուլղարիոյ արքայական գահը գրաւած են երեք Հայեր, — Շիշման Ա. (963–976), և իր երկու որդիքը՝ Դաւիթ († 976) ու Սամուէլ – Ստեփան (976-1014), որոնք Գերջանէն Մակեդոնիա փոխադրուած էին Հռոմոց կողմէ, ըստ Ստեփաննոս Ասողիկ պատմչի (Գիրք Գ, գլ. ԻԲ)։ Բայց չեմ յուսար, թէ ասոնք հատադրամ ձգած ըլլան:

## Բ. – ԱՐՇԱԿՈՒՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Arsacides]

Արշակունի Հարստութեան գալով, ասիկա հաստատուած է Վասիլ Ա. կայսեր կողմէ։

Վասիլ՝ Հայոց Արշակունի սերունդէն՝ Թրակիոյ Ադրիանուպոլիս (= Էդիրնէ) քաղաքը հաստատուած հայ ընտանիքի մը զաւակն էր։ — Վասիլի դրամները տես Ձեւ 44 և 46։

Բիւզանդական պատմիչները՝ Վասիլի ծննդավայրը նկատի առնելով՝ «Մակեդոնացի» կ'անուանեն զայն, որով իր հաստատած Հարստութիւնն ալ՝ «Մակեդոնական Հարստութիւն» կը կոչուի ընդհանրապէս, բայց լաւագոյն է կոչել՝ Արշակունի։

Կրումբախէրի «Բիւզանդական Մատենագրութեան Պատմութեան» մէջ[1] Հ. Գելցէր՝ Բիւզանդական Պատմութեան յատկացուցած իր խղճամիտ ուսումնասիրութեամբ՝ վեր հանելով Վասիլի զինուորական մեծ տաղանդն ու բարձր կարողութիւնը, – մինչեւ իսկ համեմատելով զայն հռովմայեցի նշանաւոր դիկտատոր՝ և Միհրդատի ու Տիգրանի հզօր բանակները հետապնդող՝ Սուլլայի, ինչպէս նաեւ Նապոլէոն Ա. կայսեր և ուրիշ համբաւաւոր աշխարհակալներու, – անոր հաստատած շրջանը՝ «Հայկական Հարստութիւն» (armenische Dynastie) կ'անուանէ (երես 974), որուն նուիրած է ընդարձակ գլուխ մը (եր. 974–998), թէեւ ոչ ամբողջական։ Այն տեղ (եր. 974) Գելցէր բացարձակ կերպով կը յայտարարէ, թէ «Նոր Հարստութեան հայկական ծագման մասին՝ կարելի չէ կասկածիլ[2]»։ Իսկ ծանօթութեան մը մէջ Գելցէր կ'աւելցնէ հետեւեալը. – «Համեմատէ Բուրի (Boor) պատշաճ դիտողութիւններն Եւթիմէոսի Վարուց հրատարակութեան մէջ, երես 130։ Եւ սակայն կը սխալի, երբ անոնց Հայ–Արշակունիներէն սերած ըլլալը՝ "շատ համեստ" կը նկատէ»։

*
* *

Ակադեմական Գ. Շլումբերգերի խօսքերով՝ «Բիւզանդական բանակի պատմութիւնը լեցուն է այս ազգին (Հայոց) հոյակապ պետերու

---

1. K. Krumbacher, Geschichte der byzantinischen Litteratur. München, 1890.
2. Իմ կողմէ ստորագծուած։ – Կ. Յ. Բ.

անուններով»։ Բաւական է միայն յիշել, թէ Լեւոն Դ․ կայսեր ժամանակ (775–780) երբ Բիւզանդացիք պատերազմի մէջ էին Արաբացւոց հետ, բանակը յանձնուած էր հինգ զօրավարներու, որոնց չորսը Հայ էին, – Արտաւազդ, Տաճատ, Վարազ–Տիրոց և Գրիգոր Մամիկոնեան։

Տարակոյս չկայ, թէ այս բոլոր կայսրերն ու կայսրուհիները, իրենց գահակիցներով ու զօրավարներով հանդերձ, Հայ–Հռոմներ էին, այսինքն՝ ազգութեամբ հայ էին, – անշուշտ նաեւ հայախօս, –




47․ Վարդան Փիլիկի ոսկեդրամը․

բայց դաւանանքով ուղղափառ էին, որոնց հետքերը տեսանք Փոքր Ասիոյ մէջ, Ակնայ շրջակաները, ինչպէս նաեւ Չմշկածագի ու Գէյվէյի քանի մը գիւղերը, որոնք ամբողջութեամբ հայախօս էին[1]։

Ուղղափառ դաւանանքի հետեւած են նաեւ Բիւզանդացւոց ծառայութեան մէջ գտնուող ուրիշ Հայեր, որոնցմէ մէկուն դաւանութեան ու լեզուին իրարմէ տարբեր ըլլալը կը յիշէ ԺԲ․ դարու պատմիչ մը, Guillaume de Tyr, որ Փիլարետի իբր յաջորդ Մելիտինէ (= Մալաթիա) նստող գաւառապետին՝ Գաբրիէլի՝ մասին խօսելով կ'ըսէ․ «Գաբրիէլ՝ Հայ ծնած էր․ նիստ ու կացքն ու լեզուն՝ հայկական էին, բայց հաւատքով ու դաւանութեամբ՝ յոյն էր[2]»։

Բիւզանդահայ կայսրերու ու պալատականներու կողմէ իրենց մայրենի լեզուին՝ հայերէնի գործածութեան ապացոյց է հետեւեալ դէպքը, զոր կը պատմէ Ուսուցչապետ Ն․ Ադոնց, քաղելով բիւզանդացի հեղինակներէ․ —

867ին Վասիլ գահակից կայսրը՝ քանի մը դաւադիր ընկերնե-

1․ Տարագրութենէ յառաջ Ակնայ Հայ–Հոռոմները կը բնակէին՝ Մուշեղկայ, Զորակ, Վանք և Շրզու գիւղերը․ Չմշկածագի Հայ–Հոռոմները՝ Մամսա, Խնդրկիկ և Սաթիրկէս գիւղերը․ իսկ Գէյվէյի Հայ–Հոռոմները՝ Օրթա–գիւղ, Սառաշլը, Բուրխանիյէ, Սաշլու և Ֆէրիշլի գիւղերը։

2․ Recueil des hist. des Croisades, *Hist. occidentaux*, հտ. Ա., եր 437։

րով՝ կ'երթայ կը սպաննէ Միքայէլ Գ.ը, Բիւզանդիոնի կից Ս. Մամասի պալատին մէջ, որ կը գտնուէր արդի Ղալաթիոյ թաղը։ Միքայէլի սպանութենէն ետք՝ դաւադիրները կ'երթան ծովեզերք, անկէ նաւով՝ Բուկոլէոնի արքունի պալատն ուղղուելու համար. բայց՝ ծովեզերք չհասած՝ Եւլոգ անուն համախոհ Հայու մը տունը կը հանդիպին, ու Եւլոգը միասին կ'առնեն կը տանին։ Երբ որ ցամաք կ'ելլեն և Բուկոլէոնի պալատին դուռը կը հասնին, հոն՝ օտար զինուորներու պետ Արտաւազդը կը տեսնեն, որուն հետ Եւլոգ իր մայրենի լեզուով (այսինքն՝ հ ա յ ե ր է ն) կը յայտնէ, թէ քիչ յառաջ Միքայէլ սպանուեցաւ. ուստի՝ պէտք է դուռը բանալ, ընդունելու համար Վասիլ կայսրը[1]։

*
* *




48. Արտաւազդի և Կոստանդնի ոսկեդրամը.

Բիւզանդական կայսերք իրենց մայրաքաղաքէն՝ Բիւզանդիոնէ դուրս զանազան տեղեր դրամներ տպած են, ինչպէս՝ Կիպրոս, Անտիոք և մինչեւ իսկ Վրաստան, բայց Հայաստանի մէջ չեն ունեցած փողերանոց և կամ թէ դրամ կտրող մեքենայ. ապա թէ ոչ՝ մեր հայրենի երկրին մէջ, – որ քանի՜ քանի՜ անգամներ Հռոմոց տիրապետութեան տակ անցած է և աւարի ու աւերի մատնուած, – տպուած պիտի ըլլային բիւզանդական դրամներ՝ « ARMENIA » մակագրութեամբ. չկան նոյն իսկ Հայաստանի անունով Բիւզանդիոնի մէջ տպուած յուշադրամներ։ Այսնցմէ ո՛չ մէկուն հանդիպած եմ ցարդ. բայց Անիի մէջ առաջին անգամ ըլլալով գտած եմ (1903ին) բիւզանդական արձանագրութիւն մը, որուն մէկ բեկորն հրատարակած եմ «Les Inscriptions arméniennes d'Ani, եւն.» գործիս մէջ (Պատկեր 1)։

---

1. **N. Adontz**, L'Âge et l'origine de l'empereur Basile I. (*Byzantion*, 1933-1934), երես 228 (1934)։

Բիւզանդական հայ կայսրերու կողմէ տպուած դրամներէն քանի մը նմոյշ ներկայացնեմ հոս: —



49. Լեւոն Ե.ի և Կոստանդին Ե.ի պղնձադրամը.

## ԱՐՏԱՒԱԶԴ [Artavazd]

Արտաւազդի դրամին Ա կողմին վրայ կը կարդացուի.





50. Արտաւազդի և Նիկեփորի ոսկեդրամը:

IhSYS XPISTYS hICA

այսինքն՝ «Յիսուս Քրիստոս, յաղթեա՛»:

Բ կողմին վրայ՝

ARTAYASDOSS hIChFOROC ECΘEh
hASILIS +

այսինքն՝ «Արտաւազդ Նիկեփոր, շնորհիւն Աստուծոյ՝ Թագաւոր»:

Արտաւազդի դրամներէն նմոյշներ տե՛ս Ձեւ 48 և 50:




51. Յովհաննէս Չմշկիկի արծաթադրամը.

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՉՄՇԿԻԿ [Jean Zimiscès]

Յովհաննէս Չմշկիկի արծաթեայ դրամին Ա. կողմին վրայ, կեդրոնը, Յովհաննու գլխին երկու կողմը կը կարդանք. IW Ah, որ է՝ «Յովհաննէս». շուրջը՝

+ IhSVS XRISTVS hICA +

որ է՝ « + Յիսուս Քրիստոս, յաղթեա՛ + »:

Բ կողմին վրայ՝

IW Ahh Eh XW AVTOCRAT'
EVSEb bASILEVS RWMAIWN

այսինքն՝ « + Յովհան՝ ի Քրիստոս՝ ինքնակալ բարեպաշտ թագաւոր Հոռոմոց »:



52. Լեւոն Հայկազնի մէկ դրամը.

## ԼԵՒՈՆ ՀԱՅԿԱԶՆ [Léon l'Arménien]

Լեւոն Հայկազնի պղնձէ դրամին Ա. կողմին վրայ կայ թագաւորին կիսանդրին, և շուրջը՝

+ LEOh bASILEVS ROm

որ է՝ « + Լեւոն թագաւոր Հոռոմոց»: — Բ կողմը՝

+ LEOh Eh ΘEO ЬASIΛEVS RωΠEOh

որ է՝ « + Լեւոն՝ շնորհիւն Աստուծոյ՝ թագաւոր Հռոմայ »։



53. Լեւոն Իմաստասէրի ոսկեդրամը.

## ԲԻՒԶԱՆԴԱՀԱՅ ԿՆԻՔՆԵՐ

Այս դրամներէն զատ՝ կան նաեւ զանազան տեսակ կնիքներ, որոնց նկարագրութիւնը կուտայ նշանաւոր կնքագէտն և դրամագէտը՝ Գ. Շլումբերգեր, բոլորն ալ պատկանող բիւզանդական ծառայութեան մէջ ծանօթ անուանի Հայոց։ Օրինակ՝



54. Կնիք Թորոս Ա.ի

ԹՈՐՈՍ Ա.ի կապարեայ կնիքը (Ձեւ 54), որուն Ա կողմին վրայ կան պատկերները Ս. Գէորգի (ձախակողմինը) և Ս. Թորոսի (աջինը), քովը՝ ΘΕΟΔΟΡ գրուած. իսկ Բ կողմին վրայ կը կարդացուի՝

+ ΔΥΑC ΦΡΟΥΡΕΙ ΚΑΛΛΙΝΙΚΩΝ ΜΑΡΤΥΡ(ΩΝ)
CΕΒΑCΤΟΝ ΘΕΟΔΩΡΟΝ ΤΟΝ ΡΟΥΠΕΝΙΟΝ [1]

որով Պարոն Թորոս – «Թէոդորոս Սեբաստոս Ռուբինեան» – ինք-

1. G. Schlumberger, Sigillographie de l'empire byzantin, երես 694–695. Paris, 1884.

*զինք կը յանձնէ կնիքիս Ա. կողմը գրուած երկու սուրբերու պաշտպանութեան։*

*Ինչպէս կ'երեւայ, այս կնիքը Ռուբինեան Թորոս իշխանին կը պատկանի։*

*Նոյնպէս կան նաեւ Նիկետաս Մխիթարի ու Վասիլ Մխիթարի կնիքներն, որոնց առաջինին վրայ գրուած է՝*

ϹΦΡΑΓΙϹ ΝΙΚΗΤΑ ΤΟΥ ΜΑΧΗΤΑΡΙ[1]

*այսինքն՝ «կնիք Նիկետաս Մխիթարեանի»։*

*Իսկ երկրորդին վրայ գրուած է՝*

Θ(εοτο) ΚΕ ΒΟΗΘΕΙ ΤΩ ΣΩ ΔΟΥΛΩ ΒΑΣΙΛ(ειω)
ΒЄΣΤ(ιτη) ΚΡΙΤ(η) S ΚΑΤЄΠ(ανω) ΜЄΛΙΤ[ΗΝΑϹ] S
ΛΙΚΑΝΔ(ου) ΤΩ ΜΑΧΗΤ(α)Ρ'[2]

*Պրոֆ. Ն. Ադոնցի կարծիքով՝ Նիկետաս ու Վասիլ երկու եղբայրներ էին, Մխիթարի որդիները, ընդունելով որ կնիքին վրայի* ΜΑΧΗΤΑΡ *անունը Հայոց մէջ սովորական դարձած* ՄԽԻԹԱՐ–*ն է*[3]*։ Իմ կարծիքով այս անունը՝ արաբական* مختار[4] *յատուկ անունն է, ոչ թէ յունական, ինչպէս կ'ընդունի Հ. Վ. Լորան։*

*Այս երկրորդ կնիքին վրան Վասիլ ինքզինք կ'անուանէ՝ «հանդերձապետ* (βέστης)*, դատաւոր և կատապան*[5] *Մելիտինէի և Լիկանդոսի*[6]*»։*

*Դարձեալ՝ Շլումբերգերի յիշեալ հիանալի գործէն կը ծանօթանանք, թէ Վահրամեան ընտանիքին պատկանող կնիքներ ալ գոյութիւն ունին, որոնց մասին կը գրէ նաեւ պատուական բարեկամս՝ Պրոֆ. Ն. Ադոնց, «*Byzantion*»ի իր նոյն յօդուածին մէջ, եր.* 378–382։

*Այս կնիքներուն գրութիւններն են.*

---

1. *Անդ, եր.* 675։
2. *Անդ, եր.* 282։
3. N. ADONTZ, *Notes Arméno-Byzantines*, «Byzantion» *հանդէսին մէջ*, 1934, *եր.* 367։
4. *Կարդա՛ մուխթար, որ կը նշանակէ «ընտրեալ»։*
5. *Այսինքն՝ կուսակալ։*
6. *Շլումբերգեր, անդ, եր.* 282։

(Ա) *Ա կողմ՝* Ο Α(γιος) ΘΕΟΔ(ωρος) = *« Ս. Թէոդորոս ».*
*Բ կողմ՝* ΒΑΧΡΑΜΗC Ο ΑΡΧΩΝ = *«Վահրամ իշխան*[1]*»,*
*որ այս ընտանիքին հիմնադիրն է։*

(Բ) ΚΕ ΒΟΗΘΗ ΕΛΠΙΔΙ(ω) ΚΟΥΡΟΠΑΛΑΤ(η) S
ΔΟΥΚ(η) ΚΥΠΡΟΥ Τ(ω) ΒΡΑΧΑΜΙ(ω)[2]

*որ կը պատկանի՝ «Ելպիդիոս Վահրամեանի, կուրոպաղատի և դուքսի Կիպրոսի »։*

(Գ) [ΘΚ]Ε ΒΘ [ΤΩ CΩ ΔΟΥΛΩ] ΔΗΜΗΤΡΙΩ ΒΕCΤΗ S
CΤΡΑΤΗΓΩ ΤΩ ΒΡΑΧΑΜΙΩ[3]

*որ կը պատկանի՝ « Դեմետրիոս Վահրամեանի, հանդերձապետի և սպարապետի »։*

(Դ) + ΚΕ Β'Θ' ΓΕΩΡΓ(ιω) CΤΡΑΤΗΓ(ω) ΤΩ ΒΡΑΧΑΜΩ[4]
*որ կը պատկանի՝ «Գէորգ Վահրամեան սպարապետի »։*

---

*Կայ նաեւ երկար տարիներէ ի վեր ծանօթ և շատ անգամներ հրատարակուած ու հայկական կարծուած ուրիշ յունատառ կնիք մը, որ այժմ կը պահուի Պարիսի Ֆրանսական Ազգ. Մատենադարանին մէջ։*

*Այս կնիքը կը պատկանի «Վրաց Գուգարաց բդեաշխ» Աշուշայի, ինչպէս կը կարդանք անոր վերտառութեան մէջ.*

(ΑC)ΟΥCΑC ΠΙΤΙΑΞΗC ΙΒΗΡΩΝ ΚΑΡΧΗΔΩΝ

*Բայց ասիկա Հայոց հետ առնչութիւն չունի, քանի որ չի պատկանիր Հմայեակ Մամիկոնեանի քենեկալին՝ Աշուշ – Վաամի ամուսնոյն, որ՝ իբրեւ խնամի Մամիկոնեանց և իբրեւ ապստամբապետ՝ հայ նախարարներու հետ Պարսկաստան տարուեցաւ 450ին. այլ կը պատկանի ուրիշ Աշուշայի մը, որ Վրացի է և Հայոց հետ ո՛ և է կապ չունի, և որուն կը հանդիպինք 606ին։*

---

1. Շլումբերգեր, անդ, էր. 311-312։
2. Անդ, էր. 305։
3. Անդ, էր. 714։
4. Անդ։

*ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.* — **J. Sabatier,** Description générale des monnais byzantines. Paris, 1862. — E. de **Muralt,** Essai de Chronographie byzantine. St. Pétersbourg, 1855. — Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ, «*Հանդէս Ամսօրեայ*», *Դ. տարի,* 1890, *էր.* 110. — *Նոյնը,* *Բիւզանդական հայ կայսերք* («*Արձագանգ փարիզի*»*ի մէջ,* 25 *Դեկտ.* 1921)։ — *Նոյնը,* Histoire Moderne des Arméniens. Paris, 1922. — **G. Schlumberger,** Un empereur byzantin au Xe siècle. Paris, 1890. — *Նոյնը,* L'Épopée byzantine à la fin du Xe siècle, t.I–III Paris, 1896-1900. — Հ. Կ. ՏԷՐ ՍԱՀԱԿԵԱՆ, *Հայ կայսերք Բիւզանդիոնի*։ *Վենետիկ,* 1905։ — **N. Adontz,** « Byzantion » *պարբերաթերթին մէջ,* 1933–1934։ — Գ. ՖՆՏՔԼԵԱՆ, *Հայազգիներ ի Բիւզանդիոն* («*Հայաստանի Կոչնակ*»*ին մէջ,* 1935)։




55. *Ռոմանոս Բ.ի դրամը.*



56. ԱՆԻ. – Պարիսպներու վրայ առիւծաքանդակ.

## Գ.

# ԱՐԱԲԱԿԱՆ ՇՐՋԱՆ

## [Domination arabe]

(660–932)

*Այստեղ աւելի ճոխ են դրամագիտական յիշատակները։*

*Արաբացիք առաջին անգամ ըլլալով Հայաստան արշաւած են* 636*ին. իսկ* 652*ին՝ չորրորդ յարձակումէ մը ետք՝ բոլորովին գըրաւած են և իրենց տիրապետութեան տակ առած զայն։*

*Այս տիրապետութիւնը տեւած է մօտաւորապէս երեք դար, նոյն իսկ Արաբացւոց կողմէ Հայոց Բագրատունեաց Հարստութեան հաստատուելէն՝* 887 *Թուականէն ալ ետք։ Ուստի՝ այս երկար ժամանակամիջոցի ընթացքին՝ Արաբները Հայաստանի մէջ տպած են ոսկիէ, արծաթէ, պղնձէ կամ անագապղնձէ այլեւայլ տեսակի շատ մը դրամներ, որոնց ամենուն վրայ արաբական տառերով դրոշմուած է՝* ارمينية *(Արմինիյա = Հայաստան) կամ* بارمينية *(«Հայաստանի մէջ») անունը։*

## ԷՄԷՎԻՅԷ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Ommiades]

(660–750)

*Հայաստանի մէջ կոխուած արաբական դրամներէն ամենէն հինը՝ որ յիշեալ «Արմինիյա» մակագրութիւնն ունի, տպուած է Էմէվիյէ կամ Ումեան Հարստութեան պատկանող խալիֆաներէն՝ այսինքն ամիրապետներէն՝ մէկուն կողմէ, խալիֆաներ որոնք կը նստէին Դամասկոս. ուրեմն՝ Հիջրի* 40–132 *(= Քրիստոսի* 660–750*) Թուա-*

կաններուն։ Հոն՝ այն դրամին վրայ՝ զայն տպել տուող խալիֆային անունն ու դրամահատութեան թուականը կը պակսին. հետեւաբար որոշ կերպով չենք կրնար ճշտել անոր թուականը, այլ հաւանական ենթադրութեամբ կ՚ըսենք, թէ ՄՕՒԱՎԻՅԱ Ա. խալիֆան է այն (660–680), որդին Աբու–Սօֆիան Բէն Հարբի, որ իր իշխանութեան առաջին տարին իսկ Հայաստանի վրայ յարձակեցաւ և Հայոց վրայ միանուագ 500 դահեկան տուրք դրաւ, մէկ տարուան մէջ զայն իրեն յանձնելու պարտադրութեամբ, որուն գործադրութեան իբրեւ երաշխիք՝ Գրիգոր Մամիկոնեան ու Սմբատ Բագրատունի իշխանները պատանդ տարաւ հետը[1]։

Այստեղ «դահեկան» ըսելով կ՚իմանանք արաբական دينار (= հյ. դենար) և բիւզանդական δηνάριον կոչուած ոսկեդրամը, որ կ՚արժէր 12 կամ 13 ֆրանք ոսկի։

Կան հայադրամներ ալ, որոնց վրայ խալիֆայի անուն չկայ, կամ թէ՝ մաշած սրբուած է անունը, բայց կայ թուական մը, զոր օրինակ՝ Հիջրի 100 (718) թուականը, ինչպէս որ այս թուականը կրող անանուն դրամներ գիտենք. սակայն կրնանք ճշտել, թէ անիկա տպուած է նոյն Էմէվիյէ խալիֆաներէն ՕՄԱՐ Բ.Ի (717–720) կողմէ։ Այս դրամին թուակիր երեսին վրայ նոյնպէս արաբական տառերով տպուած է՝ «Արմինիյա»։

Հիմա յիշատակենք Էմէվիյէ խալիֆաներու միւս հայադրամները։

ՙԱԲԴՈՒԼ–ՄԵԼԻՔ (685–705) Հիջրի 84 (703) և 86 (705) թուերուն արծաթ դրամներ տպած է ի دبيل (= Դուին). ուրեմն այս թուականներուն՝ Դուին արդէն գրաւուած էր Արաբներէ։ Իսկ Հիջրի 81 (700) թուակիր արծաթադրամ մը գիտենք այս խալիֆայէն, որ «Արմինիյա»ն կը յիշատակէ։

ՎԷԼԻԴ Ա. (705–715) Հիջրի 92 (710), 94 (712), 95 (713) թուականներով և «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամներ տպած է, որ կը կշռեն 2 գր. 65։ Յաջորդ տարին՝ Հիջրի 96 (714) թուականով և «Արմինիյա» վերտառութեամբ ուրիշ արծաթադրամներ տպած է, որ կը կշռեն 2 գր. 77։ Այս խալիֆան Առանի կամ Արրանի (= Աղուանք) մէջ արծաթադրամ մը տպած է Հիջրի 90 (708) թուականին. իսկ Մակուի մէջ՝ դարձեալ արծաթադրամներ տպած է՝ Հիջրի 92 (710), 93 (711) և 95 (713) թուականներուն։

ՍՕԼԷՅՄԱՆ (715–717) Հիջրի 97 (715) թուականով և «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամ մը տպած է, որ կը կշռէ

---

1. Տես ՂԵՒՈՆԴ ՊԱՏՄԻՉ, Գլուխ Դ, և ՎԱՐԴԱՆ ՊԱՏՄԻՉ, տպ. Վենետիկ, 1862, եր. 68։

2 գր. 60։ Յաջորդ տարին՝ Հիջրի 98 (716) թուականով ալ «Արմինիյա» վերտառութեամբ դրամ մը տպած է։ Հիջրի 99 (717) թուականով և «Արմինիյա» անունով տպած արծաթ դրամը կը կշռէ 2 գր. 80։ Ունի նաեւ Հիջրի 97 (715) և 98 (716) թուերուն Մակուի մէջ տպած արծաթադրամներ։

ʿՕՄԱՐ (717–720) Հիջրի 100 (718) և 101 (719) թուականներուն զանազան արծաթադրամներ տպած է Հայաստանի անունով։

ԵԶԻԴ Բ. (720–724) Հիջրի 102 (720) ու 103 (721) թուականներով և «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամներ տպած է, որ կը կշռեն 2 գր. 80։ Յաջորդ տարին՝ Հիջրի 104 (722) թուականով տպած արծաթ հայադրամը կը կշռէ 2 գր. 05։ Ունի նաեւ 723ին և 724ին տպած հայադրամներ։

ՀԻՇԱՄ (724–743) Հիջրի 109 (727) թուականով և «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամ մը ունի, որ կը կշռէ 2 գր. 78։ Ասկէ զատ տպած է նաեւ 725ին և 726ին «Արմինիյա» անունով հայադրամներ, որոնց կշիռները չեմ գիտեր։

---

## ԱԲԲԱՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ [Les Abbassides]

(750–1258)

Աբբասեան ամիրապետները կը նստէին Բաղդադ։

«Արմինիյա» վերտառութիւնը կը տեսնենք նաեւ այս Հարստութեան պատկանող խալիֆաներու կողմէ կամ աւելի ճիշտն՝ անոնց անունով Հայաստանի մէջ տպուած գրեթէ բոլոր դրամներուն վրայ։ Այսպէս՝ Հիջրի 144 (761), 145 (762), 148 (765), 149 (766), 151 (768), 152 (769), 153 (770), 155 (771) և այլ թուականներուն՝ بارمينية = «Հայաստանի մէջ» տպած արծաթ դրամները կը մատնանշեն՝

ԱԲՈՒ-ՋԱʿՖԱՐ ԷԼ-ՄԱՆՍՈՒՐ խալիֆան (754–775), թէեւ իր անունը տպուած չըլլայ դրամներուն վրան։ Այս խալիֆային կը պատկանին Առանի մէջ Հիջրի 145ին (762), 152ին (769), 154ին (770) տպուած ոսկեդրամներն ու 145ին (762), 146ին (763), 147ին (764), 148ին (765), 151ին (768), 152ին (769), 153ին (770), 154ին (770) և 155ին (771) տպուած արծաթադրամներն ու 153ի (770) պղնձադրամ, ինչպէս նաեւ նոյն Հիջրի 143ին (760)՝ 2 գր. 95 կշռով, 144ին (761)՝ 2 գր. 99 կշռով, 145ին (762), 146ին (763), 147ին (764), 148ին (765), 150ին (767), 151ին (768)՝ 2 գր. 89 կշռով,

152ին (769)՝ 2 գր․ 92 կշռով, 153ին (770), 154ին (771)՝ 2 գր․ 92 կշռով, և 155ին (771) «Արմինիյա»ի մէջ տպուած արծաթ դրամները։ Էլ–Մանսուրի անունով Պարտաւի (بردعة) մէջ տպուած դրամներ ալ գիտենք 138ին (755), 155ին (771), 158ին (774) և 159ին (775)․ ինչպէս նաեւ ծանօթ են 154ին (770) և 159ին (775) Դուինի մէջ տպուած դրամները։

Խալիֆայիս՝ Հիջրի 152 (769) և 153 (770) թուակիր դրամներուն վրայ بكار (Բակկար) անունն ալ գրուած է։ Ասիկա ուրիշ մէկը չէ այլ այն ժամանակ Հայաստանի, Ատրպատականի և Աղուանից վրայ Արաբացւոց կողմէ ղրուած արաբ ոստիկանին կամ կուսակալին անունն, ըստ սովորութեան։

Նոյնպէս Էլ–Մանսուրի անունով Հիջրի 158ին (774) Պարտաւի մէջ տպուած դրամի մը վրայ «Հասան» անունն ալ կայ, որ Հայաստանի ոստիկանին՝ Հասան իբն Կահտաբայի անունն է։

Դարձեալ, այս խալիֆային Հիջրի 155ին (771) Հայաստանի անունով տպած արծաթ դրամներուն վրայ ՄԱՀԴԻ անունն աւելցուած է։ Ասիկա Մանսուրի որդւոյն և յաջորդին անունն է, որ Աբբասեաններու ժամանակ այսպէս սովորութիւն դարձաւ որդիներն ալ յիշատակել։

ՄՕՀԱՄՄԷԴ ԷԼ–ՄԱՀԴԻ (775–785) եւս Հայաստանի մէջ «Արմինիյա» վերտառութեամբ արծաթ դրամներ տպած է Հիջրի 161ին (777)՝ 2 գր․ 95 կշռով, 162ին (778), 165ին (781), 166ին (782)՝ 2 գր․ 95 կշռով, 167ին (783)՝ դարձեալ 2 գր․ 95 կշռով, և 168ին (784)։ Այս խալիֆան Առանի մէջ 165 (781), 166 (782), 167 (783) և 168 (784) թուականներուն․ իսկ Պարտաւի մէջ՝ 158ին (774/5), 159ին (775), 163ին (779), 165ին (781) և 166ին (782) արծաթ դրամներ տպած է․ պղնձադրամներ՝ 159ին (775)։ Ունի նաեւ Դուինի մէջ տպուած պղնձադրամներ՝ 159ին (775), իսկ Առանի մէջ՝ 167ին (783)։

Ասոր՝ Հիջրի 167ին (783) Հայաստանի անունով կոխած արծաթ դրամին վրայ կը կարդանք նաեւ نصر (Նասր) անունը․ իսկ ուրիշի մը վրայ՝ بن خزيم (բեն Խազիմ) անունը։

ՄՈՒՍԱ ԷԼ–ՀԱԴԻ (785–786) Հիջրի 169 (785) թուականին «Արմինիյա» վերտառութեամբ արծաթ դրամ մը տպած է Հայաստանի մէջ։

ՀԱՐՈՒՆ ԷՐ–ՌԱՇԻԴ (786–809) Հիջրի 173 (789), 174 (790), 175 (791), 177 (793), 178 (794), 179 (795) և 180 (796) թուականներուն, իսկ 181 (797) թուին՝ 2 գր․ 65 կշռով, դար-

*ձեւ՝* 182 (798), 183 (799), 185 (801), 186 (802), 187 (802), 188 (803), 189 (804), 190 (805), 191 (806), 192 (807) *և* 193 (808) *թուերուն «Արմինիյա» վերտառութեամբ արծաթ դրամներ տպած է Հայաստանի մէջ։ Ունի նաեւ* 187*ին* (802) *Դուինի մէջ տպած պղնձադրամ մը և արծաթադրամ մը։*

*Այս հռչակաւոր խալիֆան ուրիշ արծաթադրամներ ալ տպած է Առանի մէջ, Հիջրի* 178*ին* (794), 183*ին* (799), 184*ին* (800), 185*ին* (801), 186*ին* (802), 187*ին* (802/3), 188*ին* (803), 189*ին* (804), 190*ին* (805), 191*ին* (806), 192*ին* (807) *և* 193*ին* (808)։ *Ունի նաեւ Հիջրի* 189*ին* (804), 190*ին* (805), 191*ին* (806), 192*ին* (807) *Բաջունայիսի կամ Վաժնունեաց մէջ տպած արծաթադրամներ։*

*Այսոր դրամներէն Առանի* 802*ինն ու* 803*ինը՝ կը կրեն նաեւ* اسد بن يزيد *(Ասադ իբն Եէզիդ),* محمد بن يزيد *(Մօհամմեդ իբն Եէզիդ),* خزيمة بن خازم *(Խուզէյմա իբն Խազիմ) անունները․ իսկ Վաժնունեաց դրամներուն վրայ՝* جعفر *(Ջա՛ֆար)։*

ՄՕՀԱՄՄԷԴ ԷԼ-ԷՄԻՆ (809-813) *Հիջրի* 195 (810) *թուին արծաթ դրամ մը տպած է Հայաստանի մէջ․ իսկ* 196*ին* (811), 197*ին* (812) *և* 198*ին* (813)՝ *Առանի մէջ․ ինչպէս նաեւ Հիջրի* 194 (809), 195 (810), 196 (811) *և* 197 (812) *թուականներով Վաժնունեաց մէջ տպուած արծաթ դրամները, որոնցմէ ոմանց վրայ կը կարդանք նաեւ՝* عيد، صدد داود، داود جعفر *և* السيدة *անունները։*

՛ԱԲԴԱԼԼԱՀ ԷԼ-ՄԱ՚ՄՈՒՆ (813–833) *Հիջրի* 202*ին* (817), 203*ին* (818), 204*ին* (819), 207*ին* (822), 214*ին* (829), 217*ին* (832) *և* 218*ին* (833) *«Արմինիյա» վերտառութեամբ արծաթ դրամներ տպած է Հայաստանի մէջ։ Առանի մէջ ալ ոսկեդրամ մը տպած է* 196*ին* (811)․ *իսկ արծաթադրամներ՝* 202*ին* (817), 204*ին* (819), 205*ին* (820), 206*ին* (821), 207*ին* (822), 208*ին* (823), 209*ին* (824), 210*ին* (825), 211*ին* (826), 212*ին* (827), 215*ին* (830), 217*ին* (832) *և* 218*ին* (833)․ *Վաժնունեաց մէջ՝* 199*ին* (814), 204*ին* (819), 205*ին* (820), 206*ին* (821), 207*ին* (822), 208*ին* (823), 209*ին* (824), 210*ին* (825), 212*ին* (827), 213*ին* (828), 214*ին* (829), 216*ին* (831) *և* 217*ին* (832)։ 811*ին*, 812*ին և* 825*ին Առանի մէջ տպուած արծաթ դրամներուն վրայ՝ վերնագրի յաւելուածներ կան, եաքէն կոխուած։*

ՄՕՀԱՄՄԷԴ ԷԼ-ՄՕԹԱՍԻՄ (833-842) *Հիջրի* 220*ին* (835) *և* 226*ին* (840) *արծաթ դրամներ տպած է Առանի մէջ։*

ԱԲՈՒ՚Լ ՖԱԴԼ ՋԱ՛ՖԱՐ Ա․ ԷԼ-ՄՕՏԱՎԱԿԿԻԼ (847–861) *ամիրապետն Հիջրի* 243*ին* (857) *ոսկեդրամ մը տպած է Հայաստանի մէջ,*

«Արմինիյա» վերտառութեամբ. իսկ արծաթադրամներ տպած է 239ին (853), 243ին (857), 246ին (860) և 247ին (861)։ Դուինի մէջ ալ դրամ մը տպած է 240ին (854)։

ՄՕՀԱՄՄԷԴ ԷԼ–ՄՕՆՏԱՍԻՐ (861–862) «Արմինիյա» վերտառութեամբ արծաթ դրամներ տպած է, ըստ Մարկովի, բայց ցոյց տուած թուականները դժբախտաբար չեն համաձայնիր։

ԱՀՄԷԴ ԷԼ–ՄՕՍՏԱʻԻՆ (862–866) Հիջրի 252ին (866) Հայաստանի մէջ տպած արծաթ դրամին կշիռն է՝ 3 գր. 70։ «Արմինիյա» անունով տպած միւս արծաթադրամներուն թուականներն են՝ 248 (862), 249 (863), 250 (864) և 251 (865)։

ԶՕԲԷՅԻՐ ԷԼ–ՄՕʻԹԱԶԶ (866–869) Հիջրի 252 (866), 253 (867), 255 (868) և 256 (869) թուականներուն «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամներ տպած է Հայաստանի մէջ։

ՄՕՀԱՄՄԷԴ ԷԼ–ՄՕՀԹԱԴԻ (869–870) Հայաստանի մէջ արծաթադրամ մը տպած է Հիջրի 256ին (869)։

ԱՀՄԷԴ ԷԼ–ՄՕʻԹԱՄԻԴ (870–892) Հիջրի 250 (864) թուականը կրող երկու կնիքներու մէկ կողմը դրամի վերածած է, վրան նշանակելով «Արմինիյա»։ Հայաստանի անունով տպած միւս դրամներն հետեւեալ թուականները կը կրեն. 256 (869), 257 (870), 259 (872), 262 (875), 263 (876), 264 (877), 266 (879), 267 (880), 268 (881), 269 (882), 270 (883), 273 (886), 276 (889), 277 (890) և՝ 3 գր. 48 կշռով՝ 279 (892)[1]։ Ուրեմն՝ ինչպէս աւելէ յառաջ ըսած եմ, մեր Բագրատունեաց Հարստութեան հաստատուելէն (887) ետքն ալ..., որ այսպէս շարունակուած է։

Այս խալիֆան Պարտաւի մէջ ալ արծաթադրամներ տպած է 267ին (880), 269ին (882), 270ին (883), 277ին (890) և 279ին (892)։

ԱՀՄԷԴ ԷԼ–ՄՕʻԹԱԴԻԴ (892–902) Հիջրի 286 (899), 287 (900), 288 (901) և 289 (902) թուականներուն արծաթ դրամներ տպած է Հայաստանի անունով և «Հայաստանի մէջ» (بارمينية)[2]։ Նոյնպէս նաեւ՝

ԱԲՈՒ ՄՕՀԱՄՄԷԴ ʻԱԼԻ ԷԼ–ՄՕԿՏԱՖԻ (902–908) խալիֆային կողմէ Հիջրի 289ին (901), 291ին (903) և 292ին (904) ոչ միայն Ամիդի մէջ տպուած արծաթ դրամները գիտենք, այլ և 293ին (905) Հայաստանի անունով տպած մէկ դրամն ալ գիտենք[3]։ Այսոնցմէ դուրս՝ 289ին

1. Տե՛ս В. ТИЗЕНГАУЗЕН, Монзты Восточнаго Халифата, եր. 227։
2. Անդ, եր. 229 և 231-233։
3. Անդ, եր. 236։

(901) *Մսիսի մէջ տպած ոսկեդրամ մը ունի, ինչպէս նաեւ* 291*ին* (903) *նոյն քաղաքին մէջ տպած արծաթ մը։*

ԱԲՈՒ՚Լ ՖԱԴԼ ՋԱ՛ՖԱՐ Բ․ ԷԼ–ՄՕԿՏԱԴԻՐ (908–932) *խալիֆան եւս Հայաստանի մէջ «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամ մը տպած է Հիջրի* 307*ին* (919)*։ Ամիդի մէջ ալ արծաթ դրամներ տպած է Հիջրի* 308 (920) *և* 310 (922) *թուականներուն։ Նիսիբինի մէջ՝* 308*ին* (920)*․ Անտիոքի մէջ՝* 301*ին* (913)*, և* 318*ին* (930) *տպած արծաթներ։ Իսկ Տարսոնի մէջ* (بطرسوس) *ոսկի մը տպած է* 313*ին* (925)*, և արծաթներ՝* 312*ին* (924) *են․։*

ԷՐ–ՌԱԴԸ ԲԻԼԼԱՀ (934–940) *Հիջրի* 323 (934) *թուականին Ամիդի մէջ տպած արծաթադրամ մը ունի։ Իսկ՝*

ԱԲՈՒ–ԻՍՀԱԿ ԻԲՐԱՀԻՄ ԷԼ–ՄՈՒՏՏԱԿԻ–ԼԻԼԼԱՀ (940–944) *Հայաստանի մէջ տպած «Արմինիյա» վերտառութեամբ արծաթադրամ մը ունի, որ Հիջրի* 331 (942) *թուականը կը կրէ*[1]*։ Նոյնպէս և Հիջրի* 333 (944) *թուականին՝ «Արմինիյա» անունով ուրիշ արծաթադրամ մը ունի*[2]*։*

*Դեռ շարունակե՞մ․․․։*

*Ահաւասիկ․*

ԱԲՈՒ՚Լ–ԿԱՍԸՄ ՄՕՍՏԱԿՖԻ–ԲԻԼԼԱՀ (944–946) *ամիրապետն Հիջրի* 333 (944) *թուին արծաթ դրամ մը տպած է «Հայաստանի մէջ»* (بارمينية)*, զոր կը յիշատակեն* 1870*ի «Բելգիական Դրամագիտական Հանդէս»ը*[3] *(եր․* 229*, թիւ* 40*), և Տիզենհաուզեն։*

*Եւ այս պժգալի վկաները՝ Բագրատունեաց Հարստութեան հաստատուելէն աւելի քան կէս դար յետոյ ալ հոն են, մեր սուրբ երկրին մէջ․․․։*

*
* *

*Մասնաւոր յիշատակութեան արժանի է, ինչպէս որ վերը տեսանք, Արաբացւոց կողմէ Հայաստան ղրկուած արաբ ոստիկաններու կամ կուսակալներու անուններով ծանօթ և «Արմինիյա» վերտառութեամբ տպուած բազմաթիւ դրամներու գոյութիւնը։*

*Այս տեսակէն են նաեւ՝*

---

1. Տիզենհաուզեն, եր. 292։
2. Մարկով, թիւ 1083։
3. Revue de la Numismatique Belge. Bruxelles, 1870։

ԻՍՀԱԿ Ա. ԻԲՆ–ՄՈՒՍԼԻՄ ԷԼ–ՕՔԱՅԼԻ *ոստիկանին* (745–750) *պղնձէ անթուական բայց «Արմինիյա» անունով տպած դրամները, որոնցմէ ոմանց վրայ՝ օրուան ոստիկանին անունին քով՝ գրուած է* امير (*ամիր* = *իշխան, կառավարիչ*), *իսկ այլոց վրայ՝* امير الامير (*ամիր ուլ ամիր* = *իշխանաց իշխան*) *տիտղոսները։*

*Ասոնցմէ դուրս, Աբբասեան խալիֆաներու կողմէ Տարսոն նստող կուսակալներէն՝*

ՐՈՒՍՏԷՄ ԻԲՆ ԲԱՐԴԱԻԱ (904–912) *պղնձէ դրամ մը տպած է «Թարսուս»ի* (= *Տարսոն*) *մէջ։*

*Այս կուսակալին կողմէ Մսիսի մէջ ալ տպուած ուրիշ մէկ պղնձադրամը կայ, որուն վրայ քաղաքին անունը գրուած է* المصيصة (*էլ Մասիսա*) *ձեւով։*

*
* *

*Արաբ ոստիկաններու կուսակալանիստ քաղաքն էր Դուին, ինչպէս նաեւ Պարտաւ, արաբերէն* دبيل, *ուր տեղի ունեցած են՝* 709*ին եւ* 768*ին՝ Հայոց երկու եկեղեցական ժողովները։ Իսկ կաթողիկոսարանը շատոնց փոխադրուած էր Հայոց Ոստանը՝ Դուին,* 452*ին կամ* 485*ին, եւ մնաց հոն մինչեւ* 896 *թուականը։ Այս քաղաքին մէջ ալ՝ ինչպէս որ տեսանք, Արաբացւոց կողմէ տպուած շատ մը դրամներ կան, վրան* دبيل *գրուած, որ Դուինի արաբական անունն է։*

*Դուին եղած է նաեւ պարսկական մարզպաններու աթոռանիստ քաղաքը։*

*
* *

*Տասը տարի յառաջ Թէոդիկի «Ամէնուն Տարեցոյցը»ին մէջ «Հայաստանի դիրքն Արաբացւոց ժամանակ» վերնագրով ուսումնասիրութիւն մը հրատարակած էի*[1], *որով կը քննէի Հայաստանի արաբ ոստիկաններու ու զօրավարներու ժամանակագրութիւնը, զոր քանի մը տարի ետք՝ նոր քննութեան ենթարկեցի եւ սրբագրութիւններ կատարեցի, վերստին հրատարակութեան տալու մտադրութեամբ, որ՝ սակայն՝ չէ կատարուած ցարդ։*

---

1. 1927, *եր.* 539-545.

*Այն ժամանակ, Թէոդիկի «Տարեցոյց»ին մէջ գրածիս առթիւ, հայ եկեղեցականութեան և ազգին մէջ շատ բարձր դիրք ունեցող ծանօթ հոգեւորական մը՝* 1928*ի Մայիսին ինձ կը հարցնէր, թէ ի՞նչ էր պատճառը, որ ոստիկաններն ընդհանրապէս տարի մը կամ երկու միայն կը մնային պաշտօնի գլուխ։*

*Այս հարցումը՝ շատերու կողմէ ալ կրնայ կրկնուիլ. ուստի, հո՛ս քանի որ ներկայացած է առիթը, երկու խօսքով կը պարզեմ, ամբողջացնելու համար այս գլուխը։ —*

*Ինչպէս վերեւ ըսած եմ, Հայաստանի մէջ իրենց անունով դրամ տպելու իրաւունք տուած էին խալիֆաներն իրենց ոստիկաններուն, որոնք* 636 *Թուականէն սկսեալ մինչեւ* 924, *— այսինքն՝ Աբդ–էլ–Րահիմէ մինչեւ Յուսուփ Գ.ի երկրորդ անգամ ոստիկանութեան կոչուած ժամանակ, — շատ գէշ կերպով կառավարած են գրաւուած երկիրները, հուրի ու սուրի ազդեցութեան տակ պահելով ժողովուրդը։ Սակայն, չնայած արաբ բորենիներու և Թուրք գայլերու սփռած սարսափին, ազատատենչ հայութիւնը՝ ամէն գնով իր անկախութիւնը ձեռք բերելու համար շարունակական բազմապիսի փորձեր կատարեց, և՝ ժամանակ առ ժամանակ՝ յաջողեցաւ իր պայքարին մէջ։*

*Ահա, ա՛յս է միակ պատճառն, որ՝ գրեթէ ամէն տարի՝ պաշտօնանկ կ'ըլլային, կը փոխուէին ոստիկանները, բաւարարութիւն չկարենալով տալ ամիրապետին։*

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. — **W. Tiesenhausen,** Monnaies des Khalifes orientaux. St. - Pétersbourg, 1873. — **Stanley Lane Poole,** Catalogue of Oriental Coins in the Brit. Museum, t. I. The Coins of the Eastern Khaleefehs in the Brit. Mus. London, 1875. — Նոյնը, Հատոր Թ. Additions to the Oriental Collection (1876–1888), Մասն Ա. London, 1889. — Նոյնը, Catalogue of the Collection of Arabic Coins preserved in the Khedivial Library at Cairo. London, 1897. — **Henri Lavoix,** Catalogue des monnaies musulmanes de la Bibliothèque Nationale. Khalifes orientaux. Paris, 1887. — А. МАРКОВЪ, Инвентарнъй каталогъ мусульманскихъ монетъ императорскаго Эрмитажа. С. П., 1896. — **Paul Casanova,** Inventaire sommaire de la Collection des monnaies de S. A. la Princesse Ismaïl. Paris, 1896. — H. NUTZEL, Katalog der orientalischen Münzen. Berlin, 1898–1902. — Ռ. ՖԱՍՄԵՐ,

*Ժամանակագրութիւն Հայաստանի Ոստիկաններու՝ Առաջին Աբբասեանց օրով։ Թարգմանեց Դկտ. Հ. Վահան Ինգլիզեան։ Վիեննա*, 1933 —

اسماعيل غالب

ساسانيان و بيزانتيين طرزنده‌كى سكه‌لر.

خلفاى امويه و عباسيه مسكوكاتى. قسطنطينيه، ١٣١٢.



57. ՋՈՒԱՐԹՆՈՑ ԵԿԵՂԵՑԻ. — Խոյակ.



58. ԱՆԻ. – Արձանագրութիւն ՀԱ (622) թուականէն.

Է.

# ՄՈՆՂՈԼԵԱՆ ՇՐՋԱՆ

[Domination mongole]

(1185-1445)

*Այստեղ «Մոնղոլեան Շրջան» ըսելով կ'իմանամ Թիւրքմէնեան, Չինգիզեան, Ջաղաթայեան, Իլխանեան, Ջելայիրեան, Թիմուրեան և Մօզաֆֆէրեան իշխանութիւնները, որոնք Հայաստանն ասպատակեցին և գրաւեցին ժամանակ մը։*

## ԹԻՒՐՔՄԷՆԵԱՆՔ [Les Turcménides]

*Թիւրքմէնեանները կը տիրապետէին գլխաւորապէս Միջագետքի վրայ. ուստի՝ ուղղակի գործ ունեցած չեն Հայոց հետ. միայն թէ անոնցմէ Որդոկեան ճիւղին պատկանող երեք վեհապետներ գիտենք.*

1. ԱՄԱԴ ԷԴ–ԴԻՆ ԱԲՈՒ–ԲԷԿՐ,
2. ՆԱՍՐ ԷԴ–ԴԻՆ ՄԱՀՄՈՒԴ, *և*
3. ՌՕԿՆ ԷԴ–ԴԻՆ ՄՕԴՈՒԴ,

*որոնցմէ երկու վերջինները՝ դրամներ տպած են Ամիդի մէջ. – առաջինը՝* 1217 *և* 1220 *թուականներուն, իսկ երկրորդը՝* 1224*ին։ Գալով Ամադ էդ–դին Աբու–Բէկրի* (1185–1203), *ասիկա պղնձէ երկու տեսակ դրամ տպած է Խարբերդի մէջ։*

———

## ՉԻՆԳԻԶԵԱՆՔ [Les Tchinkisides]

Չինգիզեաններու իշխանութիւնը հաստատուած է 1202ին, Չին-գիզ-խանի կողմէ. բայց իր ժամանակէն հայկական դրամ չունինք: Չունինք նաեւ իր անմիջական յաջորդէն՝ Օգոթայ-խանէն (1226-1241) հայադրամներ. բայց գիտենք, որ արքունի խնամակալը՝

ՏՈՒՐԱԿԻՆԱ-ԽԱԹՈՒՆ (1241-1245) արծաթ դրամ մը տպած է Գանձակի մէջ, Հիջրի 642ին (1244), ուրիշ արծաթ մը՝ Նախի-ջեւանի մէջ, և ուրիշ մը՝ Ուրմիայի մէջ: Իսկ

ԿՈՒՅՈՒԿ-ԽԱՆԷՆ (1242-1248) Թիֆլիս տպուած դրամներ ծանօթ են, ինչպէս նաեւ Հիջրի 643ին (1245) Նախիջեւանի մէջ տպուած դրամ մը: Գալով

ՄԱՆԳՈՒ-ԽԱՆԻ (1250-1219) այնչափ գիտենք, որ ասիկա ալ Թիֆլիսի մէջ զանազան դրամներ տպած է, — բայց Թիֆլիսի՛ մէջ միայն, երբ Մոնղոլները կը տիրէին Վրաստանի:

---

## ՋԱՂԱԹԱՅԵԱՆՔ [Les Djaghatides]

Ջաղաթայեանները Գանձակի վրայ կը տիրէին, և հոն տպած են արծաթ դրամներ: Անոնցմէ ծանօթ են՝

ԲՈՒՂԱ ԹԻՄՈՒՐ (1272-1291), որուն դրամները կը կրեն 671 (1272) և 677 (1278) թուականները:

ԴՈՒՎԱ ԽԱՆ (1291-1306) որուն դրամներուն թուականները ջնջուած են, բաց ի 691 (1291) թուականով ծանօթ դրամէն:

Ջաղաթայեաններէն Մարդինի մէջ տպուած արծաթ դրամ մը կը յիշէ Մարկով, բայց թուականը մաշած է:

---



59. Անի. – Բարձրաքանդակ պատկեր.

## ԻԼԽԱՆԵԱՆՔ [Les Ilkhaniens]

Իլխանեանները՝ Պարսկաստանի Մոնղոլներն են։

Ասոնք Մոնղոլեաններու մէջէն ամենէն հետաքրքրական և ամենէն կարեւոր վեհապետներն են մեզ համար, վասն զի անոնցմէ ոմանք՝ ոչ միայն տիրապետած են Անիի, այլ և իրենց հետքերը ձգած են հոն, յիշուելով արձանագրութեանց մէջ[1]։

Ասկէ զատ, Իլխանեաններէ ոմանք՝ կամ քրիստոնեայ էին (ինչպէս՝ Հուլաղու-խան, Աբաղա-խան, Ահմադ-խան, Արղուն-խան, Բայդու-խան և Ղազան Մահմուդ-խան), և կամ՝ իրենց կիները քրիստոնեայ էին (ինչպէս Հուլաղուի կինը՝ Տօխուզ-խաթուն, և Աբաղայի կինը՝ Դեսպինա-խաթուն)։

Գիտենք նաեւ, թէ մեր Հեթում Ա. թագաւորն՝ իր իշխանութեան տակ գտնուած երկիրն օտար յարձակումներու դէմ պաշտպանելու համար՝ իր Սմբատ Գունդստապլ եղբայրը, 1247ին, թանկագին նուէրներով Մոնղոլներու Կույուկ-խանին դեսպան ղրկեց, և անոր բարեկամութիւնն ապահովեց։ Իսկ 1254-1255ին, Հեթում՝ Մոնղոլներու քրիստոնէամէտ տրամադրութենէն օգտուելով՝ Մանգու-խանի այցելութեան գնաց, և հետը զինակցութեան դաշն կապեց։ 1259ին ալ՝ Հուլաղու-խանի օգնութեան գնաց Հեթում, գործնական կերպով հաստատելով այս զինակցութեան իր վրայ ինկած պարտականութիւնը։

Իլխանեաններէ ԱՀՄԱԴ ԹԱԳՈՒԴԱՐի (1282-1284) արծաթ մէկ դրամը շատ հետաքրքրական է, թէեւ Հայաստանի մէջ կամ Հայաստանի անունով տպուած չըլլայ ան։

---

1. Տեսնել իմ «Հայերէն արձանագրութիւնք Անւոյ, Բագնայրի և Մարմաշէնու», թիւ 68, 69, 72, 73, 75 և 81 արձանագրութիւնները։ Պարիս, 1931։

Ասոր առաջին երեսին վրայ արաբատառ գրուած է.

| | |
|---|---|
| بسم الاب | Բիսմ իլ-Աբ, |
| والابن و روح | վ'էլ-իբն, վէ Ռուհ |
| القدس | էլ-Կուդս. |
| + بابا | Բաբա + |

այսինքն՝ «Յանուն Հօր, և Որդւոյ, և Հոգւոյն Սրբոյ. Պապ. +»[1]:




60. Դրամ Արղուն-խանի.

Ասոր նման իր յաջորդին՝ ԱՐՂՈՒՆ-ԽԱՆԻ (1284-1291) Հիջրի 687 (1288) Թուականով տպած մէկ դրամը կայ, որուն մէկ կողմը նոյնպէս արաբական տառերով գրուած է.

| | |
|---|---|
| بسم الاب | Բիսմ իլ-Աբ, |
| والابن و روح | վ'էլ իբն, վէ Ռուհ |
| القدس الله | էլ-Կուդս. Ալլահու |
| واحد | վահիդ |
| + | + |

այսինքն՝ «Յանուն Հօր, և Որդւոյ, և Հոգւոյն Սրբոյ. միակ Աստուած. +»:

Արղուն-խանի 684ին (1285) Պարտաւի մէջ տպած արծաթադրամն ալ ծանօթ է, ինչպէս նաեւ Երնջակի մէջ 688ին (1289) տպած ուրիշ մէկ արծաթն ու Բաբերդի մէջ 68..ին (128..) տպած արծաթը:




61. Դրամ Ղազան-խանի.

1. بب = «Պապ» բառի մասին ուրիշ մեկնութիւն մը տե՛ս ի *Speculum Hist.*, Chron. Hieros. Reinecci, հտ. Բ, գիրք ԼԱ, գլ. 139:

ՂԱԶԱՆ ՄԱՀՄՈՒԴ (1294–1304) *իր դրամներէն ոմանց վրայ արաբական տառերով տպած է մահմեդական հաւատոյ հանգանակը՝ «Լա իլահէ իլլ–Ալլահ, Մօհամմեդեն ռեսուլ Ալլահ»*. *իսկ ոմանց վրայ ալ գրած է, նոյնպէս արաբական տառերով, քրիստոնէութեան նշանախօսը, ինչպէս որ գրած էր Ահմադ Թագուդար. «Յանուն Հօր, և Որդւոյ, և Հոգւոյն Սրբոյ. միակ Աստուած. +»: Ասկէ կը հետեւի, թէ իր գահակալութեան սկիզբները՝ իր նախորդներուն նման՝ քրիստոնեայ էր նաեւ Ղազան Մահմուդ, բայց յետոյ՝ իր բանակով միասին՝ ընդունած է մահմեդականութիւնը:*

*(Եւ սակայն, – թէեւ մեր նիւթէն դուրս, – գէթ փակագծի մէջ պէտք եմ ըսել, որ Ահմադ Թակուդարէ դար մը յառաջ մահմեդական զանազան վեհապետներու կողմէ՝ գիտակցաբար կամ թէ անգիտակցաբար՝ գործածուած է քրիստոնէութեան նշանը, դրամներու վրայ. այսպէս՝ Կարնոյ Սալդուկեաններէն ՙԱզզ էդ–դին Սալդուկ իբն ՙԱլիի* (1145–1174) *կոխած պղնձէ անթուական մէկ դրամին վրայ կը տեսնենք. — Ա. կողմը՝ մէջտեղը, պատուանդանի վրայ, երկթեւեան խաչ մը, զոր բռնած են լուսապսակ սուրբ մը (թերեւս Քրիստոս ինքն) և թագաւոր մը: Բ կողմը՝ ՙԱզզ էդ–դինի արաբատառ գրուած անունն ու տիտղոսը: — Գիտենք նաեւ, թէ Դանիշմէնդեաններէն Մօհամմէդի՝ Հիջրի* 558*ին* (1162) *կոխած մէկ պղնձադրամին վրայ գծուած է. — Ա. կողմը՝ պատկերը Քրիստոսի, որ ձեռքը դրած է թագաւորի մը գլխուն վրայ. Բ կողմը՝ Մօհամմէդ իբն Ջի էլ–կարնէյնի արաբատառ անունն ու տիտղոսը):*

*Հիջրի* 701 (1301) *թուին Իլխանեան թուական մը հաստատուած է վերոյիշեալ Ղազան Մահմուդ խանի կողմէ:*

*Նոյն վեհապետն Հիջրի* 696 (1296) *թուին զանազան դրամներ տպած է Եւդոկիոյ և Սեբաստիոյ մէջ. իսկ* 698*ին* (1298), 700*ին* (1300) *և* 722*ին* (1322)*՝ Խլաթայ մէջ.* 701*ին* (1301)*՝ Արճէշ. նոյնպէս* 698*ին* (1298), 699*ին* (1299), 700*ին* (1300) *և* 701*ին* (1301)*՝ Երզնկայի մէջ.* 699*ին* (1299)*՝ Սեբաստիոյ մէջ. դարձեալ* 699*ին* (1299) *և* 701*ին* (1301)*՝ Կարնոյ մէջ. կրկին* 699*ին* (1299) *և* 701*ին* (1301)*՝ Խարբերդի մէջ.* 700*ին* (1300) *և* 721*ին* (1321)*՝ Մարաղայի մէջ.* 702*ին* (1302), 719*ին* (1219), 720*ին* (1320) *և* 746*ին* (1345)*՝ Պարտաւի մէջ.* 733*ին* (1332) *Բաբերդի մէջ արծաթադրամ մը, իսկ յաջորդ տարին՝ ոսկեդրամ մը.* 746*ին* (1345) *փայտակարանի (= Բայլագան) մէջ՝ արծաթ մը տպած է: Ասոնցմէ զատ՝ Կեսարիոյ և Մելիտինէի մէջ ալ դրամներ տպած է, բայց անոնց թուականներն անծանօթ են ինձ, բաց ի Նախիջեւանի մէջ տպած արծաթ դրամէն, որուն թուականն է* 701 (1301)*:*

Մեզ՝ Հայոցս համար, սակայն, ամենէն կարեւորը՝ խնդրոյ նիւթ եղող Ղազան Մահմուդի ارمينية (= Արմինիյա = Հայաստան) վերտառութեամբ տպած արծաթէ մէկ դրամն է, որ Հիջրի 700 (1300) թուականը կը կրէ, առանց փողերանոցի վայրին յիշատակութեան. բայց գիտենք, թէ Անիի մէջ 700ին (1300) և 701ին (1301) դրամներ կոխած է։

ՕԼՋԱՅՏՈՒ ԽՈՒԴԱԲԷՆԴԷ ՄՕՀԱՄՄԷԴ–ԽԱՆ (1304–1316) դրամներ տպած է Սեբաստիոյ մէջ՝ Հիջրի 709ին (1309), 710ին (1310), 714ին (1314) և 715ին (1315). Կեսարիոյ մէջ՝ 712ին (1312) և 714ին (1314). Կարնոյ մէջ՝ 705ին (1305) և 714ին (1314). Երզնկայի մէջ՝ 707ին (1307), 710ին (1310), 711ին (1311), 714ին (1314) և 715ին (1315). Նախիջեւանի մէջ՝ 714ին (1314). Առանի մէջ՝ 715ին (1315)։ Ունի նաեւ Խլաթայ և Ալայիոյ մէջ տպած դրամներ, ինչպէս նաեւ «Արմինիյա» վերտառութեամբ 710 (1310) թուականը կրող դրամ մը, և «Անի» (انى) անունով 707ին (1307) տպած ուրիշ դրամ մը։

ԱԲՈՒ–ՍԱՙՅԻԴ ԲԱՀԱԴՈՒՐ–ԽԱՆԻ (1316–1335) Հայաստանի և իր սահմանակից վայրերուն մէջ հաստատած փողերանոցներէն արտադրած դրամները տպուած են. Սեբաստիա՝ Հիջրի 717ին (1317), 720ին (1320), 721ին (1321), 725ին (1324), 726ին (1325), 727ին (1326), 729ին (1328), 731ին (1330) և 733ին (1332). Երզնկայ՝ 717ին (1317), 719ին (1319), 720ին (1320), 722ին (1322), 724ին (1323), 726ին (1325), 727ին (1326), 729ին (1328), 731ին (1330), 733ին (1332) և 734ին (1333). Մարաղայ՝ 729ին (1328) և 731ին (1330). Խոյ՝ 720ին (1320), 727ին (1326) և 74..ին (13..). Սալմաս՝ 719ին (1319). Խլաթ՝ 722ին (1322), 723ին (1323), 724ին (1323), 727ին (1326), 729ին (1328) և 73..ին (133..). Արճէշ՝ 719ին (1319), 733ին (1332) և 74..ին (133..). Վան՝ 730ին (1329). Նախիջեւան՝ 727ին (1326), 729ին (1328), 733ին (1332) և 74..ին (133..). Երեւան՝ ոսկեդրամ մը, 733ին (1332). Պարտաւ՝ 721ին (1321), 729ին (1328) և 73..ին (133..). Վաղարշակերտ (ولاشجرد)՝ 728ին (1327). Կարին՝ 721ին (1321), 722ին (1322), 725ին (1324), 727ին (1326), 729ին (1328), 731ին (1330), 733ին (1332) և 734ին (1333). Արծն (ارزن)՝ թուականը մաշած է. Բաբերդ՝ 722ին (1322), 724ին (1323ինը՝ ոսկեդրամ), 727ին (1326), 729ին (1328), 730ին (1329), 731ին (1330), 732ին (1331), 733ին (1332), 734ին (1333) և 736ին (1335). Բալախոռ՝ 722ին (1322). Դերջան՝

725ին (1324)․ Մելիտինէ՝ 730ին (1329), 732ին (1331) և 734ին (1333)․ Եւդոկիա՝ 722ին (1322), 727ին (1326), 729ին (1328), 731ին (1330) և 734ին (1333)․ Կեսարիա՝ 722ին (1322), 727ին (1326), 728ին (1327), 730ին (1329) և 734ին (1333)․ Առան՝ 715ին (1315), 717ին (1317), 727ին (1326), 729ին (1328), 730ին (1329) և 773ին (1332)․ Հոնի՝ 727ին (1326) և 729ին (1328)․ Անի՝ 725ին (1324)։

ՄՕՀԱՄՄԷԴ–ԽԱՆ (1335–1337), որ օրինաւոր երկու գահակալներու դէմ ապստամբելով՝ Իլխանեան իշխանութեան ղեկը ձեռք առած էր Կարնոյ մէջ, Հիջրի 737 (1336) թուին, 738ին (1337)՝ իր անունով արծաթ դրամներ տպած է Կարնոյ, Արծնի, Արճէշի, Խլաթի, Սեբաստիոյ և Նախիջեւանի մէջ։ Նոյն թուականը կրող ոսկեդրամ մըն ալ տպած է Պարտաւի մէջ։ Ասոնցմէ զատ՝ Հիջրի 737 (1336) թուին դրամ մըն ալ տպած է Անիի մէջ, հետեւեալ խորագրով․

السلطان الاعظم محمد خان الله ملكه

այսինքն՝ «Գերագոյն սուլտանն Մօհամմէդ–խան․ Թող Աստուած պահպանէ իր իշխանութիւնը»։ Իսկ շուրջը՝

ضرب انى سنة سبع و ثالث ين و سبعماية

այսինքն՝ «Տպուած յԱնի, 737 թուին», այն է՝ 1336։

ԹԱՂԱ–ԹԻՄՈՒՐ (1338–1341) Երզնկայի մէջ տպած դրամին թուականը մաշած է․ Կեսարիոյ մէջ դրամ մը տպած է Հիջրի 739ին (1338), Մարաղայի մէջ ալ՝ 743ին (1342)։ Իսկ անոր մրցակիցը՝ ԱԶԶ ԷԴ–ԴԻՆ ՋԷՀԱՆ–ԹԻՄՈՒՐ (1338–1339), Երզնկայի և Խլաթի մէջ իր անունով դրամներ տպած է Հիջրի 740 (1339) թուականին։ Ուրիշ մրցակից մը՝

ՍԱԹԻ–ԲԷԿ (1337–1340), Պարտաւի մէջ 738ին (1337), Խլաթի մէջ, Փայտակարանի, Խոյի և Կարնոյ մէջ 739ին (1338) արծաթադրամներ տպած է։ Բաբերդի մէջ ալ նոյն տարին (1338), ինչպէս նաեւ 740ին (1339) դրամներ տպած է։ Իսկ 741ին (1340) ուրիշ արծաթադրամ մը տպած է Արծնի մէջ։

ՍՈԼԷՅՄԱՆ–ԽԱՆ (1339–1350) տասը տարուան իշխանութեան միջոցին՝ զանազան տեղ դրամ տպած է, ինչպէս Անիի մէջ՝ 743ին (1342) և 748ին (1347)․ Նախիջեւանի մէջ՝ 741ին (1340)․ Կարնոյ մէջ՝ 741ին (1340), 743ին (1342) և 744ին (1343)․ Խլաթի մէջ եւս՝ 741ին (1340) և 743ին (1342)․ Սեբաստիոյ մէջ՝ 742ին

(1341), 747ին (1346), 748ին (1347) և 751ին (1350)· Կեսարիոյ մէջ՝ 745ին (1344)· Երզնկայի մէջ՝ 743ին (1342), 747ին (1346) և 750ին (1349)· Բաբերդի մէջ՝ 741ին (1340), 745ին (1344) և 748ին (1347)· Մարաղայի, Խոյի, Պարտաւի և Սալմասի մէջ՝ 740ին (1379)· դարձեալ Պարտաւի, Փայտակարանի, Սալմասի և Նախիջեւանի մէջ՝ 741ին (1340)· կրկին Պարտաւի մէջ՝ 742ին և 743ին (1341 և 1342)· Պարտաւի, Անիի և Նախիջեւանի մէջ՝ 744ին (1343)։

ՆՈՒՇԻՐՈՒԱՆԻ կամ ԱՆՈՒՇԻՐՈՒԱՆԻ (1344) անունով ալ արծաթադրամներ գիտենք Պարտաւի, Գանձակի, Անիի և Նախիջեւանի մէջ՝ 745ին (1344) և 746ին (1345)· Առանի մէջ՝ 746ին (1345) և 750ին (1349)· դարձեալ Անիի մէջ՝ 746ին (1345) և 747ին (1364)· այս վերջին տարին՝ Բաբերդի, Երեւանի, Վանի, Պարտաւի, Սալմասի, Նախիջեւանի մէջ. իսկ 748ին (1347)՝ Սալմասի և Պարտաւի մէջ, 749ին (1348)՝ Մարաղայի մէջ· 750ին (1349)՝ Գանձակի, Պարտաւի, Մարաղայի, Ուրմիոյ, Փայտակարանի, Սալմասի, Նախիջեւանի և Վանի մէջ տպուած։

---

## ՋԷԼԱՅԻՐԵԱՆՔ [Les Djélaïrides]

Ջէլայիրեան քանի մը սուլտանէ դրամ ունինք. —

ՇԷՅԽ ՀԱՍԱՆ (1335–1356) Հիջրի 757 (1356) թուին Խոյի, Պարտաւի և Առանի մէջ դրամներ տպած է։ Անիի մէջ ալ դրամ մը տպած է 758ին (1357)։

ՇԷՅԽ ՕՎԷՅՍ ԲԱՀԱԴՈՒՐ (1356–1373) Հիջրի 766 (1364) թուին արծաթադրամ մը տպած է Նախիջեւանի մէջ. իսկ 769ին՝ (1367) դարձեալ արծաթներ տպած է Նախիջեւանի մէջ· 774ին՝ (1372) Խոյի մէջ։ Մաշած թուականով արծաթներ ալ ունի, Պարտաւի մէջ տպուած։ Շէյխ Օվէյս՝ Պարտաւի ու Նախիջեւանի մէջ տպած կրկնագիր արծաթադրումներ ալ ունի, որոնց թուականներն անընթեռնլի են։

ՋԷԼԱԼ ԷԴ–ԴԻՆ ՀՕՍԷՅՆ Ա. (1374–1382) Վանի մէջ արծաթադրամ մը տպած է Հիջրի 78..ին (138..)· իսկ Անիի մէջ արծաթադրամներ տպած է 777ին (1375) և 779ին (1377)· Խոյի, Մարաղայի, Նախիջեւանի, Ուրմիոյ, Սալմասի և Պարտաւի մէջ՝ 777ին (1375)· ուրիշ արծաթ մը՝ 778ին (1376)՝ դարձեալ Մարաղայի մէջ·

ուրիշներ՝ 779ին (1377)՝ Խոյի, Պարտաւի և Նախիջեւանի մէջ. ինչպէս նաեւ 780ին (1378) Ուրմիոյ, Խոյի և Սալմաստի մէջ։

ՂԻՅԱՍ ԷԴ-ԴԻՆ ԱՀՄԷԴ ԲԱՀԱԴՈՒՐ (1382-1385 և 1404-1409) իր արծաթեայ անթուակիր մէկ դրամին վրայ դրած է «Արմինիյա» անունը։ Այս դրամը՝ որ Անիի մէջ գտնուած է, տպուած կը կարծուի Բագրատունեաց ոստանին մէջ, երբ տակաւին «Հայոց մայրաքաղաք»ի իր հմայքը չէր կորսուած բոլորովին։

Այս սուլտանն ունի նաեւ Վանի, Խոյի, Երզնկայի ու Երնջակի մէջ տպած արծաթադրամներ, որոնց թուականները՝ իմ տեսած օրինակներուս մէջ՝ մաշած են, բաց ի Վան տպուած մէկ հատէն՝ որուն թուականն է 784 (1382), ինչպէս նաեւ Արճէշի մէջ(?) տպուած արծաթադրամէ մը, որուն թուականը՝ 809 (1406) կ'ենթադրուի։

---

## ԹԻՄՈՒՐԵԱՆՔ [Les Timourides]

Թիմուրեաններու Մոնղոլ Հարստութեան (1369-1505) անդամները՝ Ասիոյ արեւմտեան մասին մէջ, Լէնկ-Թիմուրի մեռնելէն ետք, ասոր չորրորդ որդին՝

ՄԻՐԶԱ ՄՈՒ՛ՅԻՆ ԷԴ-ԴԻՆ ՇԱՀ-ՌՈՒԽ (1404-1447) Վանի մէջ արծաթադրամ մը տպած է Հիջրի 828 (1424) թուին. իսկ Երզնկայի մէջ նոյնպէս արծաթադրամ մը տպած է Հիջրի 845ին (1441)։ Մարանդի մէջ ալ պղնձադրամներ տպած է 832ին (1428)։

Մահմուդի և Թիմուրլէնկի (1388-1403) միացեալ անունով արծաթադրամ մըն ալ ծանօթ է, տպուած Խարբերդի մէջ։

---

## ՄՕԶԱՖՖԵՐԵԱՆՔ [Mozafférides]

Մօզաֆֆէրեանները՝ Իլխանեաններու վերջին սուլտանին՝ Աբու Սա՛իդի մահէն ետք անկախութիւն հռչակելով իշխած են Ֆարսիստանի, Իրաքի և Ատրպատականի վրայ, 1318 թուականէն մինչեւ 1392։

*Ասոնցմէ՝*

ՋԷԼԱԼ ԷԴ–ԴԻՆ ՇԱՀ–ՇՕՋԱ՛ (1357–1384) 767*ին* (1365) *արծաթ դրամ մը տպած է Նախիջեւանի մէջ. իսկ* 76..*ին* (136..) *ուրիշ արծաթադրամ մը՝ Մարաղայի մէջ։*

*ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.* — **Stanlay Lane Poole,** Catalogue of Oriental Coins in the Brit. Mus., t. VI. The Coins of the Mongols in the Br. Mus. London, 1881. — *Նոյնը,* t. VII. The coinage of Bukhárá (Transoxiana) in the Br. Mus. t. VIII, From the time of Timur to the present day. London, 1882. — Troisième lettre de M. le Général **J. de Bartholomaei** à M. F. Soret. Bruxelles, 1862. — *Նոյնը,* Quatrième lettre. Bruxelles, 1864.



62. ՀՈՌՈՄՈՍ· – Աշոտ Ողորմածի շիրիմը (?)

## Բ·

# ՓՈՔՐ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՑ ՇՐՋԱՆ

[Les Petits États]

(879-1508)

1· Սաջեաններ. – 2· Սալարեաններ. – 3· Համդանեաններ. – 4· Նոր-Մերվանեաններ. – 5· Շեդդադեաններ. – 6· Դանիշմէնդեաններ. – 7· Մենկուջեաններ. – 8· Սալդուկեաններ. – 9· Խարբերդի և Կէյֆայի Որդոկեաններ. – 10· Շահի-Արմէններ. – 11· Էյուբեաններ. – 12· Արտենեաններ. – 13· Կարամանք. – 14· Կադը-Օղլուներ. – 15· Կարա-Կոյունլուներ. – 16· Ակ-Կոյունլուներ, և 17· Բաղէշի Էմիրներ։

*Այս փոքր իշխանութիւնները, որոնք հաստատուած էին Արեւմտեան Ասիոյ մասնաւոր կերպով Փոքր Ասիոյ և Հայաստանի մէջ, մեր ուշադրութեան առարկայ ընելու շատ մը պատճառներ ունինք։ Ասոնց՝ դրամագիտապէս կատարած դերին վրայ համառօտակի ակնարկ մը նետելով պիտի անցնիմ, յիշելով միայն գլխաւոր գիծերը, ամբողջացնելու համար ներկայ աշխատութիւնս։*

## 1. ՍԱՋԵԱՆՆԵՐ [Les Sadjides]

Սաջիներու (879–930) – Պարսկաստանի և Տրանսոքսիանայի նախկին փոքր իշխանութեանց այս հարստութեան – պատկանող սուլտաններէն՝

ՄՕՀԱՄՄԷԴ-ԱՖՇԻՆ (889-900) Հիջրի 289 (900) թուականին արծաթ դրամ մը տպած է Արմինիյա վերտառութեամբ։

ԵՈՒՍՈՒՖ ԻԲՆ ԴԻՎԴԱԴ (900–927) արծաթ դրամ մը տպած է նոյնպէս Արմինիյա մակագրութեամբ, Հիջրի 310–315 (922–927) թուականներուն։ Պարտաւի մէջ ալ արծաթ դրամներ տպած է 294ին (906) և 303ին (915). իսկ Մարաղայի մէջ՝ 296ին (908)։

---

## 2. ՍԱԼԱՐԵԱՆՆԵՐ [Les Salarides]

Ատրպատականի թիւրքմէն ամիրաներէն Սալար Մէրզուպանի մեռնելէն ետք՝ իր երկու որդիներուն մէջ գժտութիւն ինկաւ, և իրարմէ բաժնուեցան։ Ասոնցմէ մին՝

ԻԲՐԱՀԻՄ ԻԲՆ ԷԼ-ՄԷՐԶՈՒՊԱՆ Հիջրի 330ին (941) արծաթ դրամ մը տպած է Պարտաւի մէջ, հաստատուելով ի Հայաստան. իսկ 347ին (958) ոսկեդրամ մը տպած է Մարաղայի մէջ։

---

## 3. ՀԱՄԴՕԱՆԵԱՆՆԵՐ [Les Hamdanides]

Համդանեաններու Մօսուլի ճիւղէն՝

ՆԱՍԸՐ ԷԴ-ԴԱՈՒԼԱ ԱԲՈՒ-ՄՕՀԱՄՄԷԴ Հիջրի 350ին (961) Նփրկերտի մէջ արծաթ դրամ մը տպած է։ Նոյնպէս՝

ՕԴԴԷՏ ԷԴ-ԴԱՈՒԼԱ ԱԲՈՒ ՏԱՀԼԻԲ ՖԱԴԼ ԱԼԼԱՀ ԷԼ ԳԱԴԱՆՖԷՐ (968–979) Նփրկերտի մէջ 362ին (972) արծաթադրամ մը տպած է. իսկ 363ին (973) ուրիշ արծաթ մը տպած է Նիսիբինի մէջ։

Համդանեաններու Հալէբի ճիւղէն՝

ՍԷՅՖ ԷԴ-ԴԱՈՒԼԱ ԱԲՈՒԼ ՀԱՍԱՆ ԱԼԻ (944–967) Մսիսի մէջ արծաթ դրամ մը տպած է Հիջրի 35.. (96..) թուին. իսկ Նփրկերտի մէջ նոյնպէս արծաթադրամ մը տպած է 350ին (961)։

---

## 4․ ՆՈՐ-ՄԵՐՎԱՆԵԱՆՆԵՐ [Les Mervanides]

*Նոր–Մերվանեանները՝ Արաբացոց Էմէվիյէ հարստութեան մէկ ճիւղը կազմող Մերվանեանները չեն, այլ* 984 *թուականէն մինչեւ* 1100 *թուականն՝ Ամիդի, Նփրկերտի և Խլաթի վրայ տիրապետող քրդական ինքնիշխան էմիրներ են, որոնցմէ՝*

ԱԲՈՒ ՙԱԼԻ ՀԱՍԱՆ (990–997) *Նփրկերտի մէջ արծաթ դրամ մը տպած է Հիջրի* 385*ին* (995)․ *իսկ Ամիդի մէջ՝* 384*ին* (994)։

ՄՕՀԱՄՄԷԴ ԷԴ–ԴԱՈՒԼԱ ԱԲՈՒ–ՄԱՆՍՈՒՐ ՍԱՅԻԴ ԲԷՆ ՄԵՐՈՒԱՆ (997–1010) *Հիջրի* 387*ին* (997), 390*ին* (999), 391*ին* (1000), 395*ին* (1004), 396*ին* (1006), 398*ին* (1007) 399*ին* (1008), 400*ին* (1009)՝ *Նփրկերտի մէջ, իսկ* 401*ին* (1010) *Նփրկերտի և Ամիդի մէջ արծաթ դրամներ տպած է*։

ԱԲՈՒ ՇՕՋԱ ՊԵՐՎԻԶ ԲԷՆ ՄՕՀԱՄՄԷԴ (1010–1011) *ես Նփրըկերտի մէջ արծաթ դրամ մը տպած է* 1011*ին*։ *Նոյնպէս՝*

ՆԱՍՐ ԷԴ–ԴԱՈՒԼԱ ԱԲՈՒ–ՆԱՍՐ ԱՀՄԷԴ (1010–1061)․ *Խլաթի մէջ արծաթ դրամներ տպած է Հիջրի* 406 (1016) *և* 410 (1019) *թուականներով*։ *Ամիդի մէջ ալ արծաթադրամներ տպած է նոյն* 410*ին* (1019)։ *Իսկ Նփրկերտի մէջ տպած արծաթ դրամները հետեւեալ թուականները կը կրեն*․ 401 (1010), 402 (1011), 403 (1012), 404 (1013), 405 (1014), 407 (1016), 409 (1018), 410 (1019), 411 (1020), 412 (1021) *և* 416 (1025)։

---



63. ԱՆԻ. – Պարիսպներն և Աւագ դուռը.

## 5. ՇԵԴԴԱԴԵԱՆՆԵՐ [Les Cheddadiens]

*Շեդդադեաններն՝ սկիզբները կը տիրապետէին Առանի վրայ,* 951 *թուականէն մինչեւ* 1076։

*Առոնք՝* 1076 *թուին՝ Սելճուկեաններու կողմէ նուաճուեցան, բայց՝ մինչեւ* 1161 *թուականը՝ մնացին Անիի մէջ, զայն գնած ըլլալով Սելճուկեաններէ։ Այս սեպհականութեան իրաւունքով՝ Շեդդադեանները բացարձակ տէրերը դարձան Անիի, և՝ իբրեւ քաղաքին էմիրները՝ բնակեցան հոն։*

*Առոնցմէ փատլուն Ա.* (1030–?) *զօրանալով՝ տիրած է Խաչէնի, Գորոզի ու Սեւորդեաց, և՝ Ջորոյգետոյ Գագիկ թագաւորին, Աղուանից Կիւրիկէ թագաւորին ու Վրաց Բագարատ թագաւորին հետ պատերազմելով՝ նեղը դրած է զանոնք. և՝ օրին մէկն ալ՝ գրաւած է Դուինը, ու Հայոց վրայ «երեքհարիւր հազար դրամ» հարկ դրած է*[1]*։*

*Ի՞նչ կ'արժէր «դրամ»ը (արաբերէն* درهم *= յունարէն* δραχμή, Drachme)*, որ անշուշտ վճարուեցաւ հրապարակի վրայ շրջաբերութեան մէջ գտնուող արաբական դրամով։ Այն ատեն – և նոյն իսկ յետոյ – «դրամ»ին արժէքն էր՝ մօտաւորապէս* 85 *սանտիմ ոսկեդրամ։*

*(Անիի արձանագրութեանց մէջ ալ «դրամ»ի և «դահեկան»ի*

---

1. *Հաւաքումն Պատմութեան* ՎԱՐԴԱՆԱՅ *Վարդապետի. եր.* 100–101։ *Վենետիկ,* 1862։

խօսք կ'ըլլայ, զոր տես իմ Հայերէն արձանագրութիւնք Անւոյ, Բագնայրի և Մարմաշինու գործիս մէջ, Թիւ 5, 22, 23, 186 և 222)։

Շեդդադեաններէ հայագրամ չենք գիտեր։

---

## 6. ԴԱՆԻՇՄԷՆԴԵԱՆՆԵՐ [Les Danichmendides]

Դանիշմէնդեանները՝ (ըստ մեզ՝ Դանիշման) Սեբաստիոյ մէջ, Մելիտինէի մէջ, Երզնկայի մէջ և այլուր հաստատուած Թիւրքմէն փոքր իշխանութիւններ են (1063-1177), որոնց գլխաւոր ճիւղերն են.

ա. ՍԵԲԱՍՏԻՈՅ ԴՐԱՆԻՇՄԷՆԴԵԱՆՆԵՐԸ (1063?-1174), տուած են եօթը գահակալ։

բ. ՄԵԼԻՏԻՆԷԻ ԴԱՆԻՇՄԷՆԴԵԱՆՆԵՐԸ (1142-1177), տուած են հինգ գահակալ։

Այս երկու Դանիշմէնդեաններու դրամներէն ոմանց վրայի պատկերներն ու գրութիւնները մեզ կը յիշեցնեն Մոնղոլեան Շրջանի դրամներէն մէկ քանին։ Այսպէս, օրինակի համար, Սեբաստիոյ Դանիշմէնդեաններէն՝

ՄԱԼԷՔ ՂԱԶԻ ԳԻՒՄԻՒՇԹԷԿԻՆԻ (1080-1134) դրամներուն առաջին երեսին վրայ կը տեսնենք Քրիստոսի խաչակիր լուսապսակ կիսանդրին, երկու քովերը՝ յունարէն տառերով՝ IC և XC (= Յիսուս Քրիստոս). իսկ երկրորդ երեսը՝ դարձեալ յունական տառերով՝

Ο ΜΕΓΑC ΑΜΗΡΑC ΑΜΗΡ ΓΑΖΗ

«Մեծ ամիրան՝ Ամիր Ղազի»։

Ասոր որդիներէն մին իշխած է Սեբաստիոյ մէջ, իսկ միւսը՝ Մելիտինէի մէջ։

ա. Սեբաստիոյ Դանիշմէնդեաններէն՝

ՄՕՀԱՄՄԷԴ ԻԲՆ ՂԱԶԻ (1134-1142), որդին՝

ՆԻԶԱՄ ԷԴ-ԴԻՆ ԵԱՂԸ ԲԱՍԱՆ (1142-1167), և յաջորդը՝

ʽԱՄԱԴ ԷԴ-ԴԻՆ ԴՈՒ'Լ ՆՈՒՆ (1142 և 1174) նոյնտեսակ յունատառ պղինձ դրամներ տպած են Սեբաստիոյ մէջ։

բ. Մելիտինէի Դանիշմէնդեաններէն՝

ԴՈՒ'Լ ԿԱՐՆԷՅՆԻ (1152-1160) Մելիտինէի մէջ տպած պղնձադրամներն ալ յունատառ և միանգամայն արաբատառ են, այսպէս՝ օրինակի համար՝ առաջին երեսին վրայ.

ΙΝΔΙΚΤΙωΝΟC ΔЄΥΤΕΡΙC «= Երկրորդ ինդիկտիոնին».

երկրորդ երեսին վրայ՝

الواثق ذو القرنين بن عين الدولة

(Էլ վասըկ Զու՚լ-Կարնէյն բինի Այն-ուդ-Դաուլա)

այսինքն՝ «(Աստուծոյ) ապաւէնն Զու՚լ կարնէյն, որդի Այն-ուդ-Դաուլայի». իսկ շուրջը՝

O ΜΕΓΑϹ ΑΜΗΡΑϹ ΔΟV̄ΛΧΑΡΝᾹΙΝ

այն է՝ «Մեծ ամիրան՝ Զուլկարնէյն»։

Մելիտինէի մէջ յունատառ և քրիստոնէավայել պղինձ դրամներ տպած են նաեւ Դանիշմէնդեաներէն ՄՕՀԱՄՄԷԴ ԲԷՆ ԶՈՒ՚Լ ԿԱՐՆԷՅՆ (1160-1169) և ԿԱՍԸՄ (1169-1171)։ Իսկ Ամիդի մէջ՝ ՆԱՍԸՐ ԷԴ-ԴԻՆ ՄԱՀՄՈՒԴ (1200-1222) պղնձադրամ մը տպած է 617ին (1220)։

*

* *

Դանիշմէնդեաններու ուսումնասիրութիւնը՝ մեր ազգային պատմութեան տեսակէտով ալ խիստ շահեկան է, վասն զի անո՛նք են որ նահատակեցին շառաւիղներն Անիի և Կարսի Բագրատունի թագաւորներու, ինչպէս նաեւ Արծրունեաց սերունդին, 1080 թուին, վերջ տալով Պիզուի, Ծամնդաւի ու Սեբաստիոյ անուանական հայ թագաւորութեանց, որոնց տեղ հաստատուեցան իրենք՝ Դանիշմէնդեանք։ Ասոնք երկար ժամանակ մաքառեցան Սելճուկներու դէմ, առանձինն տիրապետելու համար Փոքր Հայոց վրայ. իսկ երբ որ իրենց մրցակից Սելճուկները վանեցին հեռացուցին զիրենք այն կողմերէն, ասոնք վերոյիշեալ Մալէք Ղազի Գիւմիւշթէկինի առաջնորդութեամբ յարձակեցան Մելիտինէի վրայ, որ՝ հայազգի հերոս Փիլարետի մահուընէն ետք՝ անցած էր ուրիշ Հայու մը, Գաբրիէլի ձեռք։ Բայց այն անմեղնելու նահատակութիւնը բախտաւոր չըրաւ զիրենք, որովհետև Սելճուկեանց սուլտանը՝ Քըլըճ Արսլան Բ. (1156-1192), 1177ին վերջ տուաւ Դանիշմէնդեաններու արիւնարբու իշխանութեան։

(Բար Հեբրէոսի նայելով՝ Հայե՛րն էին, որ Դանիշմէնդեանները Մելիտինէ հրաւիրեցին[1]։ Այս ամբաստանութիւնը բոլորովին սխալ է)։

1. ԲԱՐ ՀԵԲՐԷՈՍ, Թրգմ. Բրունսի և Կիրշի, եր. 289։

## 7. ՄԵՆԿՈՒՋԵԱՆՆԵՐ [Les Menkoudjides]

*Մենկուջեանները կամ Բէնի Մենկուջ ընտանիքն՝ Երզնկայի մէջ անկախ իշխանութիւն մը հաստատած Դանիշմէնդեաններ են, և իշխած են հոն 1071 թուականէն մինչեւ 1227։ Այս թուականին Իկոնիոնի (= Քոնիա) Սելճուկեաններէն ՙԱլա էդ-դին Քայքօբադ Ա. սուլտանն (1219-1236) Երզնկան գրաւելով՝ վերջ տուած է Մենկուջներու իշխանութեան։*

ՖԱԽՐ ԷԴ-ԴԻՆ ԲԱՀՐԱՄ-ՇԱՀ (1167-1225?) *Երզնկայի մէջ չորս տեսակ պղնձէ դրամ տպած կ՚երեւայ, Հիջրի* 570*ին* (1174), 579*ին* (1183), 599*ին* (1202) *և* 616*ին* (1219)։

---

## 8. ՍԱԼԴՈՒԿԵԱՆՆԵՐ [Les Saldoukides]

*Սալդուկեանները* 1145 *թուին Կարնոյ մէջ հաստատուած անկախ իշխաններ են, որոնց տիրապետութիւնը տեւած է մինչեւ* 1200 *թուականը, որ ժամանակ Սելճուկեան սուլտաններէն Ռոկն էդ-դին Սուլէյման Բ. Կարինը Սալդուկեաններու ձեռքէն առաւ և իր եղբօր՝ Թօղրուլ-շահին տուաւ, որ անկախաբար իշխեց հոն և իր ու քաղաքին անուններով դրամներ տպեց մինչեւ իր մահը* (1225)։

---

## 9. ՈՐՏՈԿԵԱՆՆԵՐ [Les Ortokides]

### Ա. — ԽԱՐԲԵՐԴԻ ՈՐՏՈԿԵԱՆՆԵՐ

ՙԱՄԱՏ ԷԴ-ԴԻՆ ԱԲՈՒ ԲԷԿՐ (1185-1203) *Խարբերդի մէջ* 583*ին* 1187), 585*ին* (1189), 588*ին* (1192) *և* 592*ին* (1195) *պղինձ դրամներ տպած է։*

### Բ. — ԿԷՅՖԱՅԻ ԵՒ ԱՄԻԴԻ ՈՐՏՈԿԵԱՆՆԵՐ

ՄԱՀՄՈՒԴԻ *կողմէ Ամիդի մէջ տպուած երեք պղնձադրամներ ծանօթ են ինձ. մին՝ Հիջրի* 614 (1217) *թուականը կը կրէ, միւսը՝* 616 (1219), *իսկ երրորդը՝* 617 (1220) *թուականը։*

ՄՕԴՈՒԴԻ կողմէ նոյն Ամիդի մէջ տպուած պղնձադրամ մըն ալ ծանօթ է, Հիճրի 621 (1224) Թուականով։

Այս Օրտուկեաններէն անթուական և անանուն պղնձադրամ մը կայ, որուն մէկ կողմը ցրուշմուած է Քրիստոսի կիսանդրին։

---

## 10. ՇԱՀԻ-ԱՐՄԷՆՆԵՐ [Les Chah-Armens]

Ասոնք՝ 1100 Թուականին՝ Նոր-Մերվանեաններու ձեռքէն Խլաթը կորզելէ ետք, «Շահի-Արմէն» (= Հայոց Թագաւոր) տիտղոսն առին և անկախաբար տիրապետեցին հոն, մինչև 1207։

Շահի-Արմէններու հարստութեան պատկանող իշխաններն են.

| | |
|---|---|
| Սոկման Ա. Կոթբի . . . . . . | 1100-1112 |
| Դահար էդ-դին Ա. Իբրահիմ . . . | 1112-1127 |
| Ահմէդ . . . . . . . . | 1127-1128 |
| Սոկման Բ. Նասըր էդ-դին Մօհամմէդ . . | 1128-1185 |
| Սէյֆ էդ-դին Բէկթիմուր . . . . | 1185-1193 |
| Բէդր էդ-դին Խաշղաշ Ակ-Սանկոր . . | |
| Հէզարդինարի Դահար էդ-դին Բ. . . | 1193-1198 |
| Կութլուղ (բռնակալ) . . . . | 1198 |
| Մալէք էլ-Մանսուր Մօհամմէդ . . . | 1198-1206 |
| Ագզ էդ-դին Բալլաբան (բռնակալ) . . | 1206-1207 |

Տէրութեան հիմնադիրն եղած է Սոկման Ա. Կոթբի։

Սոկման Բ. Նասըր էդ-դին Մօհամմէդի օրով (1128-1185) Սասունի Հայերը, որոնք՝ դարերէ ի վեր՝ անկախ իշխանութիւն մը կը վայելէին հոն, Նփրկերտի Թուրք ամիրային խստութիւններէն ազատելու համար՝ 1173/4ին իրենց երկիրը յանձնեցին այս Սոկման իշխանին։

ՍԷՅՖ ԷԴ-ԴԻՆ ԲԷԿ-ԹԻՄՈՒՐ (1185-1193) Խլաթի մէջ պղնձադրամ մը տպած է։ Այսչափ միայն գիտեմ։

---

## 11. ԷՅՈՒԲԵԱՆՆԵՐ [Les Éyoubides]

### Ա. — ՆՓՐԿԵՐՏԻ ԷՅՈՒԲԵԱՆՆԵՐ

*Նփրկերտի էյուբեանները* (1186-1259), *իրենց կարգին*, 1207 *թուին խլաթը գրաւելով՝ հաստատուեցան հոն մինչեւ* 1231․ *իսկ* 1233*ին՝ վերջնականապէս Սելճուկեաններու ձեռք անցաւ քաղաքը։ Այս հարստութենէն՝*

ՙԱԴԻԼ ՍԷՅՖ ԷԴ–ԴԻՆ (1191-1201) *պղնձէ դրամ մը տպած է Նփրկերտի մէջ, Հիջրի* 597*ին* (1200)։

ԱՎՀԱՏ ՆՕՋՄ ԷԴ–ԴԻՆ (1201-1210) *նոյնպէս պղնձէ դրամներ տպած է Նփրկերտի մէջ, Հիջրի* 599*ին* (1202), 600*ին* (1203), 601*ին* (1204) *և* 612*ին* (1215)։

ՄՕԴԱՖՖԱՐ Բ. (1220-1224) *եւս պղնձէ դրամներ տպած է Նփրկերտի մէջ* 618*ին* (1221)։

ՄՕԴԱՖՖԱՐ ՂԱԶԻ (1230-1245) *Հիջրի* 63..*ին* (123..) *Նփրկերտի մէջ պղինձ դրամ մը տպած է*։

### Բ. — ԵԳԻՊՏՈՍԻ ԷՅՈՒԲԵԱՆՆԵՐ

ՄԵԼԻՔ ԷՍ – ՍԱԼԻՀ ՆՕՋՄ ԷԴ – ԴԻՆ ԷՅՈՒԲ (1240-1249) *Հիջրի* 637*ին* (1240) *պղնձադրամ մը տպած է Ամիդի մէջ*։

---

## 12. ԱՐՏԵՆԵԱՆՆԵՐ [Les Arténides]

*Արտենեանները կամ Բէնի Արտենա ընտանիքը՝* 1335*էն մինչեւ* 1395 *Փոքր Ասիոյ մէջ հաստատուած մոնղոլեան տոհմէ փոքր իշխանութիւն մըն է, որ արծաթ դրամներ տպած է Երզնկայի մէջ՝* 747*ին* (1346) *և* 761*ին* (1359)․ *Բաբերդի մէջ՝* 760*ին* (1358) *և* 762*ին* (1360)․ *ինչպէս նաեւ Սեբաստիոյ, Եւդոկիոյ և Կեսարիոյ մէջ*։

---

## 13. ԿԱՐԱՄԱՆՔ [Les Karamans]

*Կարամանք՝ 1223էն մինչեւ 1472 Կարամանի մէջ հաստատուած հակասելճուկեան Թիւրքմէն էմիրներ են, որոնցմէ՝*

ՙԱԼԱ ԷԴ–ԴԻՆ ՙԱԼԻ (1349–1392) *Հիջրի* 762 (1360) *Թուին,* 765*ին* (1363), 766*ին* (1364) *և* 768*ին* (1366) *արծաթ դրամներ տպած է Երզնկայի մէջ. նոյնպէս* 768*ին* (1366)՝ *Սեբաստիոյ և Կեսարիոյ մէջ. իսկ Կարնոյ մէջ տպած դրամին Թուականն անծանօթ է ինծ։*

---

## 14. ԿԱԴԻ–ՕՂԼՈՒՆԵՐ [Les Kadi-oghlides]

*Կադը–օղլուները Բէնի Արտենա ընտանիքին յաջորդած են 1380էն մինչեւ 1395։ Ասոնցմէ՝*

ԿԱԴԸ ԲՈՒՐՀԱՆ ԷԴ–ԴԻՆ ԱՀՄԷԴԻ (1380–1395) *արծաթէ մէկ դրամը գիտենք, տպուած Սեբաստիոյ մէջ* 786*ին* (1384)։

---

## 15. ԿԱՐԱ–ԿՈՅՈՒՆԼՈՒՆԵՐ [Les Moutons noirs]

*Կարա–կօյունլուները կամ Սեւ խոյեանք, որոնք՝ Կադը–օղլուներու նման՝* 1380*ին անկախ իշխանութիւն մը հաստատած էին Փոքր Ասիոյ մէջ, աւելի երկար կեանք ունեցած են, ապրելով մինչեւ* 1469 *Թուականը։ Ասոնցմէ՝*

ԿԱՐԱ–ԵՈՒՍՈՒՖ (1389–1399 *և* 1405–1420) *Բաղէշի մէջ դրամ տպած է Հիջրի* 814*ին* (1411)։

ԻՍԿԷՆԴԷՐ ԻԲՆ ԿԱՐԱ–ԵՈՒՍՈՒՖ (1420–1437) *դրամներ տպած է Խլաթի և Մարաղայի մէջ։*

*Կարա–կօյունլուները տխուր յիշատակներ ձգած են մեր պատմութեան մէջ։*

---

## 16. ԱԿ-ԿՈՅՈՒՆԼՈՒՆԵՐ [Les Moutons blancs]

*Ակ–կօյունլուները կամ Սպիտակ Խոյեանք («Իթթիհադ»ականներու վարպետները) և կամ Բայընդըրեան իշխանութիւնը* (1406–1508) *Արեւմտեան Ասիոյ տիրապետելով՝ Կարա–կօյունլուներու նման – և աւելի մեծ թափով – հուրի ու սուրի մատնած են անտէր Հայաստանը։ Ասոնցմէ՝*

ՆՈՒՐ ԷԴ–ԴԻՆ ՀԱՄԶԱ ԻԲՆ ԿԱՐԱ-ՕՍՄԱՆ (1434–1444) *պղնձէ դրամ մը տպած է Երզնկայի մէջ, և արծաթ մը՝ Ամիդի մէջ։*

ՋԻՀԱՆԿԻՐ ԻԲՆ ՙԱԼԻ (1444–1467) *Երզնկայի մէջ արծաթ դրամ մը տպած է* 854*ին* (1450)*։*

ԱԲՈՒ ՆԱՍՐ ՄՕԶԱՖՖԷՐ ԷԴ–ԴԻՆ ՈՒԶՈՒՆ–ՀԱՍԱՆ (1453–1477) *արծաթ դրամ մը տպած է Խարբերդի մէջ։*

ԵԱՙԿՈՒԲ ԻԲՆ ՀԱՍԱՆ (1472–1490) *Ամիդի մէջ արծաթ դրամ մը տպած է. իսկ Նախիջեւանի մէջ՝ պղինձ մը,* 895*ին* (1489)*։*

ՌՈՒՍՏԷՄ ԻԲՆ ՄԱԳՍՈՒԴ ԻԲՆ ՈՒԶՈՒՆ–ՀԱՍԱՆ (1491–1496) *արծաթ դրամներ տպած է Ամիդի, Խարբերդի, Երզնկայի, Բաղէշի և Մարաղայի մէջ. իսկ պղնձէ դրամներ տպած է Վանի մէջ։*

ԱՀՄԷԴ ԻԲՆ ՈՒՂՈՒՐԼՈՒ–ՄԷՀՄԷԴ (1496–1497) *արծաթ և պղինձ դրամներ տպած է Երզնկայի մէջ. արծաթ մըն ալ տպած է Ամիդի մէջ։*

ԷԼՎԷՆԴ ԻԲՆ ԵՈՒՍՈՒՖ ԻԲՆ ՈՒԶՈՒՆ–ՀԱՍԱՆ (1498–1504) *արծաթ դրամ մը տպած է Ամիդի մէջ։*

ԿԱՍԸՄ ԻԲՆ ՋԻՀԱՆԿԻՐ ԻԲՆ ՙԱԼԻ ԻԲՆ ԿԱՐԱ – ՕՍՄԱՆ 1502*ին տիրելով Մարդինի և Ամիդի, այս վերջին քաղաքին մէջ արծաթ դրամ մը տպած է։*

*Ակ – կօյունլուները Ոստանի մէջ ալ արծաթադրամ մը տպած են, բայց թուական չունի։*

---

## 17. ԲԱՂԷՇԻ ԷՄԻՐՆԵՐ [Les Émirs de Bitlis]

*Բաղէշի էմիրները դարերէ ի վեր ինքնիշխան կառավարութիւն մը կազմած էին, անառիկ ձիրքերու և ամրոցներու մէջ հաստատուած։ Անոնք դրամ տպած են անշուշտ։ Ինձ ծանօթ են միայն երկու էմիրի դրամներ.*

ՇԱՐԱՖ և ՇԷՄՍ ԷԴ–ԴԻՆ՝ *արծաթէ դրամներ տպած են Բաղէշի մէջ. բայց թուականները ծանօթ չեն։*

*ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.* — **Castiglione,** Monete cufiche dell' I. R. Museo di Milano. Milano, 1819. — **C. J. Tornberg,** Numi cufici regii numophylacii halmiensis. Upsaliae, 1848. — **Stanley Lane Poole,** Catalogue of Oriental Coins in the Brit. Mus., t. III. The Coins of the Turkumán houses of Seljuk, Urtuk, Zengee, etc. in the Brit. Mus. London, 1877. — **Gustave Schlumberger,** Monnaie à légende grecque d'Amir Ghazi. «Revue Numismatique». Paris, 1888. — **А. Марковъ,** Инвентарный каталогъ мусульманскихъ монетъ имп. Эрмит., С. П., 1896. — **Paul Casanova,** Numismatique des Danichmendites. Paris, 1896. —

احمد توحيد

ترکستان خاقانلری، آل سبکتکین، خراسان و عراق سلچوقلری الخ.

قسطنطينيه، ١٣٢١.

---



64. Պատկերքանդակ Հեթում Բ.ի.

## Թ.

# ՍԵԼՃՈՒԿԵԱՆ ՇՐՋԱՆ

[Les Seldjoucides]

(1192 - 1291)

*Սելճուկեանները բաժնուած են զանազան ճիւղերու, որոնք կը կոչուին՝ Իրանի, Խորազմի, Կրմանի, Իկոնիայի, Հալէբի, Մուսուլի, Դամասկոսի, Մարդինի եւն. Սելճուկներ:*

*Այստեղ մենք գործ ունինք նախապէս արդի Քոնիայի (հինն Իկոնիա) նահանգին մէջ հաստատուած և «Ռումի» կոչուած Սելճուկներու հետ, որոնց մայրաքաղաքն էր ընդհանրապէս Իկոնիոն կամ Քոնիա քաղաքը, կամ թէ երբեմն ալ՝ և շատ անգամ՝ Սեբաստիա և Կեսարիա: Ասոնք Ասիոյ խորերէն գալով՝ Փոքր Ասիոյ մէջ բոյն դրած Թիւրքմէններ են,* 1077 *Թուականէն մինչեւ* 1307 *Թուականը տիրապետելով հոն:*

*Սելճուկեաններն երբ որ իրենց գրաւած երկիրն ընդարձակել սկսան, գրեթէ ամէն նոր առնուած քաղաքին մէջ դրամ կոխեցին:*

*Սելճուկեաններու Հարստութեան Սեբաստիոյ փողերանոցն՝ ամենէն նշանաւորներէն մին եղած է, ուր տպուած են Քայքոբադ Ա.ի* (1219–1236) *ոսկի և արծաթ դրամներէն շատերը: Այս փողերանոցին մէջ տպուած են նաեւ Քայխոսրէվ Բ.ի* (1236–1246) *գրեթէ բոլոր արծաթ դրամները:*

*Այսպէս նաեւ յաջորդ սուլտաններն ալ շարունակած են իրենց*

դրամները տպել Սեբաստիոյ փողերանոցին մէջ, ինչպէս և Մելիտինէ, Կեսարիա և Երզնկայ, որոնցմէ շրջաբերութեան հանուած հայադրամներուն ժամանակագրական դասաւորութիւնը կ'ընեմ հոս. —

ՂԱՅԱՍ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅԽՈՍՐԷՎ Ա. (1192-1195 և 1204-1210) Կեսարիոյ մէջ արծաթ դրամներ տպած է Հիջրի 601ին (1204), 602ին (1205), 603ին (1206), 604ին (1207), 605ին (1208), 606ին (1209), 607ին 1210) և 608ին (1211)։ Մելիտինէի մէջ տպած արծաթադրամներուն թուականներն են՝ 603 (1206), 604 (1207), 605 (1208) և 606 (1209)։ Իսկ Սեբաստիոյ մէջ տպած է՝ 605ին (1208)։

ՌՈՔՆ ԷԴ-ԴԻՆ ՍՈՒԼԷՅՄԱՆ Բ. (1195-1203) Կեսարիոյ մէջ արծաթ դրամներ տպած է Հիջրի 596ին (1199), 597ին (1200) և 598ին (1201)։

ʿԱԶԶ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅՔԱՒՈՒՍ Ա. (1210-1219) Սեբաստիոյ մէջ 610ին (1213), 611ին (1214), 612ին (1215) և 615ին (1218) արծաթ ու պղինձ դրամներ տպած է. իսկ Կեսարիոյ մէջ արծաթադրամ մը տպած է 608ին (1211), Մելիտինէի մէջ՝ 612ին (1215), նոյնպէս արծաթ մը։

Այս միջոցներուն՝ Սելճուկեան ապստամբ իշխան մը՝

ՄՈՒՂԱՅԱՍ ԷԴ-ԴԻՆ ԹՈՂՐՈՒԼ-ԲԷԿ (1188-1216) Հիջրի 608 (1211) և 613 (1216) թուականները կրող արծաթ դրամներ տպած է Կարնոյ մէջ, զոր գրաւելով՝ ինքնիշխան կերպով տիրապետած է հոն։ Այս դրամներուն վրայ Արմինիյա անունը յիշատակուած չէ, այլ պարզապէս գրուած է՝ ارزروم (Արզ Րում)։

ʿԱԼԱ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅՔՈԲԱԴ Ա. (1219-1236) Հիջրի 625 թուին (1227) գրաւած է Երզնկան։ Ասիկա Կեսարիոյ մէջ ոսկեդրամ մը տպած է 618ին (1221). իսկ արծաթադրամներ տպած է հոն՝ 616ին (1219), 617ին (1220), 618ին (1221) և 619ին (1222)։ Սեբաստիոյ մէջ տպած արծաթ և պղինձ դրամներն՝ հետեւեալ թուականները կը կրեն. 610 (1213), 612 (1215), 616 (1219), 617 (1220), 618 (1221), 619 (1222), 620 (1223) 621 (1224), 622 (1225), 623 (1226), 624 (1226), 625 (1227), 626 (1228), 627 (1229), 628 (1230). 629 (1231), 630 (1232), 631 (1233), 632 (1234), 633 (1235) և 634 (1236)։ Այս սուլտանը 620ին (1223) և 631ին (1233) Սեբաստիոյ մէջ տպած ոսկեդրամներ ալ ունի, ինչպէս նաեւ Կարնոյ մէջ 628ին (1230) տպած արծաթադրամ մը։

ՂԱՅԱՍ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅԽՈՍՐԷՎ Բ. (1236-1245) Սեբաստիոյ փողերանոցին մէջ տպած արծաթ և մէկ պղինձ դրամներուն կարգն է՝

630 (1232), 634 (1236), 635 (1237), 636 (1238), 637 (1239), 638 (1240), 639 (1241), 640 (1242), 641 (1243), 642 (1244), 643 (1245), 644 (1246) և 647 (1249) կամ 649 (1251)։ Կեսարիոյ մէջ 639ին (1241) արծաթադրամ մը տպած է։ Ասիկա պղինձ դրամներ ալ տպած է Խլաթի և Մելիտինէի մէջ։

ԱԶԶ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅՔԱՈՒՍ Բ.ի (1245-1249, 1249-1257ի եռապետութիւնը[1], և կրկին առանձինն՝ 1257-1259) Սեբաստիոյ մէջ տպած արծաթ դրամներն՝ հետեւեալ թուականները կը կրեն. 643 (1245), 644 (1246), 645 (1247), 646 (1248), 647 (1249), 648 (1250), 650 (1252), 651 (1253), 652 (1254), 653 (1255), 654 (1256), 655 (1257), 656 (1258) և 657-9 (1258-60). իսկ կեսարիոյ մէջ՝ 654 (1256). Մելիտինէի մէջ՝ 655-7 (1257-8)։

ՌՕԿՆ ԷԴ-ԴԻՆ ՔԸԼԸՋ ԱՐՍԼԱՆ Դ.ի (1248-1249, 1249-1257ի եռապետութիւնը, և կրկին առանձինն՝ 1259-1264) Սեբաստիոյ մէջ տպած արծաթ դրամներն՝ հետեւեալ թուականներով ծանօթ են. 646 (1248), 647 (1249), 650 (1252), 651 (1253), 652 (1254), 653 (1255), 654 (1256), 655 (1257), 656 (1258), 657 (1258), 658 (1259), 659 (1260), 660 (1261), 661 (1262), 662 (1263) և 663 (1264). իսկ կեսարիոյ մէջ՝ 652 (1254) և 654 (1256). Մելիտինէի մէջ՝ 655 (1257), 656 (1258) 660 (1261). Երզնկայի մէջ՝ 656 (1257), 657 (1258), 660 (1261), 661 (1262), 663 (1264), 664 (1265), 668 (1269) և 680 (1281). Կարնոյ մէջ՝ 663 (1264)։

(Փ. Սորէ դրամագէտն իր Նամակներէն մէկուն մէջ [Troisième lettre à M. de Dorn, կարգ Ի, տպ. 1856, եր, 35] Ռօկն էդ-դին Քըլըճ-Արսլանի՝ 640ին Սեբաստիոյ մէջ տպած մէկ դրամը կը դնէ։— 640ին (1242), Քըլըճ-Արսլան չէր կրնար դրամ կոխած ըլլալ, նկատի առնելով որ իր հայրը՝ Ղայաս էդ-դին Քայխոսրէվ՝ իշխած է 1236էն մինչեւ 1245, իսկ ինքը՝ Քըլըճ-Արսլան Դ. գահ բարձրացած է 1248ին)։

ԱԼԱ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅՔՈԲԱԴ Բ.ի (1249-1257) եռապետութեան կողմէ, կամ թէ երկու եղբայր միասնաբար և կամ առանձինն, Սեբաստիոյ մէջ տպած դրամներն՝ հետեւեալ թուականներէն են. 647 (1249),

---

1. Ղայաս էդ-դին Քայխոսրէվ Բ.ի երեք որդիները, — Ազզ էդ-դին Քայքաուս Բ, Ռօկն էդ-դին Քըլըճ Արսլան Դ. և Ալա էդ-դին Քայքոբադ Բ, — երբեմն՝ միասնաբար, և երբեմն ալ՝ անջատաբար իշխած են. որով՝ իրենց դրամներն ալ այս երկու հանգամանքները կը ներկայացնեն։

650 (1252), 651 (1253), 652 (1254), 653 (1255), 654 (1256), 655 (1257). *իսկ Կեսարիոյ մէջ՝* 654 (1256), *Մելիտինէի մէջ՝* 655 (1257)։

ՂԱՅԱՍ ԷԴ-ԴԻՆ ՔԱՅԽՈՍՐԷՎ Գ.*ի* (1264–1282) *Կեսարիոյ մէջ տպած արծաթադրամներուն թուականներն են՝* 665 (1266), 677 (1268), 670 (1271), 671 (1272), 675 (1276), 677 (1278), 678 (1279) *և* 680 (1281). *իսկ Սեբաստիոյ մէջ տպածներունը՝* 663? (1264), 666 (1267), 668 (1269), 670 (1271), 671 (1272) 672 (1273), 674 (1275), 675 (1276), 676 (1277), 677 (1278) *և* 680 (1281). *Երզնկայի մէջ տպածներունը՝* 663 (1264), 670 (1271), 671? (1272), 672 (1273), 674 (1275), 675 (1276), 676 (1277), 678 (1279) *և* 681 (1282)։ *Աոանի մէջ ալ արծաթ դրամ մը տպած է* 667*ին* (1268)։

ՂԱՅԱՍ ԷԴ-ԴԻՆ ՄԷՍ՛ՈՒԴ Բ.*ի* (1282–1294 *և* 1302–1304) *Կեսարիոյ մէջ տպած մէկ արծաթադրամը գիտեմ, բայց թուականը մաշած է. իսկ Սեբաստիոյ մէջ տպած արծաթադրամներուն թուականներն են՝* 681 (1282), 683 (1284), 684 (1285), 685 (1286), 686 (1287), 687 (1288), 688 (1289), 689 (1290), 690 (1291), 694 (1294) *և* 695 (1295). *Երզնկայի մէջ տպած արծաթադրամներունը՝* 682 (1283), 683 (1284), 684 (1285), 686 (1287), 687 (1288), 688 (1289), 690 (1291), 691 (1291), 692 (1292), 693 (1293), 694 (1294) *և* 695 (1295). *Բաբերդի մէջ տպածներունը՝* 687 (1288) *և* 690 (1291). *Կարնոյ մէջ տպածներունը՝* 681 (1282), 686 (1287), 689 (1290) *և* 690 (1291)։



65. *Հեթում Ա.ի և Քայքոբադ Ա.ի դրամը.*

*Սելճուկեան սուլտաններու անունները կրող դրամներու շարքին մէջ՝ մեզ համար ամենէն կարեւորներն ու հետաքրքրականները, սակայն, Հայակիլիկիոյ մայրաքաղաքին՝ Սսոյ մէջ տպուած երկլեզուեան դրամներն են, արաբերէն և հայերէն։*

*Ասոնք երկու տեսակ են։*

*Առաջինները կը կրեն, մէկ կողմը՝* ՔԱՅՔՈԲԱԴ Ա.*ի անունն ու տիտղոսը, հետեւեալ բառերով ու տառերով.*

السلطان المعظم علاالدين كيقباد بن كى خسرو

այսինքն՝ «Մեծաշուք սուլտանն Ալա էտ–տին Քայքոբատ, որդի Քայխոսրէվի»։ Իսկ միւս կողմը՝ մեր ՀԵԹՈՒՄ Ա․ Թագաւորին (1226–1270) անունն ու տիտղոսը, հայերէն տառերով գրուած, այսպէս․

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Ո՛չ թուական կայ, և ո՛չ փողերանոցին տեղւոյն անունը․ բայց, ինչպէս ըսի, տպուած է Սսոյ մէջ (Զեւ 65)։



66. Հեթում Ա․ի Քայխոսրէվ Բ․ի դրամները.

Երկրորդիններն ալ կը կրեն, մէկ կողմը՝ ՔԱՅԽՈՍՐԷՎ Բ․ի անունն ու տիտղոսը, դարձեալ արաբերէն, հետեւեալ բառերով․

السلطان الاعظم غياث الدنيا و الدين كيخسرو بن كيقباد

այսինքն՝ «Հաւատքի և աշխարհի ապաւէն՝ գերագոյն սուլտանն Քայխոսրէվ, որդի Քայքոբատի»․ իսկ եզերքը՝ նոյնպէս արաբերէն տառերով գրուած է՝

ضرب بسيس سنه سبع و ثلثين و ستمائه

այսինքն՝ «Տպուած ի Սիս, 637 Թուին», որ ըսել է՝ 1239։

Ուրիշներ ալ կը կրեն, դարձեալ արաբերէն՝

ضرب بسيس سنه احد و اربعين و ستمائه

այսինքն՝ «Տպուած ի Սիս, 641 Թուին», որ է 1243։

Գալով ասոր կռնակի երեսին, հոս ալ հայերէն տառերով գրուած է՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

որ նոյն Հեթում Ա․ն է (Զեւ 66)։

Սակայն՝ ասոնք սելճուկեան դրամներ չեն, այլ յաւէտ հայկական կիլիկեան, որոնք Հեթումի կողմէ տպուած են, ի յիշատակ

բարեկամութեան և դաշնակցութեան իկոնիոնի յիշեալ երկու սուլտաններուն հետ։

Այս բովանդակութեամբ տպուած երկլեզուեան կիսադրամներ ալ ծանօթ են Հեթումէ, քիչ շատ հազուագիւտ։

* * *

Իսմա՛իլ Ղալիբ իր Թուրքերէն լեզուով գրած «Սելճուկեան դրամներու Ցուցակ»ին մէջ յիշատակելով գոյութիւնն այս երկլեզուեան դրամներու, Աբդ-իւլ-Համիդի գրաքննիչներէն խուսափելու համար ճարպիկ միջոցի մը դիմած է. — Պատկերներու տախտակին վրայ դրած է Քայխոսրէվի դրամին արաբերէն կողմը միայն. իսկ հայերէնի կողմը՝ չէ դրած, այլ գրքին մէջ (եր. 37, 40, 51-52 և 54) այս տողերով կրցած է խօսիլ Հեթումի պատկերը ներկայացնող Բ կողմի մասին.

«Ձիաւորի մը պատկերը կայ, որուն ձին աջ կողմ դարձած է. «ձեռքը կացին մը բռնած է. գլխուն ուղղութեամբ՝ կիսալուսին մը «նկարուած է. (շուրջը՝ երկու բոլորակ գծերու մէջ՝) Հեթումի ա-«նունն ու մականունը[1] հայերէն տառերով գրուած է» (եր. 51)։

Նոյնը նաեւ եր. 36, այս բառերով.

«՝Ալա էդ-դին Քայքոբադի հովանաւորութեան տակ մտնող[2] քա-«նի մը թագաւորներու՝ յիշեալին անունով տպած միացեալ դրամ-«ները» վերնագրին տակ՝ դրած է Հեթումի մէկ դրամը, որուն իբրեւ երկրորդ վերնագիր կը կարդանք.

«Սիսի մէջ իշխող Ռուբինեան Հարստութենէն Հեթում» (եր. 37), որուն տակ՝ հետեւեալը.

«(Կեդրոնը՝) ձեռքը կացին բռնած ձիաւորի մը պատկերը. (շուր-«ջը՝) Հեթումի անունն ու մականունը հայերէնով գրուած է»։

Այսքան։

Ուրիշ տեղ մը՝ միեւնոյն գրքին մէջ՝ ոչ միայն «հովանաւորութեան» խօսքը կ'ըլլայ, այլ նաեւ «հպատակութեան», ինչպէս կը կարդանք եր. 41ին մէջ.

«Գալով երկու լեզուներով տպուած յիշեալ դրամին, Ռուբինեան

---

1. Այսպէս՝ شهرتى = «մականունը». տիտղոս = عنوان բառը չէ գործածուած։ Ուրիշ տեղ՝ صفت = «հանգամանք» գրուած է։

2. تحت حمايته داخل اولان.

*« Հարստութենէն Հեթում Առաջին՝ ՙԱլա էդ-դին Քայքոբադ սուլ-*
*« տանի ժամանակ՝ Սելճուկեան թագաւորութեան հպատակութեան և*
*« պաշտպանութեան տակ մտնելուն վրայ, մասնաւոր կերպով տպած*
*« և մէկ կողմը յիշեալ սուլտան Քայքոբատի անունն արաբերէնով*
*« ու միւս կողմը՝ սկիզբէն ի վեր Սելճուկեան դրամներու յատուկ*
*« նշան ընդունուած՝ ձիաւորի պատկերը դրուած է, շուրջն ալ հայ*
*« տառերով իր անունն ու մականունը գրել տուած դրած է»* (*եր.* 41)։

*Դարձեալ, երես* 54.

*« Ինչպէս որ ՙԱլա էդ-դին Քայքոբատ Ա.ի իշխանութեան վեր-*
*« ջին տարիներուն մէջ հրապարակ հանուած են, նոյնպէս իր որդ-*
*« ւոյն՝ Քայխոսրէվ Բ.ի ժամանակէն ալ երկլեզուեան դրամներ գոյու-*
*« թիւն ունին։*

*« Նախորդներուն նման՝ ասոնց ալ Ա. երեսին վրայ Ղայաս էդ-դին*
*« Քայխոսրէվի անունն ու տիտղոսն արաբերէնով գրուած են. իսկ*
*« Բ կողմը ձիաւորի մը պատկերն ու Հեթում Ա.ի անունն ու հան-*
*« գամանքը (صفت) հայերէն տառերով գրուած են։*

*« Բայց սակայն, մինչդեռ Քայքոբադի ժամանակուան դրամ-*
*« ներուն վրայ թուական ու տպուած տեղի անուն գրուած չեն,*
*« հոս՝ Սիսի մէջ տպուած ըլլալն ու կոխուած թուականը նշանա-*
*« կուած են։ Նկատի առնելով որ մեր ձեռքը գտնուած երեք օրինակ*
*« դրամներէն երկուքը՝* 637, *իսկ միւսը՝* 643 *թուականները կը կրեն,*
*« կը հետեւցնենք, թէ յիշեալ սուլտանն՝ իր իշխանութեան բոլոր*
*« տեւողութեան մէջ՝ այս դրամներէն տպած շրջաբերութեան հանած*
*« է։ Այս դրամներուն գրութեան ձեւն ու պատկերներուն գծագրու-*
*« թիւնը՝ Սելճուկեաններու դրամներուն ձեւով կազմուած տպուած*
*« են »։*

*ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ*. — **Victor Langlois,** Numismatique de l'Arménie au moyen âge. Paris, 1855. — Հ. ԿՂԵՄԷՍ Վ. ՍԻՊԻԼԵԱՆ, *Դասաւորութիւն Ռուբենեան դրամոց։ Վիեննա*, 1892։ — А. МАРКОВЪ, Инвентарный каталогъ мусульманскихъ монетъ имп. Эрмит., С. П., 1896. — **Stanley Lane Poole,** Catalogue of Oriental Coins in the Brit. Mus., t. III. The Coins of the Turkumân houses of Seljook, Urtuk, Zengee, etc. in the Brit. Mus. London, 1877.—

اسماعيل غالب. تقويم مسكوكات سلجوقيه. قسطنطينيه، ١٣٠٩.

احمد توحيد. تركستان حاقانلرى، آل سبكتكين، الخ. قسطنطينيه، ١٣٦١.



67. Ոսկեկնիք Լեւոն Ա. Թագաւորի.

# Ժ.

# ՌՈՒԲԻՆԵԱՆ ՇՐՋԱՆ

[Période des Rubéniens]

( 1187 - 1489 )

*Քանի որ Հայկական Կիլիկիոյ խօսքն ըրինք, այլ եւս ժամանակ է խօսելու Ռուբինեան Հարստութեան դրամներուն վրայ։*

*Հոս՝ աւելի մատչելի մանաւանդ հայատառ յիշատակարաններ կան մեր առջեւ, բոլորն ալ զուտ հայկական, և բազմաթիւ ու բազմատեսակ դրամներ ունինք դիտելու, զննելու, և զմայլելու, ի փառս Ռուբինեանց և Հեթումեանց։*

*Սակայն, կը կարծեմ, թէ ԺԱ.րդ դարուն՝ Վահրամեանց շառաւիղէն՝ քաջակորով հայ մը, — Փիլարետ կամ Փիլարտոս, — որ Կիլիկիոյ սահմաններուն վրայ հայկական անկախ իշխանութեան մը առաջին հիմնադիրն եղած է, տիրապետելով Մելիտինէի, Անտիոքի, Մառաշի ու Եդեսիոյ միացեալ երկրամասին, դրամ տպած չէ, քանի որ անոր հետքն անգամ չկայ Կիլիկեան և Բիւզանդական դրամներու ամենահարուստ հաւաքածոներուն մէջ իսկ։ Շատ հաւանական*

է, որ Փիլարետ և իր տեղակալներն ու յաջորդները, զոր օրինակ՝ Գաբրիէլ, որ Մելիտինէ կը նստէր, և Թորոս Հեթումեան՝ որ Եդեսիա կը նստէր, բիւզանդական դրամ կը գործածէին, իբրեւ բիւզանդացի նախկին պաշտօնեաներ, որոնք վարժուած ընտելացած էին այդ դրամներու։

Այսպէս՝ բիւզանդական դրամ կը գործածէին նաեւ, տարակոյս չկայ, Հայակիլիկիոյ առաջին ռահվիրաներէն Գող Վասիլ, եղբայրը՝ Բագրատ, Լամբրոնի և Պապեռոնի տէրն՝ Օշին Գանձակեցի, նախահայր Հեթումեանց, և ասոր եղբայրը՝ Հալկամ, Սասունցի Ռուբէն, եւն. եւն.։

Վահրամեանց ընտանիքին պատկանող կնիքներ գիտենք, որոնց մասին գրած եմ եր. 86–87։

*
* *

Այս շրջանէն՝ մեծ քանակութեամբ կրկնատիպ (surfrappe) հայ դրամներ ալ կան, որոնցմէ բազմաթիւ օրինակներ տեսած է բարեկամս՝ Հայկազն Հաբէշեան, իր Կիլիկիոյ ճամբորդութեան ընթացքին։

Ցայտնի է, թէ կրկնատիպ դրամները կը ծառայէին, — ճիշտ կրկնագիր նամականիշներու նման, — տեղական դրամ մը՝ իր արժէզրկուած վիճակէն բարձրացնելու համար։ Այստեսակ դրամներ գոյութիւն ունեցած են ամէն երկրի, ամէն ազգի մէջ։ Իսկ մեր մէջ՝ Հայերն ստիպուած էին հայկական դրամով փրկանք վճարել, երկրին վրայ արշաւող վոհմակներու, և կամ՝ թշնամի պետութեան մը կողմէ մեր վրայ պարտադրուած տուրքէ մը թեթեւնալու համար։

Տուրքը ոսկիով կը պահանջէին. բայց երբ ոսկին կը պակսէր, արծաթով վճարումը չէր մերժեր թշնամին։

Արդ, այս վճարն ստացող պետութիւնն՝ իր երկրին մէջ օտար (գ. օ. հայ) դրամի գործածութեան ընթացք տալու համար՝ իրաքանչիւր դրամի վրայ կը դրոշմէր իր մէկ նշանը, կամ որոշիչ մէկ բառը և կամ անունը։ Այսպէս կազմուած են այն օտար նշաններն՝ որոնք կը տեսնուին մեր կիլիկեան հայ դրամներէն ոմանց վրայ, զոր օրինակ՝ կոստանդին Դ.ի ں, ذ, د արաբական տառերը կրող դրամները, որոնց նկարագրութիւնը կ՚ընէ Սիպիլեան, եր. 66։ Այս տեսակէն է նաեւ Պարիսի Նուպարեան Մտնդրնին «Լեւոն Թագաւոր» վերտառութիւնը կրող կրկնատիպ մէկ դրամը, զոր Տ. Մատթէոս

*Երէցեան կը վերագրէ Լեւոն Դ.ի[1], և զոր քննելու առիթն ունեցայ շնորհիւ բարեկամիս՝ Մատենադարանապետ Արամ Անտոնեանի։*

*Այս դրամին Ա կողմը շուրջանակի գրուած է՝* [+] ԼԵՒՈՆ ԹԱԳ[ԱՒ]Ո[Ր]. *կեդրոնը՝ արաբերէն տառերու հետքեր։ Իսկ Բ կողմը՝ շուրջանակի՝* [+ ՇԻՆԵԱ]Լ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍ. *կեդրոնը՝* (ﷲ)IԱIԱ։

* * *

*Ռուբինեան դրամներու վրայ խօսելէ յառաջ պարտաւոր եմ յիշեցնել, թէ շատեր — նոյն իսկ օտար գիտնականներ — սխալ առումով մը, մեր Լեւոն Ա. թագաւորը՝ «Լեւոն Բ.» կ'անուանեն։*

*Այս սխալն յառաջ եկած է անկէ, որ Լեւոն Ա.ի թագաւորութիւնը՝ շարունակութիւնը կ'ընդունին մի և նոյն պարոն Լեւոն Բ.ի իշխանութեան։*

*Ասիկա ճիւղագրութեան տեսակէտով ճիշտ է թէեւ, բայց պատմական սխալ մըն է. վասն զի Լեւոն Բ.ի կենաց մէկ մասը կը պատկանի Հայակիլիկիոյ պարոններուն ժամանակին, իսկ միւս մասը՝ թագաւորներուն ժամանակին, որուն* ԱՌԱՋԻՆ *թագաւորն էր ան։*

*Այս կէտը կը հաստատէ* (Ա) *Հայոց* **ՉՀԸ** (1329) *թուականին գաղափարուած ձեռագիր Աւետարան մը, զոր՝ շնորհիւ Եղբայր Յովսէփ Ազատխանեանի՝ անձամբ քննելու բախտն ունեցայ[2]։ Հոն կը յիշատակուի անունը «Լեւոն չորրորդ»ի* (1320–1342), *ժամանակակից թագաւորին, որ իսկապէս մեր Լուսինեան Լեւոնի նախորդ Լեւոնն է. հետեւաբար՝ ճիշտ «չորրորդ»ը։* (Բ) *Նոյնը կը հաստատեն նաեւ մեր Լեւոն վերջին թագաւորին կտակագիրը, կնիքն, ստորագրութիւնն ու տապանաքարին վրայի արձանագրութիւնը, ուր կը կարդանք՝* « Léon de Lusignan quint » (= *Լեւոն հինգերորդ Լուսինեան), փոխանակ կարդալու «Լեւոն Զ.»։*

*Մի և նոյն դիտողութիւնը նաեւ Կոստանդին «Բ.» վերագրումի մասին, զի Կոստանդին Ա.՝ «իշխան» էր, իսկ Կոստանդին Բ.՝* ԿՈՍՏԱՆԴԻՆ Ա. ԹԱԳԱՒՈՐԸ։

---

1. Տես «Բազմավէպ» 1936, երես 35-36.
2. Այս ձեռագրի մասին տե՛ս «Յառաջ»ի 1934 տարուան Հոկտ. 16 թիւով հրատարակած յօդուածս.

*Droit.*

1ա. ԼԵՒՈՆԹԱԳԱՒՈՐՀԱՅՈՑ

1բ. ԼԵՒՈՆԹԱԳԱՒՈՐՀԱՅՈՑ

ԼԵՒՈՆԹԱԳԱՒՈՐՀԱՅՈՑ

LEVONTHAKAVORHAIOTZ

68. Արծաթ դրամներու գրութեանց ձեւեր (Ա. կողմ).

*Revers*

2ա. ԿԱՐՈՂՈՒԹԲՆԱՍՏ

2բ. ԿԱՐՈՂՈՒԹԲՆԱՍՏ

ԿԱՐՈՂՈՒԹԲՆԱՍՏ[ՈՒԾՈՅ]

GAROGHOUTHPNASDOUZOI

3. ՉԻՆԵԱԼԻՔԱՂԱՔՆԻՍԻՍ

ՉԻՆԵԱԼԻՔԱՂԱՔՆԻՍԻՍ

TCHINIALIKHAGHAKHNISIS

5. LEODEIGRATIA

69. Արծաթ դրամներու գրութեանց ձեւեր (Բ կողմ).

## ՀԱՆԳԱՄԱՆՔ ՌՈՒԲԻՆԵԱՆ ԴՐԱՄՈՑ

*Ռուբինեան դրամներն՝ ուրիշ մերձակայ և հեռաւոր ազգերու դրամներէն շատերուն նման՝ իրենց*

*Առաջին երեսին վրայ կը կրեն Թագաւորին հանդիսական զգեստով քանդակուած Թագակիր պատկերն, ընդհանրապէս արքայական փառաւոր գահի վրայ բազմած և կամ ձի հեծած: Ձեռքը բռնած է նիզակ մը, կամ սուր մը, կամ աշխարհագունտ մը, և կամ՝ մէկ ձեռքը խաչ, և միւս ձեռքը շուշան: Գահը զետեղուած է երկու առիւծներու թիկանց վրայ: Իսկ բոլորտիքը՝ երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ – շուրջանակի – խաչանիշէ մը ետք գրուած են Թագաւորին անունն ու տիտղոսը, օրինակի համար՝ այսպէս.*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

*և կամ՝*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

*Երկրորդ երեսին գալով, հոս՝ խաչակիր առիւծ մըն է, որ աջ կամ թէ ձախ կը քալէ, և կամ՝ կանգուն վիճակի մէջ՝ կռնակ կռնակի*

տուած երկու առիւծներ, որոնց մէջտեղէն բարձրացած է երկար խաչ մը, ընդհանրապէս կրկնաթեւ։ Կան նաեւ առանց առիւծի՝ մի միայն խաչով դրամներ։ — Հոս ալ՝ առիւծին կամ թէ խաչին բոլորտիքը՝ շուրջանակի գրուած են, կամ թագաւորին բարեպաշտութիւնը ցուցընող արտայայտութիւն մը, և կամ դրամին տպուած քաղաքին անունը, օրինակի համար՝ այսպէս.

+ ԿԱՐՈՂՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

և կամ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ

Հայ դրամներու այս յիշուած ձեւերը խիստ սովորական են։

Մեր Ձեւ 68էն մինչեւ 72 պատկերներուն մէջ՝ խորագիրներու նմոյշներ կը ներկայացնենք։

*
* *

Dr.
ԿՈՍՏԱՆՏԻՆԹԳՀԱՅՈՑ
GOS DANTIN THKHAI OTz
Rv.
ՍՍՈՅԲԵՐԴՆԵԹԱԿԱՈ
S S OTzPERT NETHAKA O

70. Ոսկի դրամներու գրութեանց ձեւեր.

Հիմա գանք դրամներուս նիւթական վիճակին և արժէքին, ֆրանսական ոսկեդրամը՝ 20 ֆրանք հաշուելով։ —

Մենք ունինք չորս թագաւորի ՈՍԿԵԴՐԱՄ.

Ա. Լեւոն Ա.ի, որ կը կշռէ 7 գրամ. կ'արժէր 21 ֆրանք.

Բ. Հեթում Ա.ի – Լեւոն Բ.ի միասին, որ կը կշռէ 6 գրամ.

Գ. Լեւոն Բ.ի առանձինն, որ կը կշռէ 4 գրամ 80. կ'արժէր 15 ֆրանք.

Դ. Կոստանդին Ա.ի, որ կը կշռէ 3 գրամ 60. կ'արժէր 12 ֆրանք։

Մեր ունեցած ԱՐԾԱԹ դրամներէն՝

ա. Լեւոն Ա.ի Երկդրամեաններուն տարածութիւնն է 28 հազարորդամետր.

բ. Լեւոն Ա.ի կէս–Երկդրամեանները կամ Դրամները կը կշռեն 3 գրամ. տրծութիւնն է 23 հզրրդմետր.

գ. Լեւոն Ա.ի կիսադրամներուն տրծութիւնն է 17 հզրրդմետր.

դ. Զապէլ–Հեթում Ա.ի Դրամները կամ կէս–Երկդրամեանները կը կշռեն 3 գրամ. տրծութիւնն է 21 հզրրդմետր.

*ե. Զապէլ–Հեթում Ա.ի կիսադրամներուն տրծութիւնն է* 16 *հազարորդամետր.*

*զ. Լեւոն Բ.ինը կը կշռէ* 2 *գրամ* 50. *տրծութիւնն է* 60 *հազարորդամետր.*

*է. Լեւոն Գ.ինը կը կշռէ* 2 *գրամ* 50. *տրծութիւնն է* 20 *հազարորդամետր.*

*ը. Աւշինինը կը կշռէ* 3 *գրամ. տրծութիւնն է* 19 *հզրրդմետր.*

*թ. Լեւոն Դ.ինը կը կշռէ* 3 *գրամ. տրծութիւնն է* 19 *հզրրդմետր։*

*Իսկ ՊՂԻՆՁ դրամներէն՝*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1. *Լեւոն Ա.ինը* | *կը կշռէ* | 7 | *գրամ. տրծութիւնն է* | 29 | *հզրրդմետր.* |
| 2. *Հեթում Ա.ինը* | » | 9 | » » | 28 | » |
| » » | » | 8 | » » | 29 | » |
| » » | » | 4 | » » | 23 | » |
| 3. *Հեթում Բ.ինը* | » | 4 | » » | 23 | » |
| 4. *Սմբատինը* | » | 2 | » » | 8 | » |
| 5. *Լեւոն Գ.ինը* | » | 3 | » » | 20 | » |
| 6. *Կոստանդին Դ.ինը* | » | 2 | » » | 19 | » |
| 7. *Լեւոն Ե.ինը* | » | 1 | » » | 15 | » |

*Կան նաեւ Արծաթապղինձ և Անագապղինձ դրամներ։*

*
* *

# ՀԱՅԱԴՐԱՄՈՑ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*Հայադրամոց անուններն են հետեւեալները.*

## ՈՍԿԻ

*Դենար* (دنار , Denier) = *Դահեկան ոսկի.*

*Բիզանդ* (Byzant), *որ հաւասար է* 9 *կամ* 10 *Նոր Դրամի.*

*Բիզանդ Սառակինեան Հայոց* = *Բիզանդ Խաչանիշ* = 2 *Ֆր.* 25.

*Դահեկան կամ Դեկան* (دهكان). *կը կշռէ* 7 *գր.*, 4 *գր.* 80 *և* 3 *գր.* 60.

*Կարմիր դեկան* = *Դահեկան ոսկի.*

*Ոսկի բուլ։*

## ԱՐԾԱԹ

*Դիդրաքմայ* (Didrachme)
*Երկդրամեան Հայոց*
*Հին Դրամ Հայոց*
| *Դրամ* = درهم = Drachme.
*կը կշռէ* 4 *գր.* 65 = 1 *Ֆր.* 13.

Léon II ԼԵՈՆԹԱԳԱՒՈՐՀԱՅՍ

ՇԻՆԵԱԼԻՔԱՂԱՔՆԻՍԻՍ Frappé dans la ville de Sis

Hetoum II ՀԵԹՈՒՄԹԱԳՍԻՈՒՀՍՅՈ

ՇԻՆԵԱԼԻՔԱՂԱՔԻՍԻՍ frappé dans la ville de Sis

Sembat Ս.ՄԲՈՂԹԱԻԱՐՈՐ.ՀԱ Sempad roi des Arméniens

ԿԱՐՈՂՈՒԹԵՆԱՍՏՈՒԾ Par la puissance de Dieu

Constantin II ԿՈՍՐՐՍԺՆՆՍՐ·Գ·ՀՍՅ C' Thakavor Haiots (inform.)

ՍՄՈՅՖԵՐԴՆԵՑՁՅՋԱՄ

Léon III Լ.ԵՒՈՆԹԱԳԱՒՈՐՀՍՅՈ

ՇԻՆԵԱԼԻՔԱՔՆԻՍԻԱ

Ochin ՕՒՇԻՆԹԱԳԱՒՈՐՀԱՅՈ

ՇԻՆԵԼԻՔԱՂԱՔՆՍԻՍ

Léon IV ԼԵՒՈՆԹԱԳԱՒՈՐՀԱՅՈ

ՇԻՆԵԱԼԻՔԱՂԱՔՆՍ //////

Constantin II ԿՈՍ·ՈՒՆԴԻՆԹԱԳԱՒՈՐ

ՆԲՍՆԼԻՔԱՂ //////

Léon V ԼԵՒՈՆԹԱԳԱՒ //////

71 և 72. Զանազան թագաւորներու դրամներէն գրութեանց նմոյշներ.

Դահեկան արծաթ } կ'արժէր 40 փող.
» սպիտակ }

Ստաւրատ = Խաչանիշ. կ'արժէր մէկ Սառակինեան Բիզանդ.

Կէս–Երկդրամեան } = Tétrobole. կը կշռէ 2 գր. 90 =
Նոր Դրամ Հայոց } 0 ֆր. 85–0 ֆր. 60.

Թագուորին ( تكفوريه , Tacorin). կը կշռէ 2 գր. 48 = 0 ֆր. 62 – 0 ֆր. 50 (100ը = 77 Նոր Դրամ).

Կիսադրամ (Hémidrachme). կը կշռէ 1 գր. 56, ինչպէս Հեթում – Զապէլինը = 0 ֆր. 30.

Մանր կիսադրամ ( Petit module ). Լեւոն Բ.ի Մանր կիսադրամները։

ԱՐԾԱԹԱՊՂԻՆՁ (Billon)

Լեւոն Ա.ի լատինագիր դրամներն ու Հեթում Բ.ի կիսադրամները։

ԱՆԱԳԱՊՂԻՆՁ

Քորի ( کوری = Triobole?) = 0 ֆր. 30 կամ 25?

ՊՂԻՆՁ

Փող ( فلوس ) = Փոլի ( پول = Obole) = Sol (Sou) = 0 ֆր. 45.
Դանգ ( دانق ) = Դանկ, որ կ'արժէր փողէն քիչ պակաս՝ 0 ֆր. 10?
Կիսադրամ. Լեւոն Դ.ի կիսադրամը.
Քարտէզ կամ Դենար (Denier).
12 Քարտէզ = 1 Սօլ.
Մեծ » = 6 գր. 70 = 0 ֆր. 10.
Փոքր » = 0 ֆր. 04 9/10։

* * *

Հայ դրամներու տարածութիւնն ընդհանրապէս միօրինակ եղած է սկիզբները, իրենց պատկանած դասակարգին համաձայն. բայց յետոյ՝ մետաղի նուազութեան պատճառով՝ կամաց կամաց փոքրացած է, ինչպէս որ հետեւեալ համեմատութիւնը ցոյց կուտայ։

Յառաջ՝ կը դնեմ նախապէս ունեցած տարածութիւնը, իսկ քովը կը նշանակեմ յետոյ կրած անկումները։

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Դենար . . . . . | 21 | հզրրդմետր, | 20 հզրրդմետր. |
| Ա. Երկդրամեան . . . | 28 | » | |
| Ա. Դահեկան . . . . | 23 | » | 22 » |
| Ա. Դրամ . . . . . | 22 | » | 21, 20, 19 հզրրդմետր. |
| Ա. Կիսադրամ. . . . | 17 | » | 18 հզրրդմետր. |
| Ա. և Պ. Մանր կիսադրամ. | 8 | » | |
| Պ. Փող . . . . . | 30 | » | 28 և 24 հզրրդմետր. |
| Պ. Դանգ . . . . . | 22 | » | 21 և 19 » |
| Պ. Կիսադրամ. . . . | 17 | » | 16, 15 և 14 » |
| Ած. Կիսադրամ . . . | 15 | » | և 14 » |

Ռուբինեան դրամները շրջանը՝ երեք փոքր դասերու կը բաժնեմ.

Ա. — Ռուբինեան Իշխաններու Դաս,

Բ. — Ռուբինեան Թագաւորներու Դաս, և

Գ. — Յետռուբինեան Դաս։




73. և 74. Ռեմոնդ — Ռուբենի կնիքն ու դրամը.

## Ա. - ՌՈՒԲԻՆԵԱՆ ԻՇԽԱՆՆԵՐ [Les Princes Rubéniens]

Ռուբինեան իշխանները հետեւեալներն են.

1. Ռուբէն Ա. (1080–1095).
2. Կոստանդին (1095–1099).
3. Թորոս Ա. (1099–1129).
4. Լեւոն Ա. (1129–1137).
5. Թորոս Բ. (1145–1169).
6. Մլեհ (1170–1175).
7. Ռուբէն Բ. (1175–1187).
8. Լեւոն Բ. (1187–1196)։

Տե՛ս դիմացի Ազգացուցակը։




75. Թորոս իշխանի դրամը.

Այս իշխաններէն երկուքը դրամ ձգած են. մին՝ ԹՈՐՈՍ Ա. կամ Բ., իսկ միւսը՝ ԼԵՒՈՆ Բ։

ԹՈՐՈՍԻ դրամին Ա. կողմին վրայ գրուած է.

ԹՈՐՈՍԻ Է ՌԲ (այսինքն՝ Ռուբինեան). Բ կողմն անընթեռնլի մնացած է ցարդ (Ձեւ 75)։



76. Լեւոն Բ. իշխանի դրամը.

ԼԵՒՈՆԻ դրամին Ա. կողմին վրայ կայ (Տ․ Զեւ 76)․

+ ԼԵՎՈՆ ԾԱՌԱ ԱՅ (այսինքն՝ Աստուծոյ)․

Բ կողմին վրայ գրուած է․

+ ՈՐԴԻ ՍՏԵՓԱՆԷԻ

Երկուքն ալ պղնձադրամներ են։

Պարոն Լեւոնի այս դրամին Ա. կողմի ընթերցուածը զանազան ընդդիմախօսութիւններու տեղի տուած է, բայց այսօր վերջնական կերպով կարելի է ըսել, թէ մեր ընթերցումը ճիշտ է։

(Հ. Ալիշան՝ «Սիսուան»ի մէջ (եր․ 483) և Հ. Սիպիլեան՝ «Դասաւորութիւն Ռուբենեան դրամոց»ին մէջ (եր․ 77), – որոնց հետեւած եմ ես ալ իմ «Իսկական Պատմ. Հայոց» գործիս մէջ (եր․ 373)․ – կ'ընդունին, թէ Լեւոն իր իշխանութեան ժամանակ դրոշմած այս պղնձադրամին վրայ գրած է՝ «ԼԵՎՈՆ[1] ԺԱՌԱՆԳ»․ մինչդեռ Բալուեանի «Զուարթնոց»ին մէջ[2], ինչպէս նաեւ «Բազմավէպ»ի մէջ[3], դրուած պատկերներուն վրայ բացայայտ կերպով կը կարդացուի՝ ԼԵՎՈՆ ԾԱՌԱ ԱՅ (= Աստուծոյ), շատ քիչ տարբերութեամբ Դոկտ. Տէր Ղազարեանի կողմէ վերոյիշեալ թերթերուն մէջ հրատարակած վերլուծման. զի հոն «ծառա» բառն՝ «Ա»ով կը վերջանայ, առանց «Յ»ի․ իսկ յաջորդ համառօտուած բառը կը սկսի «Ա»ով, ինչպէս Տէր Ղազարեան գրած է, բայց կը վերջանայ «Յ»ով, որուն ձախ կողմի վերին քառորդ բոլորակը միայն կը պակսի․ իսկ վարինը՝ շատ լաւ կը տեսնուի պատկերին մէջ, այս ձեւով՝ Յ։

Ուրիշ դիտողութիւն մըն ալ։

---

1. Հ. Ալիշան կը կարդայ՝ «Լեւոն»։
2. Ա. տարի, թիւ 9, երես 409–410։
3. 1930, եր. 167։

Յիշեալ դրամին վրայի «Լեւոն» անունը կարդալու է՝ «Վ»ով, ո՛չ թէ «ւ»ով։ Ա՛յսպէս «Վ»ով կարդացած են Հ. Սիպիլեան և իր գործին հրատարակիչը՝ Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան)։

Դրամիս վրայ Ա. կողմի պատկերը կը ներկայացնէ՝ ասպետներու յատուկ զգեստով ու սաղաւարտով Լեւոնը, ձի հեծած, որ դէպ ի ձախ կ'արշաւէ. իսկ Բ կողմը՝ հաւասարաթեւ խաչ մըն է, որուն ծայրերը մէկ մէկ օղակ կը կազմեն։ Խաչին չորս խորշերուն բերանը կիսալուսիններ գծուած են։

Տարածութիւնն է՝ 23 հզըրդմետր։

Դրամիս շատ յաջող և մեծցուած մէկ լուսանկարը, զոր կը պարտիմ Պր. Հրանտ Բալուեանի, կը տեսնէք եռեւի Բ. Տախտակին վրայ, Թիւ 6, որ վերի պատկերէն աւելի վաւերական է։

Այս հազուագիւտ դրամէն չորս օրինակներ ծանօթ են ցարդ. — Երկուքը՝ Վիեննական Մխիթ. Մոնդրնին մէջ պահուած. երրորդը՝ Պարիսի Նուպարեան Մոնդրնը, Կիլիկիոյ Սահակ կաթողիկոսէն նուիրուած. իսկ չորրորդը՝ Դոկտ. Յարութիւն Տէր Ղազարեանի հաւաքածոյին մէջ, Բերիա։

---




77. Դրամ Թորոսի կամ Կոստանդնի.

Ռուբինեան իշխաններէ մէկուն կը վերաբերի նաեւ՝ նոյնպէս պղնձէ՝ անանուն դրամ մը, զոր Հ. Ղեւոնդ Ալիշան Թորոսի կամ Կոստանդնի կ'ընծայէ, և զոր կը կարծէ ըլլալ նախորդ դրամէն աւելի հին — «թերեւս հնագոյն քան զայդ[1]»։

Ասոր Ա. կողմին վրայ գծուած է դուռ մը (Ձեւ 77). շուրջը կը կարդացուի՝ ՇՆՈՐՀԱՒՔ բառը։ Բ կողմը՝ հաւասարաթեւ խաչ մը, որուն չորս անկիւնները մէկ մէկ կէտ. շուրջը՝ ՆԱՅԷ։ Ամբողջութիւնը կը կարդացուի.

ՇՆՈՐՀԱՒՔՆ ԱՅ Է

---

1. Հ. ՂԵՒՈՆԴ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ, Սիսուան, Համագրութիւն Հայկական Կիլիկիոյ, եր. 378.

## Բ. - ՌՈՒԲԻՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ [Les Rois Rubéniens]



78. Կնիք Կոստանդին Ա. Կաթողիկոսի.

*Ռուբինեան թագաւորները հետեւեալներն են.*

1· *Լեւոն Ա.* (1196-1219)·
2· *Զապէլ թագուհի* (1219-1252)·
3· *Փիլիպ* (1222-1225)·
4· *Հեթում Ա.* (1226-1270)·
5· *Լեւոն Բ.* (1270-1289)·
6· *Հեթում Բ.* (1289-...1305)·
7· *Թորոս* (1293-1293)·
8· *Սմբատ* (1296-1298)·
9· *Կոստանդին Ա.* (1298-1299)·
10· *Լեւոն Գ.* (1301-...1307)·
11· *Ուշին* (1308-1320)·
12· *Լեւոն Դ.* (1320-1342)·
13· *Կի կամ Կոստանդին Բ.* (1342-1344)·
14· *Կոստանդին Գ.* (1344-1363)·
15· *Լեւոն բռնակալ* (1363-1365)·
16· *Կոստանդին Դ.* (1365-1373)·
17· *Լեւոն Ե.* (1374-1375)։




79. և 80. Պատկեր և Ստորագրութիւն Լեւոն Ա. թագաւորի.

Ասոնց մէջէն դրամ չեն տպած՝ Փիլիպ, Թորոս և Լեւոն բռնակալ։

Գնենք նախ՝ Թագաւորներու Ացգացուցակն, և յետոյ՝ բոլորին Դրամները։

---

## ԼԵՒՈՆ Ա. [Léon I]

(1196-1219)

Լեւոն Բ. իշխան՝ որդին է Պարոն Ստեփանէի, ինչպէս որ իր իշխանական դրամին վրայ տեսանք. իսկ Թոռն է Լեւոն Ա. իշխանի։ Անիկա՝ 1196 Թուին՝ « Հայոց Թագաւոր » պսակուած է Տարսոնի մէջ. իսկ 1199 Յունուար 6ին՝ Թագաւոր օծուած է նոյնպէս Տարսոնի մէջ, Ս. Սոփիայ եկեղեցին, Գրիգոր Ապիրատ կաթողիկոսի ձեռքով։

Լեւոնի կողմէ բազմատեսակ դրամներ կոխուած են. – Պարոնութեան դրամ, Օծման դրամ, Ոսկեդրամ, Արծաթադրամ, Պղնձադրամ և լատինատառ դրամներ։

Պարոնութեան դրամը տեսանք վերը (Ձեւ 76)։



81. Օծման դրամ Լեւոն Ա. Թագաւորի.

ՕԾՄԱՆ ԴՐԱՄԸ՝ սովորաբար կը ներկայացնէ,

Ա կողմը. Քրիստոսի առջեւ Լեւոն՝ գլուխը Թագով և արքայական պատմուճան հագած՝ ծնրադիր, երկինքէն Հոգին Սուրբ՝ աղաւնիի կերպարանքով՝ վար կ'իջնէ։

Խորագիրն է. – շուրջանակի և երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմը. կռնակ կռնակի երկու առիւծներ, որոնց դէմքերը դարձած են երկուքին մէջտեղ կանգնուած կրկնաթեւ երկար խաչին։

*Խորագիրն է. – շուրջանակի և երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝*

\+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏԼ *կամ* ԱՍՏՈՒ

*այսինքն՝ «Կարողութեամբն Աստուծոյ»* (*Ձեւ* 81)։

— *Տարբերութիւնք. Ա կողմը՝ երկինքէն իջնող Հոգին Սուրբի տեղ՝ ձեռք մը, որ Լեւոնը կ'օծէ։ Խորագիրն է՝* ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)։ *Բ կողմը՝ կրկնառիւծներու տեղ՝ հանդիպահայեաց առիւծ մը միայն, որ դէպ ի աջ կը քալէ և աջ թաթովը կրկնաթեւ խաչ մը կը բռնէ։ Խորագիրն է՝* ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍԼ։

— *Տարբ. Ա կողմը՝ օրհնող ձեռքի տեղ՝ վերէն բազուկ մը կ'երկարի, որ Լեւոնի գլուխը թագ կը դնէ։ Բ կողմը՝ աջ քալող խաչակիր առիւծ մը։*

*Տարբ. Ա կողմը՝ ձեռքի կամ թէ աղաւնիի փոխարէն՝ երկինքէն լոյսի ճառագայթներ շողի պէս վար կ'իջնեն։ Բ կողմը՝ կրկնառիւծներ։*

*Տարբ. Ա կողմի խորագիրն է՝* + ԼԵԼՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ(Յ)ՈՑ. *իսկ Բ կողմի խորագիրն է՝* + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ(ՈՅ)։

*Լեւոնի այս դրամները՝ բոլորն ալ արծաթէ՝ տպուած են Տարսոնի մէջ, մօտաւորապէս* 1199*ին, իր թագաւոր օծուելուն ի յիշատակ։*



82. *Ոսկեդրամ Լեւոն Ա.ի (Ա. տեսակ).*

Ո = ՈՍԿԵԴՐԱՄ. *Դենար. Տրծ.* 21 *հզրրդմետր։ Լեւոնի երկու տեսակ Ոսկեդրամ գիտենք, որոնցմէ առաջին տեսակին նկարագրութիւնն է.*

*Ա կողմ. Լեւոն հանդիպահայեաց՝ գահի վրայ բազմած է, գլուխը թագով. աջ ձեռքը խաչ մը կը բռնէ, իսկ ձախը՝ շուշան մը. գահը հաստատուած է երկու առիւծներու վրայ։*

*Խորագիրն է. – շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝*

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ. հանդիպահայեաց թագակիր առիւծ մը, որ դէպ ի ձախ կը քալէ և աջ թաթովը կրկնաթեւ խաչ մը կը բռնէ. իսկ դաշտին վրայ՝ առիւծին առջեւ՝ «h»ի նման նշան մը (Ձեւ 82)։

Խորագիրն է. – Ա. կողմին նման՝ շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

— Տարբ. Առիւծաբարձ գահի վրայ բազմած նոյն պատկերն է Ա. կողմը, հետեւեալ գրութեամբ.

+ ԼԵՒՈՆ ԹԱ+ԱՒՈՐ ՀԱՅՈՑ

«Գ»ի տեղ՝ խաչանիշով, իսկ «Ե»ի ու «Ն»ի՝ անկատար գծիկներով։

Բ կողմը՝ մի և նոյն առիւծն է, կրկնաթեւ խաչով ու առջեւի h նշանով. միայն թէ գրութեան վերջին մասը կը տարբերի քիչ մը, այսպէս.

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒՍՈՅ

փոխանակ գրելու՝ «Աստուծոյ»։



83. Ոսկեղրամ Լեւոն Ա.ի (Բ. տեսակ).

Լեւոն Ա.ի Ոսկեղրամին երկրորդ տեսակն կը ներկայացնէ.

Ա. կողմ՝ պատկերը նոյն է, այլ խորագիրը փոքր տարբերութիւն մը ունի, այսպէս.

+ ԼԵՒՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

«Լեւոն» առնց Ո–ի։

Բ կողմ՝ կռնակ կռնակի երկու առիւծներ, որոնց դէմքերը դարձած են երկուքին միջեւ կանգնուած կրկնաթեւ խաչին (Ձեւ 83)։ Այս կողմի խորագիրն ալ փոքր տարբերութիւն մը ունի.

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈ

«Աստուծոյ» առանց Յ–ի։

***

Հանգուցեալ դրամագէտն Սերովբէ Մ. Ալիշան (եղբայրն Հ. Ղեւոնդ Մ. Ալիշանի) 24 Դեկտ. 1885ին առ Հ. Ա. Անտոնեան յղած նամակով մինչեւ այն թուականը ծանօթ հայկական ոսկեդրամներու մէկ ցանկն հաղորդած է[1], զոր կը ներկայացնեմ հետաքրքիր ընթերցողներուս.

1. Լեւոն Բ, Հ. Փիլիպպոս Թէրզիմանեանի քով, Բերայի 1831ի հրդեհին այրած։

2. Կոստանդին Ա, որ կը պատկանէր Հ. Ալիշանի հօր՝ Պետրոս Մարգար Ալիշանի (+ 1834). այժմ ի Ս. Ղազար։

3. Լեւոն Ա, Ճանիկ Ամիրայի սեպհականութիւն. այժմ կորսուած։

4. Լեւոն Ա, կեսարիոյ վանքի մը վարդապետի քով. այժմ կորսուած։

5. Լեւոն Ա, Սերովբէ Ալիշանի սեպհականութիւն. այժմ ի Ս. Ղազար։

6. Լեւոն Ա, Գ. Շլումբերգէրի սեպհականութիւն։

7 Լեւոն Ա, կեսարացիներէ գնուած և ղրկուած Պարիս. դրամահաւաք-վաճառական Ռօլէնի ձեռքով կրկին վաճառուած։

8. Լեւոն Ա, նոյն Ռօլէնի քով։

Ասոնց վրայ կը բարդենք Սերովբէ Ալիշանի առ Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան յղած նամակով կատարած հետագայ յաւելումները.

9. Լեւոն Ա, ի Կ. Պոլիս։

10. Հեթում Ա-Լեւոն Բ, այժմ ի Ս. Ղազար։

11. Լեւոն Ա, Պարիսի Ազգային Մատենադարանը։

12. Հեթում Ա-Լեւոն Բ, (այլ). ո՞ւր. չեմ գիտեր։

13. Լեւոն Ա, Արեւելքէն Պարիսի Ազգ. Մատենադարանի առաջարկուած։

14. Լեւոն Ա, Ռօլէնի քով։

Ասոնցմէ զուրս՝ երկու հայ ոսկեդրամներ եւս ծանօթ են ինձ, որոնք ցանկիս մէջ չեն մտած.

15. Լեւոն Ա, Նշան Գալըպճեանի սեպհականութիւն։

16. Լեւոն Ա, Հայկազն Հաբէշեանի հաւաքածոյին մէջ։

***

---

1. Տե՛ս Սիվիլեանի «Դասաւորութիւն Ռուբինեան դրամոց», եր. 13։

Ա — ԱՐՏԱԹԱԴՐԱՄ. Երկդրամեան. Տրմ. 28 հզըրդմետր։ Լեւոն Ա.ի Արծաթ Երկդրամեանները կը նմանին իր Ոսկեդրամներուն, թէ՛ պատկերով և թէ՛ շատ անգամ՝ խորագրով ալ, այսպէս.

Ա. կողմ՝ մեզի ծանօթ պատկերն է։

Խորագիրն է. — մարգարտաշար երկու բոլորակներու մէջ՝ «Վ»ով՝

\+ ԼԵՒՈՎՆ ԹԳՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ ձախ դարձած թագակիր և հանդիպահայեաց առիւծ մը, որ կը քալէ և աջ թաթովը կրկնաթեւ խաչ մը կը բռնէ. դաշտին վրայ՝ առիւծին աջեւ՝ հինգթերթեան ծաղիկ մը. իսկ առիւծին տակն ու վրան՝ մէկ մէկ կէտ։

Խորագիրն է. — նոյնպէս երկու բոլորակներու մէջ՝

\+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

— Տարբերութիւնք. Ա. կողմը՝ առանց «Վ»ի՝

\+ ԼԵՒՈՆ ԹԳՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

Բ կողմը՝ նոյն առիւծը, բայց առանց աջեւի ծաղիկին. իսկ խորագիրը

\+ ԿԱՐՈՂՈՒԹՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

— Տարբ. ԵԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ լատինական G տառով, խիստ հազուագիւտ։

ԱՐԾԱԹ Դահեկան. Տրմ. 23 հզըրդմետր։

Ա. կողմ՝ Լեւոն առիւծաբարձ գահի վրայ, հանդիպահայեաց, աջ ձեռքը խաչակիր աշխարհագունտ մը, իսկ ձախը՝ շուշան։

Խորագիրն է. — + ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒ ՍՒ

Բ կողմ՝ կռնակ կռնակի տուած կրկնառիւծներ, մէջտեղը կրկնաթեւ խաչ։

Խորագիրն է. — + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ(ՈՅ)

ԱՐԾԱԹ Դրամները կամ կէս-երկդրամեանները (Տրմ. 21 հազարորդամետր) նախորդներէն աւելի շատ են, և այս տարածութեամբ դրամներն՝ ընդհանրապէս՝ աւելի ընթացիկ դրամներ կը համարուին։

Այս կէս-երկդրամեաններն ալ շատ նման են նախորդներուն, սակայն այս տարբերութեամբ՝ որ ոմանց քով Բ կողմի պատկերը կը ներկայացնէ ո՛չ թէ քալող առիւծ մը, այլ առհասարակ իրարու կռնակ դարձուցած կրկնառիւծներ։

*Ա կողմը՝ Լեւոն առիւծաբարձ գահի վրայ բազմած, աջ ձեռքը խաչ, ձախովը՝ շուշան բռնած է։*

*Խորագիրն է. – մարգարտաշար երկու բոլորակներու մէջ՝*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

*Բ կողմ՝ ձախ դարձած Թագակիր և հանդիպահայեաց առիւծ, որ ձախ կը քալէ և աջ Թաթովը կրկնաԹեւ խաչ մը կը բռնէ. իսկ դաշտին վրայ՝ առիւծին առջեւ՝ ծանօԹ* h *տառը։*

*Խորագիրն է. – մարգարտաշար երկու բոլորակներու մէջ՝*

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

*— Տարբերութիւնք. Բ կողմը՝ սովորական կրկնաոիւծներ, երկուքին միջեւ կրկնաԹեւ խաչ մը բարձրացած է։*

*Խորագիրն է. –* + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

*— Տարբ. Ա կողմի խորագիրն է՝* + ԼԵՒՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

*Բ կողմի խորագիրն է՝* + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈ, *առանց «Յ»ի. ճիշտ Ջեւ 83 ոսկեդրամին նման։*

*— Տարբ. Ա կողմի խորագիրն է՝*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԱՍՑ

*այսինքն՝ «Լեւոն Թագաւոր Հայաստանեաց»։*

*Բ կողմը՝ սովորական կրկնաոիւծները, կրնաԹեւ խաչով։ Խորագիրն է՝*

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈ, *առանց «Յ»ի։*

*— Տարբ. Ա կողմ՝ Լեւոն աջ ձեռքով խաչակիր գունտ մը կը բռնէ, իսկ ձախովը՝ շուշան. խորագիրն է՝ անԹերի.*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

*Բ կողմ՝ ձախ քալող Թագակիր առիւծ, հանդիպահայեաց. աջ ԹաԹովը կրկնաԹեւ խաչ կը բռնէ։*

*Խորագիրն է, աԹերի գրուած.*

+ ԿԱՐՈՂՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

*— Տարբ. Բ կողմի խորագիրն է՝ ձախ քալող առիւծին շուրջը,*

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

— Տարբ. Ա կողմի խորագիրն է՝

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳՈՐ ԱՄԵՆ ՀԱՅՈՑ

այսինքն՝ «Լեւոն Թագաւոր ամենայն Հայոց»:

Բ կողմ՝ սովորական կրկնաւիւծներն, ու խորագիրս՝

\+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏԾՈ

փոխանակ գրելու՝ «Աստուծոյ»:

— Տարբ. Ա կողմի խորագիրն է՝

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ կրկնաւիւծ, և

\+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ Է

— Տարբ. Ա կողմի խորագիրն է՝

\+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ. Ծ. ՀԱՅ*ՈՑ

Բ կողմ՝ կրկնաւիւծ, և՝

\+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏԾՈ(Յ)

— Տարբ. Ա կողմի խորագիրն է՝

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԱՑ

Բ կողմ՝ կրկնաւիւծ, և՝

\+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՈ (ԳԾԼԳ) կամ (ԳԾԼԳ)

Այս դրամը կեղծ է:

ԱՐԾԱԹ կիսադրամներ Լեւոնի: Ասոնք ալ գրեթէ միւսներուն նման են: Տարածութիւնն է 17 հզրրդմետր:

Ա կողմ՝ գահի վրայ բազմած է Լեւոն, մի և նոյն դիրքի մէջ: Խորագիրն է. — մարգարտաշար երկու բոլորակներու մէջ՝

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ նոյն կրկնաւիւծներն ու կրկնաթեւ խաչը:
Խորագիրն է. — + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈ(Յ)

— Տարբ. Այս կիսադրամներէն հատ մը կայ, որ խիստ հետաքրքրական է:

Ա կողմը կը ներկայացնէ հանդիպահայեաց Լեւոնը, առիւծակիր գահի վրայ բազմած. աջ ձեռքը խաչակիր գունդ, իսկ ձախովը՝ շուշան մը բռնած:

Խորագիրն է. — + ԼԵ-ԽՈ- -( ՆԹԱԳ

*Բ կողմ՝ ձախ քալող հանդիպահայեաց առիւծ, որ իր աջ թաթով կրկնաթեւ խաչ մը բռնած է։*

*Խորագիրն է.* — + ԱԻՈՐ ՀԱՅՈՑ

*որ Ա. կողմի կիսատ բառը կը լրացնէ, ամբողջութիւնը կարդալով. «Լեւոն Թագաւոր Հայոց»։*



84. *Պղնձադրամ Լեւոն Ա. Թագաւորի.*

Գ — ՊՂՆՁԱԴՐԱՄ. *Լեւոն Ա.ի Պղինձ դրամները բոլորովին տարբեր են Ոսկիններէն և Արծաթներէն։*

*Հոս՝ փողերը (Տրծ.* 30 *հզրրդմետր) նոյն մեծութիւնն ունին, ինչ մեծութիւն որ ունին իր արծաթ Երկդրամեանները։*

*Շրջափակ երկու բոլորակները՝ մարգարտաշար չեն, այլ պարզ գծեր են, որոնց*

*Ա. կողմ՝ կեդրոնը՝ նկարուած է առիւծի թագապսակ գլուխ մը, հանդիպահայեաց դէմքով։*

*Խորագիրն է. — երկու բոլորակ գծերու մէջ՝*

+ ԼԵԻՈՆ ԹԱԳԱԻՈՐ ՀԱՅԻՈ(Ց)

*Բ կողմ՝ նոյնպէս կեդրոնը՝ կրկնաթեւ խաչ մը միայն, որուն խարսխին երկու կողմը մէկ մէկ աստղ (Ձեւ* 84)։

*Խորագիրն է. — երկու բոլորակ գծերու մէջ՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

— *Տարբերութիւնք. Ա. կողմ՝* + ԼԵԻՈՆ ԹԱԳԱԻՈՐ ՀԱՅԻՈ

— *Տարբ. Ա. կողմ՝* + ԼԵԻՈՆ ԹԱԳԱԻՈԻ ՀԱՅԻՈ

— *Տարբ. Ա. կողմ՝* + ԼԵԻՈՆ ԹԱԳԱԻՈՐ ՀԱՅՈ

— *Տարբ. Ա. կողմ՝* + ԼԵԻՈՆ ԹԱԳԱԻՈՐ ՀԱՅԻ

— *Տարբ. Բ կողմ՝* + ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍԻ

— *Տարբ. Ա. կողմ՝* + ԼԵԻՈՆ ԹԱԳԱԻՈՐ, *առանց «Հայոց»ի.*
*Բ կողմ՝* + ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ, *առանց խաչին քովի աստղերուն։*

— Տարբ. Ա. կողմ՝ + ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԻ
Բ կողմ՝ + (Շ)ԻՆԱԾ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍԻ

ճիշդ այսպէս, Բրիտանական Թանգարանի հաւաքածոյին մէջ։

— Տարբ. Բ կողմ՝ + ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՍ Ի ՍԻ(Ս)



85. Լեւոն Ա.ի լատինատառ դրամը.

Ած = ԱՐԾԱԹԱՊՂԻՆՁ. Լեւոն Ա.է երկու տեսակ լատինագիր Արծաթապղինձ Դենարներ ծանօթ են, երկուքն ալ Անտիոքի մէջ տըպուած, երբ Լեւոն Անտիոքի տէր դարձած էր ժամանակաւոր կերպով (Ձեւ 85)։

Առաջին տեսակին տրմ. է 19 հզրրդմետր։

Ա. կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ խաչ մը։

Խորագիրն է. – շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ LEO DEI GRATIA

այսինքն՝ «Լեւոն, շնորհիւն Աստուծոյ»։

Բ կողմ՝ կեդրոնը Լեւոնի հանդիպահայեաց թագակիր կիսանդրին։

Խորագիրն է. – շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ REX ARMENIOR

այսինքն՝ «Թագաւոր Հայաստանի»։

Երկրորդ տեսակին տրմ. է 18 հզրրդմետր։

Ա. կողմ՝ կեդրոնը նոյնպէս հաւասարաթեւ խաչ մը։

Խորագիրն է. – շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ LEO REX

այսինքն՝ «Լեւոն Թագաւոր»։

Բ կողմ՝ կեդրոնը Լեւոնի հանդիպահայեաց թագակիր կիսանդրին, մօրուսաւոր։

Խորագիրն է. — շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ARMENOR

այն է՝ «Հայոց»։

---

## ՈՍԿԵԿՆԻՔ ԼԵՒՈՆ Ա. ԹԱԳԱՒՈՐԻ

Այս գլուխը չեմ կրնար փակել առանց խօսելու Լեւոն Ա. Թագաւորին կնքոյն վրայ[1], զոր հպարտօրէն կը դրոշմէր ան իր հրովարտակներուն տակ, և կը վաւերացնէր զանոնք իր ձեռնագիր ստորագրութեամբ[2]։

Լեւոնին կնիքը գրեթէ նման է իր դրամներուն, սա տարբերութեամբ որ կնքոյն տարածութիւնն է 45 հզրդմետր։

Ա կողմ՝ Լեւոն ոսկեճամուկ և գոհարազարդ պատմուճանով, հանդիպահայեաց դիրքով, գահ բազմած է. գլուխը թագ. աջ ձեռքով խաչակիր աշխարհագունտ մը բռնած է, իսկ ձախովը շուշան մը, կամ շուշանակիր մական մը։ Գահը՝ սովորականին նման՝ հաստատուած է երկու առիւծներու վրայ։

Խորագիրն է. — շուրջանակի և երկու մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ ձախ դարձած Թագակիր և հանդիպահայեաց առիւծ մը, որ կը քալէ և աջ թաթովը մինչեւ խաչ մը կը բռնէ։

Խորագիրն է. — Նոյնպէս երկու մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ԼԵՈՆ ԿՔԵԱՑ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

որ է՝ «Լեւոն կնքեաց, Թագաւոր Հայոց»։

— Տարբ. Վատիկանի Մոնդըն.ի օրինակին տրծ.ը՝ վերինէն — Գենովայցւոց տրուած հրովարտակին կնիքէն — քիչ մը կը տարբերի։ Հոս՝ տրծ.ը 40 հզրրդմետր է. իսկ Թագաւորին նստած գահը՝ առիւծներու վրայ հաստատուած չէ, այլ ջայլամներու վրայ։ Ասոնցմէ զատ՝ Բ կողմի արձանագրութիւնը, որ ճշտութեամբ ԿՔԵԱՑ կը կարդացուի, — որոշ կերպով Կ–ով և Ե–ով, — Ալիշան կը կարդայ՝ ԼԵՈՆ Ի ՔԷ ԱՑ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ։

---

1. Պատկերը տե՛ս Ջեւ 67։
2. Պատկերը տե՛ս Ջեւ 80։



86. Լեւոն Ա.ի արծաթէ կնիքը (?)

## ԼԵՒՈՆ Ա· ԹԱԳԱՒՈՐԻ ԱՐԾԱԹ ԿՆԻՔԸ (?)

1900ին Պարիսի մէջ հայ հնավաճառէ մը գնեցի մեր «Լեւոն Թագաւորի կնիքը» համարուած արծաթ մը, որուն տարածութիւնն է 53 հզրրդմետր, իսկ ծանրութիւնը՝ 6 գրամ, առանց կոթի։

Այս կնիքն երկու կարգ մարգարտաշար և ծաղկազարդ շրջանակներու կեդրոնը՝ հանդիպահայեաց թագակիր առիւծ մը կը ներկայացնէ, որ ձախ կը քալէ։ Աջ ձեռքով բռնածի պէս է կրկնաթեւ խաչ մը. իսկ առջեւը՝ դաշտին մէջ՝ Լեւոնի առաջին տեսակի ոսկեդրամներուն նմանող նշան մը, որ հոս բացարձակապէս «Ի» է, փոխանակ «Ի»ի (Ձեւ 86)։

Կնիքս երկկողմանի չէ, և խորագիր ալ չունի։

Ցայտնի է, թէ այս կնիքները թղթի կամ թէ մագաղաթի վրայ կոխելու համար չեն, այլ կնքամոմի վրայ։

---



87 և 88. Զապէլ–Հեթում Ա.ի արծաթադրամները.

## ԶԱՊԷԼ ԹԱԳՈՒՀԻ ԵՒ ՀԵԹՈՒՄ Ա· [Zabel et Hétoum I]

(1219–1270)

Որովհետեւ Լեւոն Ա. մանչ զաւակ չունէր, իրեն յաջորդ դրուեցաւ իր աղջիկը՝ Զապէլ։ Բայց իշխանութիւնը առանձինն վարելու

անկարող էր ան. ուստի՝ նախ Ֆիլիպի հետ անյարմար ամուսնութիւն մը կնքել տալէ ետք՝ երկրորդ անգամն ըլլալով ամուսնացուցին զայն Հեթումի հետ, և Հայաստանի ղեկը յանձնեցին նորապսակ ամոլին։

Այս երկուութեան ի նշան գոյութիւն ունին Զապէլի և Հեթումի միացեալ դրամները, որոնց վրայ տպուած են երկուքին պատկերները, բայց առանց յիշատակութեան Զապէլի անուան, այլ միայն Հեթումի անունը կը կարդանք հոն։ Ժամանակ մը ետք՝ Հեթում առանձինն դրամ ալ տպեց. իսկ Զապէլի առանձին դրամը չենք տեսած։

Զապէլ – Հեթումեան դրամներն երկու տեսակ են. Դրամ (տրծ. 21 հզըրդմետր) և կիսադրամ (տրծ. 17 հզըրդմետր), որոնց գրեթէ բոլորն ալ արծաթ են և իրար կը նմանին։ Պղնձէ միացեալ դրամ շատ հազուագիւտ է։

ԱՐԾԱԹԱԴՐԱՄ. Զապէլ – Հեթումեան արծաթ դրամներուն և կիսադրամներուն

Ա կողմը՝ աջ քալող թագակիր առիւծ մը կայ, որուն կռնակն ի վեր կը բարձրանայ խաչ մը, զոր երբեմն իր թաթովը կը բռնէ առիւծը։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմը՝ Զապէլի և Հեթումի ամբողջական պատկերները, երկուքն ալ ոտքի վրայ կեցած. երկուքին միջեւ կը բարձրանայ երկար խաչ մը (Ձեւ 87 և 88)։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆՆ ԱՅ Է

այսինքն՝ «Կարողութիւնն Աստուծոյ է»։

— Տարբերութիւնք. Ա կողմ՝ քալող առիւծն հանդիպահայեաց է։ Խորագիրը՝ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ – ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆՆ ԱՅ Ւ։

— Տարբ. ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ

— Տարբ. ·+· ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ

— Տարբ. ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԵ

— Տարբ. ԿԱՐՈՂՈԹԻՒՆՆ ԱՅ Ի

— Տարբ. ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ – ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆՆ ԱՅ

— Տարբ. ԿԱՐՈՂՈԹԻՒՆՆ, ԿԱՐՈՂՈՒԹԻՆՆ, ԿԱՐՈՂՈՒԹԻՆ, ԿԱՐՈՈՈՐԻԵՆՆ։

* * *

Զանազան հաւաքածոներու մէջ Հեթումի տարօրինակ մէկ արծաթադրամը կայ, որ բոլորովին տարբեր է Զապէլ–Հեթումի դրամներու պատկերներէն, որոնց վրայ որոշ կերպով նկարուած են Զապէլ և Հեթում, երկուքն ալ թագակիր. իսկ այս տարօրինակ դրամին Ա. կողմին վրայ՝ Հեթումի քով՝ կնգղաւոր կամ սրածայր գլխանոցով, կամ վեղարով և կամ միթրով մէկը կ'երեւայ, զոր ողբացեալ գիտնականն Հ. Սուքիաս Վ. Պարոնեան՝ Հայոց կաթողիկոսը կը կարծէր. իսկ Սիպիլեանի ծանօթ «Դրամագիտութեան» բազմահմուտ հրատարակիչը՝ Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան՝ հակառակը կը պնդէր։

Այս տարօրինակ դրամին Բ կողմի

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿԱՐՈՂՈԹԻՒՆՆ ԱՅ Է

Ա. կողմը՝ աջ քալող հանդիպահայեաց առիւծ մը կայ, որուն կռնակէն վեր կը բարձրանայ երկար խաչ մը։

Խորագիրն է. – մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

*
* *

ՈՍԿԵԴՐԱՄ. Դենար. Ժամանակագրական կարգով Հեթումի միացեալ մէկ ուրիշ տեսակ դրամն ալ գիտենք, որ ոսկի է, և տպած է իր որդւոյն՝ Լեւոն Բ.ի հետ միասին, երբ այս վերջինը գերութենէ վերադարձաւ և իր հօր աջակից եղաւ։

Տարածութիւնն է 21 հազարորդամետր, և կը կշռէ 6 գրամ[1]։

Ա. կողմ՝ Լեւոն հանդիպահայեաց՝ գահի վրայ բազմած է, գլուխը թագով. աջ ձեռքը խաչ, ձախը՝ շուշան կամ նիզակ. գահը հաստատուած է երկու առիւծներու վրայ։ Դաշտին մէջ՝ աջ և ձախ՝ երեքական կէտեր կան։

Խորագիրն է. – շուրջանակի երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝

+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ հանդիպահայեաց թագակիր առիւծ մը, որ դէպ ի աջ կը քալէ և ձախ թաթով բարձր խաչ մը կը բռնէ։

---

1. Այս ստուգումը կը պարտիմ հնագէտ Հ. Վարդան Վ. Հացունի բարեկամիս։

Խորագիրն է. — նոյնպէս երկու կարգ մարգարիտներու մէջ՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ



Æ

89 և 90. Հեթում Ա.ի Պղնձադրամն և Ստորագրութիւնը.

ՊՂՆՁԱԴՐԱՄ. Հեթում Ա.ի պղնձադրամներուն շրջափակ բոլորակներն՝ ոմանց վրայ մարգարտաշար են, իսկ ոմանց վրայ պարզ գծեր են։ Նոյնպէս և թագաւորն՝ ըստ սովորութեան՝ ընդհանրապէս գահի վրայ բազմած է, բայց երբեմն ալ ձիաւոր է։ Հայ դրամներու վրայ՝ Հեթում Ա.է կը սկսի թագաւորը ձիու վրայ նստած ներկայացնել, հետեւելով Սելճուկեանց։

Հեթումի պղինձ դրամներուն Բ կողմի խաչին անկիւնները՝ զանազան նշաններ կան ինչպէս՝



Փող. Ա կողմ՝ Հեթում թագակիր և հանդիպահայեաց դէրքով՝ անաւուծ գահի մը վրայ բազմած է. աջ ձեռքով կը բռնէ շուշան մը կամ շուշանագլուխ մական մը, ձախովը՝ վրան խաչակիր աշխարհագունտ մը (Ձեւ 89)։

Տարածութիւնն է 28 հզրրդմետր։

Խորագիրն է. — երկու բոլորաձեւ գծերու մէջ՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱյ

«յ» տառն այսպէս բոլորգիր գրուած։

Բ կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ խաչ մը, որուն չորս անկիւններուն մէջ ճառագայթաձեւ երկերկու կէտ։

Խորագիրն է. – Նոյնպէս երկու բոլորակ գծերու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱԳՆ Ի ՍԻՍ

այսպէս՝ «գաղագ», Գ–ով, փոխանակ Ք–ի։

Դանգ. Ա կողմ՝ Հեթում նստած է առիւծներու կռնակը հաստատուած գահի մը վրայ։

Տարածութիւնն է 24 հզրրդմետր։

Խորագիրն է – + ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ(ՈՑ)

Բ կողմ՝ հաւասարաթեւ խաչին անկիւններուն մէջ կէտ չկայ, այլ ճաճանչ։

Խորագիրը. – Նախորդ դրամին նման է. «քաղաք» բառի երկու Ք–երն ալ՝ Գ–ով։

— Տարբերութիւնք. Տրծ. 25 հզրրդմետր։ Ա կողմ՝ Հեթում նստարանի մը վրայ նստած, հանդիպահայեաց, թագակիր, աջ ձեռքը մական, ձախովը՝ խաչակիր աշխարհագունդ մը բռնած։ Դաշտին վրայ՝ թագաւորին աջ թեւին քով՝ աստղ մը։ Խորագիրն է՝ երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ կեդրոնը ճաճանչաւոր խաչ։ Խորագիր՝ մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

«քաղաք»ը՝ երկուքն ալ Ք–ով։

— Տարբ. Ա կողմ՝ Հեթում ձի հեծած, ձեռքը շուշանագլուխ մական, կ՚արշաւէ դէպ ի աջ. դաշտին վրայ՝ ետեւը՝ խաչ մը կայ։ Խորագիրն է՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ. կողմի խորագիրն է՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱԳՆ Ի ՍԻՍ

դարձեալ «քաղաք»ը՝ Գ–ով. երբեմն ալ ուղիղ՝ Ք–ով։

— Տարբ. Հեթում Ա.ի խղնջաձեւ քանդակով խիստ հազուագիւտ մէկ պղնձադրամն ալ կայ Վիեն. Մխիթ. Մատենադարանին մէջ, տարօրինակ ընթերցուածով մը.

Ա կողմ՝ + ՀԵԹՈՒ... ԱԳՈ... ՎՈ
Բ կողմ՝ + ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱ

Հեթում Ա.ի պղնձադրամներուն տեսակները շատ են, զորոնք չենք կրնար ամբողջութեամբ ներկայացնել հոս։

*
* *

Թանգարաններու մէջ և հնասէր ու հնահաւաք անձանց և ազգային քով՝ կը գտնուին նաեւ Հեթում Ա.ի երկլեզուեան Դրամներն ու կիսադրամները, որոնց մէկ կողմը հայերէն՝ իսկ միւս կողմն արաբերէն տառերով ու լեզուներով խորագիրներ դրոշմուած են, ի նշան դաշնակցութեան սելճուկեան սուլտաններու հետ։ Այս դրամներու մասին խօսած եմ ներկայ աշխատութեանս Թ.րդ՝ «Սելճուկեան Շրջան» գլխուն մէջ[1]. ուստի՝ նոյն պատկերներէն մէկը (Զեւ 66) կրկնելով հոս, աւելորդ կը նկատեմ անոնց նկարագրութիւնը նորէն ընել։



66. Հեթում Ա.ի երկլեզուեան արծաթադրամները.

ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ. — Ցաւելի է, որ Ժաք դը Մորգանի Hist. du peuple arménien գործին մէջ, եր. 206, Հեթում Ա.ի ու Լեւոն Բ.ի դրամներն իրարու հետ շփոթուած են, և երկուքին տակն ալ Monnaies de Léon II գրուած է։

---

1. Մասնաւոր կերպով տեսնել եր. 124–127։



91 և 92. Լեւոն Բ.ի Արծաթադրամն և Ստորագրութիւնը.

## ԼԵՒՈՆ Բ. [Léon II]

(1270–1289)

ՈՍԿԵԴՐԱՄ. *Հեթում Ա.ի միացեալ ոսկեդրամի մասին խօսած ժամանակս ըսած եմ, թէ ի՛նչ պայմաններու մէջ Հեթում ոսկեդրամ մը տպեց իր որդւոյն՝ Լեւոն Բ.ի ընկերակցութեամբ. և նկարագրած եմ հոն նոյն ոսկեդրամը*[1]:

*Լեւոն Բ. ունի նաեւ առանձինն տպած ոսկեդրամ, որուն*

*Ա. կողմը՝ կեդրոնը՝ կայ Լեւոն ձի հեծած:*

*Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝*

+ ԼԷՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

*այսպէս «է»ով, և առանց «ւ»ի:*

*Բ կողմը՝ կեդրոնը՝ փոքր առիւծ մը:*

*Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

*Այս դրամն, որուն գոյութիւնը տեսանք հոս* (*եր.* 143), *Բերայի* 1831*ի հրդեհին այրած է բայց Հ. Գր. Գալէմքեարեան կրցած է բարեբախտաբար՝ Հ. Փիլիպպոսի ձեռագիրներուն մէջ գտնել խորագիրը, և զետեղել Սիպիլեանի գործին մէջ, եր.* 37.

ԱՐԾԱԹ. *Դրամ. Տրծ.* 22 *հզրրդմետր: Լեւոն Բ. թագաւորի մեծ ու պզտիկ բոլոր արծաթ դրամներն՝ իրարու նման են. բոլորին վրայ ալ թագաւորը թագ կը կրէ, ձիաւոր է, և համդիպահայեաց դիրքի մէջ կը գտնուի: Թագաւորին ձին՝ որ աջ դարձած է, ոմանց վրայ կը քալէ, իսկ ոմանց վրայ ալ՝ քառասմբակ կ՚արշաւէ:*

1. *Տե՛ս երես* 152–153.

*Ա. կողմ՝ կեդրոնը Լեւոն թագակիր և ձիաւոր. ձախ ձեռքով ձիուն սանձը կը բռնէ, իսկ աջովը՝ նիզակ մը և կամ շուշանաձեւ մական մը կը բռնէ։*

*Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

+ ԼԵՈ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈ

*Բ կողմ՝ դէպ ի ձախ քալող հանդիպահայեաց առիւծ մը, որ կրկնաթեւ խաչ մը կը կրէ։*

*Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար բոլորակներու մէջ՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

*— Տարբերութիւնք. Ա. կողմ՝ Լեւոնի ձախ ուսին քով մարգարիտէ խաչ մը։ Խորագիրը, յոյժ հետաքրքրական.*

+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱ ՅՈ

*Բ կողմ՝ առիւծին կռնակի խաչը միաթեւ է։*

*— Տարբ. Ա. կողմ՝ Լեւոնի երկու կողմերն և ձիուն փորին տակ՝ մէկ մէկ աստղ (Ձեւ 91)։ Խորագիրը՝*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԱ

*Բ կողմ՝ առիւծը կրկնաթեւ խաչ ունի և աջ կողմ կը քալէ։*

*Տարբ. Ա. կողմ՝ Լեւոնի գլխուն ձախ կողմը՝ կիսալուսին մը, աջ թեւին քով՝ աստղ մը, ձիուն առջեւ՝ խաչ մը։ Խորագիրը՝*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՍ

*Բ կողմ՝ առիւծն աջ կը քալէ. կռնակի խաչը կրկնաթեւ է։ Խորագիրը՝*

+ ՇԻՆԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍԻ

*— Տարբ. Ա. կողմ՝* + ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱ...Ս

*Բ կողմ՝ կրկնաթեւ խաչով առիւծը՝ ձախ կը ձալէ։ Խորագիրը՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂ...Ն Ի ՍԻՍ Ի ՓԱՌՍ Ս

*այսինքն՝ «Շինեալ ի գաղագն ի Սիս, ի փառս Աստուծոյ»։*

*Ա. Կիսադրամ. Տրծ. 15 հգրրդմետր։ Լեւոն Բ.ի արծաթ կիսադրամներուն վրայի պատկերն՝ իր Դրամներուն հետ գրեթէ նոյն է։*

*Ա. կողմ՝ ձիաւոր Լեւոն, որ հանդիպահայեաց է, թագ չի կրեր. աջ ձեռքը խաչ մը բռնած է։*

Խորագիր՝ կայ մարգարտաշար միակ շրջանակէ մը դուրս, բայց անընթեռնլի։

Բ կողմ աջ քալող առիւծ, որ ձախ թաթով միաթեւ խաչ մը կը բռնէ։

Խորագիր՝ մարգարտաշար միակ շրջանակէ դուրս, հազիւ թէ ընթեռնլի՝... ԱՂԱՔՆ Ի ՍԻՍ։

— Տարբերութիւնք. Ա կողմ՝ ձիաւոր և անթագ Լեւոնի դէմքին ձախ կողմը՝ կիսալուսին, կոնակը՝ աստղ, ձիուն դունչին առջեւ նշան մը, իսկ թագաւորն աջ ձեռքով լախտ մը կը բռնէ։ Խորագիր՝ միաշար մարգարտէ շրջանակէ դուրս հայերէն տառերու հետքերը միայն կ՚երեւան։

— Տարբ. Ա կողմ՝ ձիաւոր Լեւոն թագ կը կրէ, և աջ ձեռքով կրկնաթեւ խաչ մը կը բռնէ. թագաւորին աջ թեւին քով նշան մը։ Խորագիր՝ նոյնպէս անընթեռնլի։

Բ կողմ՝ առիւծը ձախ կը քալէ. կոնակը միաթեւ խաչ։ Խորագիր՝ հետքն անգամ չկայ։

Մանր կիսադրամ։ Տրծ. 8 հզրրդմետր։ Յիշեալ կիսադրամներէ դուրս՝ Լեւոն Բ. ունի նաեւ շատ տեսակ Մանր կիսադրամներ. որոնք՝ գրեթէ բոլորն ալ՝ անխորագիր են, և որոնց վրայ Լեւոն ձիաւոր՝ աջ կ՚ընթանայ։




93. Պղնձադրամ Լեւոն Բ.ի.

ՊՂՆՁԱԴՐԱՄ. Լեւոն Բ.ի պղնձադրամներուն Ա կողմը՝ ձիաւոր Լեւոնի տեղ՝ ընդհանրապէս հաւասարաթեւ խաչ մը կամ թէ առիւծ մը կայ. իսկ Բ կողմը՝ կա՛մ խաչ, կա՛մ առիւծ։

Փող. Տրծ. 24 հզրրդմետր։ Ա կողմի կեդրոնը՝ հաւասարաթեւ խաչ, որուն չորս անկիւնները մէկ մէկ աստղ։

Խորագիր. – երկու կրկնակ բոլորակ գծերու մէջ՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմի կեդրոնը՝ ձախ քալող առիւծ։

*Խորագիր. – երկու կրկնակ բոլորակ գծերու մէջ՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍI

— *Տարբերութիւնք. Ա կողմ՝ կեդրոնն առիւծ. դաշտին մէջ՝ առիւծին վերեւ՝ աստղ։ Խորագիր՝*

+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀՍՅՍ

*Բ կողմ՝ հաւասարաթեւ խաչ, անկիւններուն մէջ աստղ։ Խորագիր՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ս(ԻՍ)

*Տարբ. Ա կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ խաչ, առանց աստղի։ Խորագիր՝*

+ ԼԷՈՆԻ ԹԱԳԱՒՈՐԻ ՀԱՈՑ

*Բ կողմ՝ ձախ քալող առիւծ։ Խորագիր՝*

+ ՀԱՏԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ (*Ձեւ* 93)։

*Դանգ. Տրծ.* 22 *հզրրդմետր։ Ա կողմ՝ ձախ քալող առիւծ։ Խորագիր՝*

+ ԼԵԻՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑՍ

*Բ կողմ՝ հաւասարաթեւ խաչ, անկիւններուն մէջ աստղ։ Խորագիր՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻ(Ս)

— *Տարբ. Ա կողմ՝ հաւասարաթեւ խաչ, աստղերով։ Խորագիր՝*

+ ԼԷՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՈՑ

*Բ կողմ՝ ձախ քալող առիւծ։ Խորագիր՝*

+ ՀԱՏԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ

— *Տարբ. Ա կողմ՝ ձախ քալող առիւծ։ Խորագիր՝*

+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐԻ ՍՑ (*կարդա՛* ՍՍՈՑ)։

*Բ կողմ՝ հաւասարաթեւ խաչ։ Խորագիր՝*

+ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ...

— *Տարբ. Ա. կողմ՝ Լեւոն ձիաւոր. Բ կողմ՝ աջ քալող հանդիպահայեաց առիւծ, կրկնաթեւ խաչով։ Խիստ հազուագիւտ*[1]։

---

1. Տե՛ս ՍԻՊԻԼԵԱՆ, *էր.* 39։

— Տարբ. (ըստ Հ. Մուքիաս Պարոնեանի՝ ի Բրիտ. Թնգրն).
Ա. կողմ՝

ԼԷՈՆ ԹԱԳ ա ԻՈՐ ՀԱՈՑ

Բ կողմ՝ ՀԱՏԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ

---




94 և 95. Հեթում Բ.ի Պղնձադրամներն և անոնց գրութեան ձևը.

## ՀԵԹՈՒՄ Բ [Hétoum II]

(1289–1305)

Մեր պատմութեան մէջ ծանօթ է, թէ Հեթում Բ. թագաւորն արհամարհելով աշխարհիկ կեանքը, և նոյն իսկ թագաւորական պատիւն ու պալատը, առանց թագ կապելու և օծուելու՝ բայց իբրեւ «Հայոց թագաւոր»՝ ընդհատաբար իշխեց Հայակիլիկիոյ վրայ (1289–1293, 1293–1296, 1299–1301 և 1301–1305), իր կեանքին մնացած մասն անցունելով փրանկիսկեանց լատին վանքին մէջ..., ուր կը սիրէր կոչուիլ՝ Frater Johannes կամ «Եղբայր Յովհաննէս», որմէ մնացած լատինագիր կնիք մը, – որուն պատկերը կուտանք Ձեւ 96ով, – կը հաստատէ Հեթումի այս անորակելի քայլը։



96. Կնիք Հեթում Բ.ի

Այս պարագաներու մէջ Հեթում՝ իբրեւ թագաւոր՝ դրամ տպած չպիտի ըլլար. բայց Կիլիկիոյ վրայ ագահաբար յարձակող վոհմակներու փորը կշտացնելու և աչքը յագեցնելու համար՝ աւագանիի խնդրանքին վրայ՝ ստիպուեցաւ պղնձէ դրամներ տպել։ Այս պատճառով է, որ Հեթում ոչ ոսկեդրամ ունի, ոչ ալ արծաթադրամ, այլ ունի արծաթապղինձ ու պղինձ դրամներ։



97. Արծաթադրինձ կիսադրամ Հեթում Բ.ի։

ԱՐԾԱԹԱԴՐԻՆՁ. Կիսադրամ։ Տրծ. 15 հզրրդմետր։ Ա. կողմ՝ Հեթումի հանդիպահայեաց կիսանդրին (Ձեւ 97)։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

\+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈ

Բ կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ լատինացի խաչ։

Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

\+ ԱՄԵՆԱՅՆ ՀԱ

ուրեմն՝ «Հեթում, թագաւո(ր) ամենայն Հա(յոց)»։

— Տարբերութիւն. Ա. կողմ՝ Հեթում թագապսակ։

Բ կողմ՝ կեդրոնի խաչը կրկնաթեւ է, որուն մէկ կողմը կիսալուսին մը կայ, իսկ միւս կողմը՝ աստղ մը։ Խորագիր՝ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։

ԴՐԻՆՁ. Դանգ։ Տրծ. 21 հզրրդմետր։ Ա. կողմ՝ Հեթումի թագապսակ կիսանդրին, հանդիպահայեաց (Ձեւ 95)։

Խորագիրն է. – երկու կրկին բոլորակ գծերու մէջ՝

\+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ(ՈՑ)

Բ կողմ՝ կեդրոնը կրկնաթեւ ծաղկազարդ խաչ։

Խորագիրն է. – երկու կրկին բոլորակ գծերու մէջ՝

\+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱԳՆ Ի ՍԻՍ

— Տարբերութիւն. Ա. կողմ՝ Հեթում թագապսակ, հանդիպահայեաց։

Խորագիրն է. – երկու կրկին բոլորակ գծերու մէջ՝

\+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմ՝ կեդրոնը կրկնաթեւ խաչ։

Խորագիրն է. – երկու կրկին բոլորակ գծերու մէջ՝

\+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱԳՆ Ի ՍԻՍ

— Տարբ. Ա. կողմ՝ Թագաւորն արեւելեան ձեւով գահնի վրայ ծալապատիկ կամ թէ ծունկերուն վրայ նստած է, հանգիպահայեաց դիրքով. գլուխը թագ, աջ ձեռքը լախտ, իսկ ձախովը՝ կռուփը բռնած (Ձեւ 94)։

Խորագիրն է. — երկու կրկին բոլորակ գծերու մէջ՝

+ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ

Բ կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ լատինացի խաչ։

Խորագիրն է. — երկու կրկին բոլորակ գծերու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱԳ Ի Ս(ԻՍ)

— Տարբ. Ա. կողմի ընթերցուածն է՝ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱ. իսկ

Բ կողմի ընթերցուածը՝ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ. ուրեմն՝ մին կիսատ, միւսն՝ ամբողջ, կրկնուած։

— Տարբ. Ա. կողմ՝ Հեթում ձիաւոր, դէպ յաջ կ՚ընթանայ։ Խորագիրն է՝ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ

Բ կողմ՝ կեդրոնը խաչ. շուրջը՝ ՇՆԵԱԼ Ի Թ.... այսպէս՝ «շնեալ», ոչ թէ շինեալ։

Այս դրամը չէ տեսած Սիպիլեան։

---

## ԹՈՐՈՍ [Thoros]

(1293-1293)

Հեթում Բ.ի և Սմբատի եղբայրը՝ Թորոս, իր գահակալութեան կարճ ժամանակին մէջ դրամ չէ տպած, ինչպէս վերն ըսինք, թէեւ Լանգլուա՝ «Թորոս Գ.» անունով կը յիշատակէ զայն, անոր վերագրելով պղինձ դրամներ[1], հետեւելով Սեստինիի[2] և Սօլսիի[3]. մինչդեռ Սիպիլեան իրաւամբ կը մերժէ գոյութիւնը Թորոսի դրամին։

---

1. Langlois, Numismatique de l'Arménie au Moyen âge, եր. 69-70.
2. Sestini, Թ. Նամակ, Տետ. Բ, 5.
3. De Saulcy, Numism. Croisades, եր. 174.



98 և 99. Սմբատի դրամները.

## ՍՄԲԱՏ [Sembat]

(1296-1298)

*Հեթում Բ. երբ որ իր Թորոս եղբոր հետ Կ. Պոլիս գնաց, իրենց քոյրը՝ Ռիթա կայսրուհին տեսնելու, իշխանութիւնն՝ առժամանակեայ կերպով՝ իր Սմբատ եղբոր յանձնեց, որ Հեթումի ու Թորոսի բացակայութենէն օգտուելով՝ ինքզինքը Հայոց թագաւոր հռչակեց։*

*Սմբատէ՝ արծաթ և պղինձ դրամներ միայն գիտենք* (*Ձեւ* 98 *և* 99)։

*ԱՐԾԱԹ. Դրամ։ Տրծ.* 21 *հզրրդմետր։ Ա. կողմ՝ թագաւորն առիւծներու վրայ բարձրացած գահի վրայ բազմած է, հանդիպահայեաց, գլուխը թագ. աջ ձեռքը խաչ կը բռնէ, իսկ ձախը՝ երկայրի տապար, ըստ Սեղճուկեանց* (*Ձեւ* 99)։

*Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

+ ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

*Բ կողմ՝ կռնակ կռնակի դարձած և երկու ոտքերու վրայ կանգուն առիւծներ, որոնց դէմքերն իրար կը նային. երկուքին միջեւ երկթեւեան երկար խաչ մը։*

*Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ

*Տարբերութիւնք. Ա. կողմ՝ թագաւորը խաչ* (?) *և շուշան կը բռնէ։*
*Խորագիրն է. — Ա. կողմ՝* + ՍՄԲԱՏ ԹԱԳՈՐ ՀԱՅՈ(Ց)
*Բ կողմ՝* + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ *և կամ* ԱՍՏՈՒ։
— *Տարբ. Ա. կողմ՝* + ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ
*Բ կողմ՝* + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ!

*Սմբատի արծաթադրամներն հազուագիւտ են։*

*ՊՂԻՆՁ. Դանգ։ Տրծ.* 19 *հզրրդմետր։ Ա. կողմ՝ Սմբատ թագակիր, հանդիպահայեաց և ձիաւոր, որ աջ կը քալէ. ձախ ձեռքով՝ սանձը կը բռնէ, իսկ աջովը՝ լախտ մը։*

Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ խաչ մը, որուն չորս խոր-շերուն մէջ մէկ մէկ թռչուն կամ շուշան։

Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

այսինքն՝ «Շինեալ» եւայլն։

— Տարբերութիւնք. Ա. կողմ՝ + ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ(ՅՈՑ)

Բ կողմ՝ + ՇԻՆԵՂ ՔԱՂԱՔ Ի Ս(ԻՍ)

Մեր Ձեւ 98 պատկերին Բ կողմը գէշ գծուած է։

---



100. Ոսկեգրամ Կոստանդին Ա.ի.

## ԿՈՍՏԱՆԴԻՆ Ա. [Constantin I]

(1298-1299)

Կոստանդին Ա. կամ Կոստանդիանոս՝ Սմբատի կատարած անօ-րէնութիւններուն չդիմանալով՝ անոր հետ պատերազմի բռնուեցաւ, և մայրաքաղաքին (Սսոյ բերդին) պարիսպներուն տակ՝ երկու հա-կառակորդ եղբայրներու կուսակիցներն իրարու արիւն թափեցին։ Յաղթութիւնը տարաւ Կոստանդին, որ Սմբատը ձերբակալելով բան-տարկեց, և ինքզինքը «Հայոց Թագաւոր» հռչակեց։

Այս եղբայրասպան տխուր դէպքն յիշեցնող՝ քանի մը դրամ-ներ կան, որոնց նկարագրութիւնն ու պատկերները կը ներկայացը-նենք հոս (Ձեւ 100-102)։



101 և 102. Կոստանդին Ա.ի ոսկի և արծաթ դրամները.

ՈՍԿԻ. Դենար: Տրծ. 20 հզրրդմետր: Ա. կողմ՝ Թագաւորն հանդիպահայեաց դէմքով է և Թագ կը կրէ. նստած է ձիու վրայ, որ աջ կը քալէ. աջ ձեռքով սուր մը կը բռնէ:

Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

\+ ԿՈՍՏԸՆԴԻՆ ԹԳ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ կեդրոնը երեք աշտարակներով բերդ մը, որ Սսոյ բերդը կը ներկայացնէ. մէջտեղինն՝ ուղղահայեաց է, իսկ քովինները՝ քիչ մը հակած են: (Տես Ձեւ 100):

Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

\+ ՍՍՈՑ ԲԵՐԴԻՆ Է ԹԱԳԱՒՈՐ

այսինքն՝ «Սսոյ բերդին Թագաւորն է»:

— Տարբերութիւնք. Ա. կողմ՝ հոս ալ Թագաւորը հանդիպահայեաց է և Թագ կը կրէ. ձին՝ որուն վրայ հեծած է, աջ կը քալէ. աջ ձեռքով սուր կը բռնէ:

Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

\+ ԿՈՍՏԸՆԴԻՆ Ն Թ.Գ. ՀԱՅՈՑ

այսինքն՝ «Կոստընդինն է Թագաւոր Հայոց»: Ըսել կ՚ուզէ, թէ Հայոց Թագաւորը՝ ո՛չ Հեթումն է, և ո՛չ ալ Սմբատը, այլ ինքը՝ Կոստանդինը: Ասով կը մեկնուի «Կոստընդին» անունէն ետք դրուած «Ե» գիրը, որ Ն կը նմանի. և սակայն առանց գծի Ե մըն է, զոր կարելի և հաւանական է կարդալ՝ Է:

Բ կողմ՝ կեդրոնի երեք աշտարակներն ալ շիտակ են:

*Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

## + ՍՍՈՑ ԲԵՐԴԻՆ Է ԹԱԳԱՒՈՐ

*Կոստանդին Ա.ի ոսկեդրամներն՝ իր նախորդներուն ոսկեդրամներէն աւելի պակաս են, թէ՛ ձանրութեամբ և թէ՛ տարածութեամբ։*

*ԱՐԾԱԹ. Դրամ։ Տրծ. 22 հզրրդմետր։ Ա. կողմ. կեդրոնը՝ Թագաւորն հանդիպահայեաց և թագակիր, ձի հեծած է, որ աջ կողմ կը քալէ. աջ ձեռքը սուր բռնած է (Ձեւ 102)։*

*Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

## + ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ ԹԱՈՐ ՀԱՅ

*այսինքն՝ «Կոստանդիանոս Թագաւոր Հայոց»։*

*Բ կողմ. կեդրոնը՝ Թագաւորն հանդիպահայեաց և թագակիր, բայց ձի հեծած չէ, այլ ոտքի վրայ կեցած. աջ ձեռքը սուր կը բռնէ, ձախ ձեռքը՝ խաչ։*

*Խորագիրն է. – մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝*

## + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՅ Է ԹԱԳՈՐ

*այսինքն՝ «Կարողութեամբն Աստուծո՛յ է Թագաւոր»։*

*ՊՂԻՆՁ. Դանգ։ Տրծ. 20 հզրրդմետր։ Ա. կողմ. կեդրոնը՝ Կոստանդիանոս Թագակիր, հանդիպահայեաց, կանգուն. աջ ձեռքը սուր, ձախ ձեռքը խաչ։*

*Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

## + ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ ԹԱԳՅ

*Չեմ հասկընար, թէ ի՞նչ կը նշանակէ վերջին Յ կամ Ց տառը։ Թերեւս «Հայոց» բառի համառօտագրութիւնն ըլլայ։*

*Բ կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ լատինացի խաչ։*

*Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

## + ՇԻՆԵԼ ԳԱՂԱԳՆ ՍԻՍԻ

*Ռուբինեան դրամներէ շատերուն վրայ, ինչպէս յարդ տեսանք, Թագաւորը ձեռքը շուշան կը բռնէ. իսկ այստեղ՝ տարօրինակ կերպով՝ սուր կը բռնէ, թերեւս ըսել ուզելով թէ՝ այս սուրով կամ սուրի զօրութեամբ յաղթած է իր ապստամբ եղբօր, Սմբատի։*

---



103 և 104. Լեւոն Գ.ի դրամները.

## ԼԵՒՈՆ Գ. [Léon III]

(1301-1307)

*Ավիկա Կոստանդին Ա.ի եղբայրներէն Թորոսի որդին է, որ ընդհատաբար թագաւորեց։*

ԱՐԾԱԹ. Դահեկան։ Տրծ. 23 հզրրդմետր։ Ա կողմ. կեդրոնը Լեւոն թագակիր, հանդիպահայեաց և ձիաւոր. ձախ ձեռքով սանձը կը բռնէ, իսկ աջովը՝ խաչ մը, որուն տակ գլխիվայր շրջած ժ–ի նման (ρ) նշան մը. ձին աջ կը քալէ։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ. կեդրոնը՝ աջ քալող առիւծ մը, որ ուղիղ աջ կը նայի. վրան՝ դաշտին մէջ՝ խաչ մը։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵ(Ա)Լ Ի ՔԱՂԱՔՆ Ի Ս(Ի)Ս

Դրամ։ Տրծ. 21 հզրրդմետր։ Ա կողմ. կեդրոնը՝ Լեւոն թագակիր, հանդիպահայեաց, հեծած է ձի, որ աջ կը քալէ. աջ ձեռքով շուշանակիր մական կը բռնէ, իսկ ձախովը՝ ձիուն սանձը. դաշտին մէջ՝ կռնակը՝ գլխիվայր դարձած ժ–ի նման (ρ) նշան մը։ (Զեւ 103)։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՒՈՑ

Բ կողմ. կեդրոնը՝ նոյն աջ քալող առիւծն ու խաչը։

Խորագիրն է. – երկու մարգարտէ շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

— Տարբերութիւնք. Ա. կողմ՝ ձիաւոր Լեւոնի կոնակը, գաշտին վրայ, երեք կէտ (.˙.)։ Խորագիրն է՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմ՝ նոյն առիւծը։ Խորագիրն է՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱ(ՂԱ)ՔՆ Ի ՍԻՍԻ

— Տարբ. Ա. կողմ. գաշտին վրայ երեք կէտի տեղ՝ երեք օղակ։

Կիսադրամ։ Տրծ. 18 հզրրդմետր։ Լեւոն Գ.ի արծաթ կիսադրամներուն Ա. կողմին վրայ՝ թագաւորը ձի հեծած, աջ կ՚ընթանայ։

Խորագիրն է. – + ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ(ՈՑ)

Բ կողմի խորագիրն է. – + ՀԱՏԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի Ս(ԻՍ)

ՊՂԻՆՁ. Դանգ։ Տրծ. 19 հզրրդմետր։ Ա. կողմ. Լեւոն՝ Հեթում Բ.ի նման՝ ծալապատիկ նստած է գետինը, առանց գահի, հանդիպահայեաց դիրքով. գլուխը թագ. աջ ձեռքի կոււփը վեր բարձրացուցած է (Ձև 104)։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝ սակայն առանց խաչի՝

ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ

Բ կողմ. կեդրոնը ճաճանչաւոր լատինացի խաչ։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝ դարձեալ առանց խաչի՝

ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔ

— Տարբերութիւնք. Ա. կողմ՝ Լեւոն հանդիպահայեաց, ծալապատիկ, աջ ձեռքով կոււփը բռնած, ձախովը՝ արքայական մական։

Խորագիրն է. – առանց խաչի՝ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ

Բ կողմի խորագիրն է. նոյնպէս՝ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ

Այսպէս կրկնուած։

— Տարբ. Ա. կողմ՝ առանց խաչի՝

ԼԵՒՈՆ [ԹԱԳԱՒՈՐ Հ]Ա(ՅՈՑ)

Բ կողմ՝ խաչով՝ + ՇԻՆԵ[ԱԼ Ի ՔԱՂ]ԱՔ

— Տարբ. Նախորդին համանման, բայց թագաւորն աթոռակի մը վրայ նստած է։

Ա. կողմ՝ ԼԵՒ[ՈՆ ԹԱ]ԳԱՒՈՐ ՀԱ(ՅՈՑ)

Բ կողմ՝ + ՇԻՆԵԱԼ Ի [ՔԱ]ՂԱՔ

— Տարբ. Ա կողմ՝ Թագաւորը ծալապատիկ նստած։ Խորագիրն է՝ ԼԵՒՆ [ԹԱԳ]ԱՒ(ՈՐ)

Բ կողմ. խորագիրն է՝ + ԿԱՐՈՂ[ՈՒԹԲՆ] ԱՍ(ՏՈՒԾՈՑ)

— Տարբ. Ա կողմ. Թագաւորն աթոռակի վրայ նստած։ Խորագիրն է՝ ԼԵՒՈՆ ԹԱԳ[ԱՒՈՐ]

Բ կողմ. + ԿԱՐՈՂՈՒԹԲՆ (ԱՅ)

* * *

Լեւոն Գ.է ի վեր՝ պղինձ դրամներու տարածութիւնն սկսած է պղտիկնալ։

Լեւոն Գ. իր հօրեղբօր՝ Հեթում Բ.ի բոլոր ձեւերն առած է իր դրամներուն վրայ. նոյն իսկ՝ Հեթումի բրածին նման՝ դրամին երկու երեսներն ալ կրկնած է «Լեւոն Թագաւոր» տիտղոսը, առանց «Հայոց»ի, ինչպէս որ տեսանք։



105 և 106. Աւշինի արծաթ Դահեկանն ու Դրամը.

## ԱՒՇԻՆ (=ՕՇԻՆ) [Ochin]

(1308-1320)

Աւշին՝ Հեթում Բ.ի եղբայրներէն մին է։ Ունի Արծաթ և Պղինձ դրամներ։

ԱՐԾԱԹ. Դահեկան։ Տրծ. 22 հզլրոմետր։ Ա կողմ. կեդրոնը՝ Թագաւորը ձիաւոր, Թագակիր, և հանդիպահայեաց. աջ ձեռքով բռնած է շուշանակիր մական, իսկ ձախովը ձիուն սանձը. ձին կը քալէ և կը նայի աջ։ Թագաւորին ետեւը՝ դաշտին վրայ՝ կէտ մը կայ։ (Ձեւ 105)։

Խորագիրն է. – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԱՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ. կողմ. կեդրոնը՝ աջ քալող առիւծ, որ նոյնպէս աջ կը նայի. կռնակն ի վեր բարձրացած է խաչ մը, որուն քով՝ դաշտին վրայ՝ կէտ մը։

Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻ(Ս)

— Տարբերութիւնք. Ա. կողմ. դաշտին մէջ՝ ձիուն առջեւ՝ Ց գիրը, եւեւս կէտէն զատ։

Բ կողմի ընթերցուածն է՝

+ ՇԻՆԵ(Ա)Լ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ

Աւշինի դրամներուն Ա կողմի դաշտին վրայ՝ զանազան տարբերութիւններով՝ այլ և այլ օրինակներ կան։

— Տարբ. Շատ կարեւոր տարբերութիւն մը կը ներկայացնէ Աւշինի հազուագիւտ մէկ արծաթ Դահեկանը, որուն

Ա կողմը՝ թագաւորն հանդիպահայեաց, երկու առիւծներով բարձած գահի մը վրայ նստած է. գլուխը թագ, աջ ձեռքը խաչ, ձախը՝ շուշան. դաշտին մէջ՝ թագաւորին ձախ կողմը՝ ձեռք մը, որ երկինքէն կ՚օրհնէ զայն. իսկ աջ կողմը՝ Ց տառը։

Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

ՕՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ Ի +

այսինքն՝ «Աւշին, Թագաւոր Հայոց, ի Քրիստոս». և կամ՝ պարզապէս՝

+ ՕՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ. կեդրոնը՝ սովորական կրկնառիւծներ, կռնակ կռնակի տուած, մէջտեղէն երկար խաչ մը բարձրացած է, որուն կը նային առիւծները։

Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱԾՈՅ

այսինքն՝ «Կարողութեամբն Աստուծոյ»։

Այս դրամը մեծ նմանութիւն ունի — բաց ի օրհնող ձեռքի ներկայութենէն — Լեւոն Ա. թագաւորի արծաթ դրամներուն. և հաւանական է, որ Աւշինի թագաւոր օծուելուն ի յիշատակ տպուած ըլլայ ան, ինչպէս ունի Լեւոն։

Դրամ։ Տրծ. 20 հզրրդմետր։ Աւշինի Դրամները ճիշտ և ճիշտ նման են իր Դահեկաններուն։ (Ձեւ 106)։

Ա կողմ՝ Աւշին ձի հեծած, որ աջ կը քալէ. դէմքն հանդիպահայեաց, գլուխը թագ, ձեռքը մական։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

\+ ԱՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ[

Բ կողմ՝ աջ քալող նոյն առիւծը. նոյն խաչը։

Խորագիրն է. – երկու մարգարտաշրջանակներու մէջ՝

\+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍ

— Տարբերութիւնք. Ա կողմի ընթերցուածն է՝

\+ ԱՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կոմի ընթերցուածն է՝

\+ ՇԻՆԱԾ Ի ՔԱՂԱՔՆ Ս(ԻՍ)

— Տարբ. Ա կողմ. Աւշինի ետին և ձիուն առջեւ՝ դաշտին վրայ՝ նշաններ։ Խորագիրն է՝

\+ ԱՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ[

Բ կողմ. դաշտին մէջ՝ առիւծին վերեւ՝ կէտ մը։ Խորագիրն է՝

\+ ՇԻՆԱԾ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻ(Ս)

այսպէս՝ նախորդին նման՝ ՇԻՆԱԾ, որ Աւշինի դրամներուն միայն յատուկ է։

Կիսադրամ։ Բարեկամս՝ Հայկազն Հապէշեան Աւշինի արծաթ կիսադրամի մը նկարագրութիւնը կ'ընէ Կ. Պոլսոյ «Ազատամարտ» շաբաթաթերթին մէջ (1911, Թիւ 34, եր. 544)։ Այս կիսադրամը տեսած է, կ'ըսէ, Կիլիկիոյ Սահակ Կաթողիկոսին ճոխ հաւաքածոյին մէջ, և «հայկական դրամագիտութեան գոհարներէն մէկը» կը համարէ զայն, աւելցնելով նաեւ թէ՝ «ցարդ երբեք չգտնուած տեսակներէն է և միակը՝ իր տեսակին մէջ, գեղեցիկ արուեստով մը շինուած»։

Ա կողմ՝ թագաւորը պսակաւոր, բազմած է երկու առիւծներու կռթնած գունտի մը վրայ. աջ ձեռքը խաչակիր գունտ մը, իսկ ձախը՝ շուշան մը. դաշտին մէջ՝ գլխուն մօտերը՝ աստղ մը։

Խորագիրն է.

ԱՒՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ կրկնաթեւ խաչ, որ բարձրացած է երկու կանգնած առիւծներու միջեւ, որոնց կռնակն ու գլուխը դարձած են դէպ ի խաչ։

Խորագիրն է.

ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ Է

Իրօք՝ ցարդ բոլորովին անծանօթ էր Աւշինի արծաթ կիսադրամը. իսկ պղինձը՝ գիտենք։

Այս խիստ հազուագիւտ դրամին հետքը չգտայ։

ՊՂԻՆՁ. Դանգ կամ կիսադրամ։ Տրծ. 17 հզրրդմետր։ Աւշինի պղնձադրամները՝ «կիսադրամ» ըսուելու աստիճանի փոքր են. ուստի՝ Դանգ չեն, այլ կիսադրամ են։

Ա. կողմ՝ Թագաւորն աթոռի մը վրայ նստած է. աջ ձեռքը խաչ, իսկ ձախ ձեռքը շուշան կը բռնէ։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԱՒՇԻՆ ԹԱ[ԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ]

Բ կողմ՝ կեդրոնը լատինացի խաչ։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԱԾ Ի Ք[ԱՂԱՔՆ ՍԻՍ]

— Տարբ. Բ կողմի ընթերցուածն է, ոմանց վրայ՝ ՇԻՆԵԱԼ, իսկ ոմանց վրայ՝ ՇԻՆԱԾ է։

---



107 և 108. Լեւոն Դ.ի դրամները.

## ԼԵՒՈՆ Դ. [Léon IV.]

(1320–1342)

Լեւոն Դ՝ Աւշինի միակ որդին է, որ անժառանգ մեռած է։ Ունի Արծաթ և Պղինձ դրամներ ու կիսադրամներ։

ԱՐԾԱԹ. Դրամ։ Տրծ. 20 հզրրդմետր։ Ա. կողմ՝ Լեւոն Թագաւորական, հանդիպահայեաց, ձիաւոր, ձեռքը բռնած է մական. Թագաւորին ձին աջ կը քալէ. դաշտին մէջ՝ Լեւոնի ետեւը՝ խաչ մը. ձիուն առջեւը՝ փոքրիկ Ա մը։ (Ձեւ 107)։

խորագիրն է. – մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմ՝ աջ քալող առիւծ մը, որ հանդիպահայեաց չէ այլ եւս. կռնակը փոքր խաչ մը։

խորագիրն է. – մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

\+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի Ս(ԻՍ)

— Տարբերութիւնք. Ա կողմը նոյնն է, բայց Թագաւորին ետին՝ խաչի տեղ օղակ մը կայ. նոյն օղակը նաեւ ձիուն գլխուն վերեւ։ Խորագիրն է՝ «Վ»ով՝

\+ ԼԵՎՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ(ՅՈՑ)

Բ կողմը՝ նոյն խաչակիր առիւծը։ Խորագիրն է՝

\+ ՀԱՏԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻ

— Տարբ. Ա կողմ՝ ձիուն առջեւ՝ Ս տառը։ Խորագիր՝

(+) ԼԵՒՈՆ ԹԱ[ԳԱՒՈՐ] ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ + ՇԻՆ[ԵԱԼ] Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

— Տարբ. Ա կողմ՝ դաշտին մէջ նշան չկայ։ Խորագիրն է՝

\+ ԼԵՎՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ

Բ կողմի խորագիրն է՝ դարձեալ

\+ ԼԵՎՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ

այսպէս կրկնուած, և «Վ»ով։ Շատ հազուագիւտ դրամ մըն է։

— Տարբ. Ա կողմը՝ դաշտին մէջ օղակ. խորագիրն է՝

\+ ԼԵՎՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ(ՅՈՑ)

Բ կողմի խորագիրն է՝

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ

այսպէս՝ Բ կողմի «Լեւոն»ը՝ «Ւ»ով. նոյնպէս խիստ հազուագիւտ։

*
* *

Լեւոն Գ.ի արծաթ դրամներուն կարգին պարտինք յիշատակել նաեւ հանգուցեալ Հ. Սուքիաս Պարոնեանի կողմէ ժամանակին մեզ

հաղորդուած այն կրկնատիպ դրամը, որ տարիներէ ի վեր կը պահուի Լոնդոնի Բրիտ. Թնգրնին մէջ։ Այս դրամին վրայ կոխուած են արաբական տառեր, որոնց հետքերը կը նշմարուին դրամիս երկու կողմերն ալ, ճիշտ ինչպէս նոյն Լեւոն Դ.ի համանման ուրիշ մէկ դրամին վրայ տեսանք Պարիսի Նուպարեան Մտնդրնին մէջ, և որուն նկարագրութիւնն ըրինք հոս, եր. 129–130։

Ա կողմ՝ Թագաւորը ձի հեծած է և դէպ ի յաջ կ'ընթանայ։ Խորագիրն է՝ + ԼԵՒՈ[Ն ԹԱ]ԳԱ[ՒՈՐ] ՀԱՅՈՑ

Բ կողմ՝ մէջտեղն՝ աջ կողմ քալող առիւծ մը։ Խորագիրն է՝ + ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի Ս[ԻՍ]

*
* *

ՊՂԻՆՁ Դանգ։ Տրծ. 21 հզըրդմետր։ Ա կողմ՝ Լեւոն աթոռի վրայ բազմած, հանդիպահայեաց և Թագակիր. ձախ ձեռքը խաչ, իսկ աջը՝ մական։

Խորագիրն է. – մարգարտաշար կրկին շրջանակներու մէջ՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմ՝ կեդրոնը լատինացի խաչ ճաճանչաւոր, երկու ծայրերն մէկ մէկ կէտով։

Խորագիրն է. – մարգարտահիւս երկու շրջանակներու մէջ՝

+ ՇԻ[ՆԵԼ] Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

— Տարբերութիւնք. Ա կողմ՝ Լեւոն երկու առիւծներով հաստատուած գահի մը վրայ նստած է, նոյնպէս հանդիպահայեաց. աջ ձեռքը մական, ձախ ձեռքը խաչ։

Խորագիրն է. – + ԼԵՒՈՆ Թ[ԱԳԱՒ]ՈՐ ՀԱՅՈց

այսպէս Յով և բոլորագիր «ց»ով։

Բ կողմ՝ առանց կէտի ճաճանչաւոր խաչ։

Խորագիրն է. – [ՇԻՆ]ԵԱԼ Ի ՔԱ[ՂԱՔՆ Ի ՍԻՍ]

Կիսադրամ։ Տրծ. 16 հզըրդմետր։ (Ձեւ 108)։ Պղինձ կիսադրամներու Ա կողմը կը ներքայացնէ հանդիպահայեաց Թագաւորը, երկու առիւծներով բարձուած գահի մը վրայ. ձախ ձեռքը շուշան, իսկ աջը՝ խաչ։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ(ՈՑ)

*Բ կողմ՝ կեդրոնը լատինացի խաչ։*
*Խորագիրն է. – մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

+ ՇԻՆԵԱ ՔԱՂԱ[ՔՆ ՍԻՍ]

— *Տարբերութիւնք. Ա կողմ՝*

+ ԼԵԻ(?)ՈՆ ԹԱԳԱՒՈ ՍԻՈ

*զոր թերեւս կարդալու է՝* ՍՍՈ(Ց), *և կամ* (Հ)ԱՅՈ(Ց)։
*Բ կողմ՝ լատինացի ճաճանչաւոր խաչ։ Խորագիր՝*

+ ՇԻՆԵԱԼ Ի Ք[ԱՂ]ԱՔ Ի Ս(Ի)Ս

— *Տարբ. Ա կողմ՝ Լեւոն հանդիպահայեաց, աթոռի վրայ նստած. աջ ձեռքը խաչ, ձախը՝ շուշան։*
*Խորագիրն է. – երկու կարգ մարգարտեայ շրջանակներու մէջ՝*

+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԱ

*զոր կը կարդամ՝* ՀԱՅԱՍՏԱՆԻ։
*Բ կողմ՝ կեդրոնը լատինացի խաչ։*
*Խորագիրն է. – մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

+ [ՇԻՆԵ]ԱԼ [Ի Ք]ԱՂԱՔՆ Ի [Ս]Ի




109. *Լեւոն Դ. կը դատէ.*



110 և 111. Կի = Կոստանդին Բ.ի դրամները.

## ԿԻ կամ ԿՈՍՏԱՆԴԻՆ Բ. [Guy ou Constantin II]

(1342-1344)

Որովհետեւ Լեւոն Դ. անժառանգ մեռաւ, յաջորդութեան կարգն անցաւ իր հօրաքեռորդւոյն՝ Կիի կամ Կոստանդին Բ.ի։

ԱՐԾԱԹ. Դրամ։ Տրծ. 22 հզրրդմետր։ (Ձեւ 110)։

Ա. կողմ. կեդրոնը՝ Թագաւորն հանդիպահայեաց, Թագիր և ձիաւոր. աջ ձեռքը մական կը բռնէ, իսկ ձախովը՝ ձիուն սանձը. ձին աջ կը քալէ. դաշտին մէջ՝ Թագաւորին աջ Թեւին քով՝ օղակ մը կայ։

Խորագիրն է. — մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

+ ԿԻ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ. կողմ. կեդրոնը՝ աջ քալող առիւծ, որուն վերեւ՝ դաշտին մէջ՝ փոքր խաչ և օղակ։

Խորագիրն է. — մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

+ ՇԻ[Ն]Ե[ԱԼ Ի ՔԱՂ]ԱՔՆ Ս(Ի)Ս

— Տարբերութիւնք. Տրծ. 20 հզրրդմետր։ (Ձեւ 111)։ Ա. կողմ՝ Թագաւորը ձիաւոր, հանդիպահայեաց և Թագակիր. աջ ձեռքով մական կը բռնէ, իսկ ձախովը՝ ձիուն սանձը. ձին աջ կը քալէ. դաշտին մէջ՝ Թագաւորին երկու կողմը՝ մէկ մէկ օղակ։

Խորագիրն է. — մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

+ ԿԻ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմը. կեդրոնը՝ աջ քալող առիւծ. կռնակն ի վեր կը բարձրանայ երկար խաչ մը։

Խորագիրն է. — մարգարտաշար երկու շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ ՔԱՂԱՔ ՍԻՍ

ՊՂԻՆՁ. Կիսադրամ։ Տրծ. 17 հզրրդմետր։ Ա. կողմ՝ Թագաւորն

աթոռի մը վրայ նստած է, հանդիպահայեաց դիրքով․ աջ ձեռքը խաչ, ձախը՝ շուշան։

Խորագիրն է․ – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿԻ ԹԱԳԱ[Ւ]ՈՐ ՀԱՅՈ(Ց)

Բ կողմ․ կեդրոնը՝ ճանանչաւոր լատինացի խաչ։

Խորագիրն է․ – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆ[ԵԱԼ Ի Ք]ԱՂ[Ա]ՔՆ

այսչափ միայն, առանց «ՍԻՍ»ի․

—



112 և 113․ Կոստանդին Գ․ի արծաթադրամները․

## ԿՈՍՏԱՆԴԻՆ Գ․ [Constantin III]

(1344-1363)

Արքայական սերունդէ չէր Կոստանդին Գ, այլ Նղրեանց տոհմէ Պաղտին իշխանի որդին էր, որ երկու տասնեակ տարիներ Հայոց պետութիւնը պաշտպանեց ներքին և արտաքին թշնամիներու դէմ։

ԱՐԾԱԹ․ Դրամ։ Տրծ․ 21 հզրրդմետր։ (Ձեւ 112)։

Ա կողմ՝ թագաւորը ձիու վրայ, թագակիր, հանդիպահայեաց, մէկ ձեռքը մական, իսկ միւսով՝ ձիուն սանձը կը բռնէ․ ձին աջ կը քալէ։ Դաշտին մէջ թագաւորին ետին՝ օղակ մը։

Խորագիրն է․ – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿՈՍՏԱՆԴԻՆ ԹԱԳԻ

Բ կողմ․ կեդրոնը՝ աջ քալող առիւծ, կռնակը խաչ։

Խորագիրն է․ – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻ

— Տարբերութիւն. Տրմ. 20 հզրրդմետր: (Ձեւ 113):
Ա. կողմի ընթերցուածն է՝

+ ԿՈՍՏԱՆ ԹԱԳԱՒՈ.Գ

Բ կողմի ընթերցուածն է՝

+ ՇԻՆԵ(ԱԼ) Ի ՔԱՂԱՔՆ Ի Ս(ԻՍ)

---



114 և 115. Կոստանդին Դ.ի դրամները.

## ԿՈՍՏԱՆԴԻՆ Դ. [Constantin IV]

(1365-1373)

Արքայական սերունդէ չէր նաեւ Կոստանդին Դ, այլ որդին էր Նղրեանց Հեթում Ջամբռլայի (chambellan):

ԱՐԾԱԹ. Դրամ: Տրմ. 20 հզրրդմետր: Ա. կողմ՝ Թագաւորն հանդիպահայեաց, ձիու վրայ, աջ ձեռքը մական, իսկ ձախով՝ ձիուն սանձը կը բռնէ. ձին աջ կը քալէ:

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿՈՍՏԸՆԴԻՆ ԹԳՐ |...

Բ կողմ՝ աջ քալող առիւծ, կռնակը խաչ:

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱ[Լ Ի ՔԱՂԱ]ՔՆ ՏԱՐ(ՍՈՆ)

— Տարբերութիւնք. Ա. կողմի ընթերցուածն է՝

+ ԿՈՍՏԸՆԴԻՆ ԹԳՐ ՀԱՅ

Բ կողմի ընթերցուածն է՝

+ ՇԻՆ(Ե)ԱԼ Ի ՔԱՂ(ԱՔ)Ն Ի ՍԻՍ

— Տարբ․ Ա կողմի ընթերցուածն է՝

+ ԿՈՍՏՆԴ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Բ կողմի ընթերցուածն է՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

— Տարբ․ Տրծ․ 19 հզլրդմետր։ (Զեւ 114)։ Ա կողմ՝ Թագաւորին աջ Թեւին քով օղակ մը։ Խորագիրն է՝

+ ԿՈՍՏՆԴԻՆ ԹԱԳԱ[ՒՈՐ ՀԱՅ]

Բ կողմի ընթերցուածն է՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂ(Ա)ՔՆ Ի ՍԻՍ

— Տարբ․ Ա կողմ՝ Թագաւորին մականին տակ երկու կէտ․ իսկ ընթերցուածն է՝ + ՇԻՆ[ԵԱԼ Ի] ՔԱՂԱՔՆ ՍԻ(Ս)

Բ կողմի ընթերցուածն է՝ նոյնպէս, կրկնուած,

+ ՇԻՆԵ[ԱԼ Ի] ՔԱՂԱՔ(Ն) Ս(ԻՍ)

— Տարբ․ Բ կողմի առիւծն փոխանակ աջ քալելու՝ ձախ կը քալէ․ իսկ դաշտին մէջ՝ երեք կէտ կայ։

Այս երկու վերջին արծաթադրամները խիստ հազուագիւտ են։

ՊՂԻՆՁ․ Դանգ։ Ա կողմ՝ Թագաւորը ձի հեծած է, Թագակիր, հանդիպահայեաց, աջ ձեռքը մական բռնած․ ձին աջ կը քալէ։ Դաշտին մէջ՝ Թագաւորին ձախ Թեւին քով՝ կէտ մը։

Խորագիրն է․ – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿՈՍՏԱՆ(Դ)ԻՆ [ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ]

Բ կողմ՝ աջ քալող առիւծ․ կռնակին վերեւ խաչ, պոչին քով՝ մահիկ, պոչին տակ՝ կէտ, կուրծքին տակ՝ ⊃ նշանը։

Խորագիրն է․ – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵ(Ա)Լ [Ի] ՔԱՂԱՔՆ ՍԻՍ

Պ․ Կիսադրամ։ Տրծ․ 14 հզլրդմետր։ Ա կողմ՝ Թագաւորը Թագապսակ, աԹոռի մը վրայ նստած է, հանդիպահայեաց․ երկու ձեռքն ալ խաչ բռնած է։

Խորագիրն է․ – երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ԿՈՍՏԸՆ[ԴԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ]

Բ կողմ՝ կեդրոնը ճաճանչաւոր լատինացի խաչ։

Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵ(Ա)Լ [Ի ՔԱՂԱՔՆ...]

— Տարբերութիւնք. Ա կողմ՝ Թագաւորն աթոռի վրայ նստած է. մէկ ձեռքը խաչ, միւսը՝ շուշան: (Ձեւ 115):

Խորագիրն . — + ԿՈՍՏԸՆԴԻՆ...

Բ կողմ՝ կեդրոնը լատինացի խաչ. շուրջը՝

+ ՇԻՆԵ(Ա)Լ Ի ՔԱՂ(ԱՔՆ) ՏԱՐ(ՍՈՆ)

Տարբ. Ա կողմի ընթերցուածն է՝

+ ԿՈ[Ս]ԴԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ

Բ կողմ՝ կեդրոնը ճաճանչաւոր լատինացի խաչ: Խորագիրն է՝

+ Շ[ԻՆ]ԵԱԼ ՔԱՂԱՔՆ Ս(ԻՍ)

Գ. Մանր կիսադրամ: Տրմ. 8 հզրրդմետր: Ա կողմ՝ Թագաւորը համդիպահայեաց նստած է. մէկ ձեռքը խաչ:

Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

[+ ԿՈՍՏԱ]ՆԴԻՆ ԹԱ[ԳԱՒՈՐ ՀԱՅ?]

Բ կողմ՝ կեդրոնը ճաճանչաւոր խաչ:

Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

[+ ՇԻՆ]ԵԼ Ի ՔԱ[ՂԱՔՆ ՍԻՍ?]

* * *

Բրիտանական Թանգարանին անձուն գանձերն ու հնութիւնները մօտէն քննած և ուսումնասիրած վաղեմի բարեկամ մը՝ բարեյիշատակ գիտնական Սուքիաս վարդապետ Պարոնեան, ժամանակին ուշադրութիւնս հրաւիրած էր հոն պահուած Կոստանդին Դ.ի տարօրինակ արծաթադրամին մէկ դրամին վրայ, որուն խորագիրն է.

Ա կողմ՝ ԿՈՍՏԴՆԻՆ ԹԱԳՕ

Բ կողմ՝ ՇԻՆԱԼ ՔԱՂԱՔՆ Ս

Դրամներու վրայ առաջին անգամն է, որ կը հանդիպինք «Օ»ի գործածութեան, փոխանակ սովորական «Աւ»ի:

---



ՊՏՐՍԹԱԳՈՐ·ԱՄԷՆՀՅՈ
BDRSThAKORAMENHIO

116. Կեղծ դրամ Պետրոս Թագաւորի.

## ՊԵՏՐՈՍ ԹԱԳԱՒՈՐ [Pierre de Chypre]

Պետրոս՝ Թագաւոր էր Կիպրոսի (1358–1369), որու դիմեցին խումբ մը Հայեր, առաջարկելով Հայոց Թագը։ Բայց 1369 տարւոյ յունուարի 16ին, – այսինքն՝ երբ Կոստանդին Դ. տակաւին գահակալ էր, – Պետրոս սպանուեցաւ Կիպրոսի մէջ, առանց մտնելու Հայաստան[1]. ուստի՝ անկարելի է, որ Հայոց անունով դրամ տպած ըլլայ ան, որուն կ'ընծայեն հետեւեալ բացարձակապէս կեղծ դրամը։ (Ձեւ 116)։

ԱՐԾԱԹ. Դրամ։ Տրծ. 20 հզըրդմետր։ Ա կողմ՝ Պետրոս ձիաւոր, հանդիպահայեաց, ձեռքը խաչ, ձիուն տակ աստղ մը։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՊՏՐՍ ԹԱԳՈՐ ԱՄԵՆ ՀԱՅՈ

այսինքն՝ «Պետրոս Թագաւոր ամենայն Հայոց» (ʹ)։

Բ կողմ՝ կեդրոնը խաչակիր առիւծ, որ աջ կը քալէ։

Խորագիրն է. – երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝

+ ՇԻՆԵԱԼ Ի ԳԱՂԱՔՆ Ի ՍԻՍ

---

1. Մանրամասնութեամբ տեսնել իմ «Լեւոն Ե. Լուսինեան»իս մէջ, եր. 23–31։



117 և 118. Կնիք և Ստորագրութիւն Լեւոն Ե.ի.

## ԼԵՒՈՆ Ե. [Léon V]

(1374-1375)

*Տխուր պարագաներու բերմամբ Հայակիլիկիոյ գահը տարի մը թափուր մնալէ ետք՝ Լեւոն Ե. թագաւոր պսակուեցաւ, և տասն-մէկ ամիս գահակալելէ ետք գերի ինկաւ. որով Հայոց Կիլիկեան Հա-րըստութիւնը կործանեցաւ վերջացաւ ի սպառ։*

*ԱՐԾԱԹ. Դահեկան։ Տրծ.* 22 *հզրրդմետր։* (*Ձեւ* 119)։

*Ա. կողմ՝ թագաւորն հանդիպահայեաց, թագակիր և ձի հեծած. աջ ձեռքը մական, իսկ ձախը՝ ձիուն սանձը. ձին աջ կ՚ընթանայ, առջեւը «Թ» գիրը։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝ «Վ»ով՝*

+ ԼԵՎՈՆ Թ[ԱԳ]ԱՒՈՐ ՀԱՅՆ

*Բ կողմ՝ կեդրոնը խաչակիր առիւծ, որ աջ կը քալէ, և որուն աջ թաթին առջեւ «Թ» գիրը կայ։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

+ ՇԻՆ(Ե)ԱԼ Ի [ՔԱ]ՂԱՔՆ Ս(ԻՍ)

*Դրամ։ Տրծ.* 20 *հզրրդմետր։ Ա. կողմ. Լեւոն ձի հեծած՝ աջ կ՚ընթանայ. ձիուն առջեւ «Թ» գիրը։*

*Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝ դարձեալ «Վ»ով՝*

\+ ԼԵՎՈՆ ԹԱԳԱ[ՒՈՐ ՀԱՅ ?]

*Բ կողմ. կեդրոնը՝ աջ քալող առիւծ, որուն առջեւի թաթին տակ «Թ» գիրը, իսկ վերեւ՝ փոքր խաչ մը։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ՇԻՆԵ(Ա)Լ Ի ՔԱ[ՂԱՔՆ ՍԻՍ]







119-121. *Լեւոն Ե.ի դրամները.*

ԱՐԾԱԹԱԴՂԻՆՉ. *Կիսադրամ։ Տրմ.* 15 *հզրրդմետր։* (*Ձեւ* 120)*։ Ա. կողմ՝ Լեւոնի թագակիր կիսանդրին, հանդիպահայեաց։*

*Խորագիրն է. — երկու կարգ մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳ

*Բ կողմ՝ կեդրոնը լատինացի խաչ։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԱՒՈՐ ՀԱՅՈՑ

*Ուրեմն երկու երեսները միացընելով կարդալու ենք՝*

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

— *Տարբերութիւնք. Ա. կողմ՝ Լեւոնի թագակիր կիսանդրին, հանդիպահայեաց։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ

*Բ կողմ՝ կեդրոնը ճաճանչաւոր խաչ։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ Կ[ԱՐՈՂ,Ո]ՒԹԲՆ

*այսչափ միայն. «ԱՑ» չկայ։*

— *Տարբ. Տրմ.* 14 *հզրրդմետր։ Ա. կողմ՝ Լեւոնի անճանաչելի կերպով գէշ գծուած կիսանդրին։*

*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈ(Ր)

*Բ կողմ՝ կեդրոնը հաւասարաթեւ խաչ։*
*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅ(ՈՑ)

ՊՂԻՆՁ. *Կիսաղրամ։ Տրծ.* 15 *հզրրդմետր։* (*Զեւ* 121)։
*Ա կողմ. կեդրոնը՝ աջ դարձած և կանգնած առիւծ։*
*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ

*Բ կողմ. կեդրոնը՝ ճաճանչաւոր լատինացի խաչ։*
*Խորագիրն է. — երկու մարգարտաշար շրջանակներու մէջ՝*

\+ ԱՄԵՆԱՅՆ ՀԱ(ՅՈՑ)

— *Տարբերութիւն. Ա կողմ՝ առիւծն աջ կը քալէ։ Խորագիրն է՝* + ԼԵՒՈՆ ԹԱԳԱ|[ՈՐ]
*Բ կողմ՝* + [ՇԻՆԵԼ Ի] ՔԱՂԱՔ



122. *Լեւոն Ե.ի տապանաքարը.*

# ԼԵՒՈՆ Ե.Ի ԿՆԻՔՆ ԵՒ ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Լեւոն Ե.ի կնիքն և ստորագրութիւնը դրուած կը տեսնենք Հայոց Թափառական Թագաւորին կողմէ Մատրիտի քաղաքացիներուն տրուած հրովարտակին տակ, երբ Լեւոն՝ գերութենէ ազատուելէ ետք՝ Սպանիոյ Մատրիտ, Վիլլարէալ և Անդուխար քաղաքներուն տանուտէր* (seigneur) *էր, և որով Լեւոն կը խոստանար անոնց հինէն ի վեր վայելած բոլոր առանձնաշնորհումները նոյնութեամբ պահել*[1]*: Այս հրովարտակը կը պահուի Մատրիտի դիւանարանին մէջ, հետեւեալ թուահամարով.* 2 a, 305–60:

*կնիքին վրայ կը կարդանք.* (*Ձեւ* 117):

S' LEONIS QVINTI REGIS ARMENIE

*այսինքն՝ «կնիք* (= Sigillum) *Լեւոնի հինգերորդի Թագաւորին Հայոց»:*

*իսկ ստորագրութիւնը կ'ըսէ.* (*Ձեւ* 118):

Roy. Lyon: V: r –

*այսինքն՝ «Լեւոն Թագաւոր Ե. ի(շխող* = régnant):

*Լեւոն Սպանիայէ Պարիս անցնելէ ետք՝ ուրիշ կնիք մը ունեցած է, որուն պատկերը դրած եմ Լեւոնի կեանքին նուիրուած գրքիս մէջ, եր.* 112*ի դէմը դրուած Լեւոնի երկու ստացագիրներուն տակ:*

---

1. *Հրովարտակիս թարգմանութիւնը տուած եմ իմ «Լեւոն Ե. Լուսինեան» գործիս մէջ, եր.* 96:



123. Զինանշան Լեւոն Ե.ի.

## Գ. – ՅԵՏՌՈՒԲԻՆԵԱՆ ԴԱՍ [Période Post-Rubénienne]

(1393-1489)

Հայկական դրամներու մասին այսքան խօսելէ վերջ՝ աւելորդ չեմ համարեր յիշատակել նաեւ այն դրամները, որոնք կոխուած են Հայոց Թագաւորութեան անկումէն (1375) ետք, բայց՝ «Հայո՛ց» անունով (·́):

Այս տեսակ դրամներու եւ Հայաստանի մէջ կոխուած օտար դրամներու միջեւ եղած տարբերութիւնն այն է, որ ետքիններս՝ տպուած են Հայաստան արշաւող եւ զայն նուաճող օտարներու (ինչպէս որ տեսանք՝ Հռովմայեցիներու, Արաբներու, Մոնղոլներու եւ այլոց) կողմէ, մինչդեռ հիմայ՝ մեր խնդրոյ առարկայ ըլլալիք դրամները կոխուած են, Հայաստանի իշխանութեան անկումէն ետք՝ հայ Թագաւորներու արքայական տիտղոսը չահագործողներու կողմէ...:

Այս շահագործողներն եղած են Կիպրոսի վերջին Թագաւորներն ու Թագուհիները, – Յակոբ Ա.էն սկսեալ մինչեւ Կատարինէ Կորնարոյ, այսինքն 1393էն մինչեւ 1489, – ամբողջ եօթը գահակալ, մինչեւ որ Վենետիկի Հանրապետութիւնը վերջ դրած է Կիպրոսի Թագաւորութեան (1489), որուն վերջին Թագուհին՝ Թէեւ գահազուրկ եւ աքսորական՝ մինչեւ իր մահուան օրը (10 Յուլիս 1510), եւ նոյն իսկ գերեզմանէն անդին, շարունակած է կրել՝ «Թագուհի Երուսաղէմի, Կիպրոսի եւ Հայաստանի» տիտղոսները[1]:

Նախ զննենք ասոնց Ազգացուցակը:

---

1. Կատարինէի տապանաքարին վրայ կը կարդանք, ըստ Հ. Ներսէս Վ. Տիրացուեանի ընդօրինակութեան. — D. O. M. | Catharina Corneliae | Cypri Hierosolymorum | ac Armeniae reginae | cineres. այսինքն՝ «ՈՐ ԷՆ. Կատարինէ Կորնարոյի՝ Կիպրոսի, Երուսաղէմի եւ Հայաստանի Թագուհիին՝ աճիւնները»:

# ԱԶԳԱՑՈՒՑԱԿ

## ՅԵՏՌՈՒԲԻՆԵԱՆ «ՀԱՅՈՑ» ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ

1. ՅԱԿՈԲ Ա. = ՃԱԳԷԹ
(1382-1398)

2. ՅԱՆՈՍ
(1398-1432)

3. ՅՈՎՀԱՆՆԷՍ Բ.
(1432-1458)

4. ԿԱՐԼՈՏՏԱ
*և այրը՝*
ԼՈՒԴՈՎԻԿՈՍ, *դուքս Սավոյիոյ*
(1458-1460)

5. ՅԱԿՈԲ Բ.
(1460-1473)

6. ՅԱԿՈԲ Գ.
(1473-1474)
*ասոր մայրը՝*

7. ԿԱՏԱՐԻՆԷ ԿՈՐՆԱՐՈՅ
(1474-1489)

Անշուշտ պիտի հարցուի, թէ ազգակցական ի՞նչ կապերով կամ թէ ժառանգական ի՞նչ փաստերով՝ այս եօթը գահակալներն իրենց տիտղոսներուն վրայ անմիջապէս աւելցուցած են նաեւ — «Հայաստանի Թագաւոր»ի տիտղոսը։

Ես ալ պիտի հարցունեմ, թէ ի՞նչ իրաւունքով Կիպրոսի Թագաւորները — նոյն իսկ Երուսաղէմի Թագաւորներու սերունդէն ըլլալնին ընդունելով հանդերձ — կը կրէին նաեւ՝ «Երուսաղէմի Թագաւոր» տիտղոսը, երբ այս Թագաւորութիւնը Սալահ էդ - դինի ձեռքով կործանած էր 1187ին, բայց Կիպրոսի գահակալները մինչեւ վերջը՝ այսինքն մինչեւ Կատարինէի մահն՝ յամառեցան կրել այս տիտղոսը։

Ահաւասիկ ամբողջ պատմութիւնը. —

Լեւոն Ե.ի մահուան տարին (1393) Կիպրոսի ՅԱԿՈԲ Ա. Թագաւորը (1382–1398)՝ Հայոց Թագաւորութեան տիտղոսն իւրացուց, և ինքզինքը «Հայաստանի Թագաւոր» հռչակեց Կիպրոսի մէջ։

Ասիկա լոկ անուանական տիտղոս մըն էր, որ կ'աւելնար Կիպրոսի Թագաւորներու տիտղոսներուն վրայ, ինչպէս էր «Երուսաղէմի Թագաւոր» տիտղոսը։

Բայց կ'երեւի թէ Կիլիկիոյ Հայերն ալ, Եգիպտոսի սուլտաններէն գաղտնի, իբրեւ օրինաւոր Թագաւոր ճանչցած են Յակոբը. վասն զի Սիսի մէջ գրուած Տաղարանի մը յիշատակարանը՝ հետեւեալ անսպասելի յայտնութիւնը կ'ընէ.

«Գրեցաւ եղանակաւոր Տաղարան հին և նոր, զոր առաջին սուրբ Հարքն են եղանակեալ, ի Թուին ՊԽԴ (1395), ի Հայրապետութեան Տեառն Կարապետի, և ի Թագաւորութեան Կիպրոսի՝ ՃԱԳԷԹի, որ և Հայոց այլ օրհնեցաւ և անուանեցաւ թագաւոր[1]»։

Ուրեմն՝ հասկցուեցաւ գաղտնիքը։

Սակայն, հակառակ այս վկայութեան, Յակոբ Ա.ի անունով՝ «Հայոց Թագաւոր» վերտառութիւնը կրող դրամ գոյութիւն չունի, կամ թէ գտնուած չէ դեռ, այլ ասոր յաջորդէն սկսած՝ Կիպրոսի Թագաւորներու դրամներուն վրայ, գրեթէ միակերպ, գործածուած է այդ տիտղոսը։

Ուշադրութեան արժանի է, որ Կարլոտտա Թագուհիի անունով ծանօթ բայց հազուագիւտ դրամներուն վրայ «Հայոց Թագուհի» չէ գրուած, այլ միայն իր ամուսնոյն՝ Լուդովիկոսի անունով տպուած դրամներուն վրայ կայ «Հայաստանի Թագաւոր» տիտղոսը։

Հակառակ այս զանցառութեան, Ստեփանոս Լուսինեանի To-

---

1. Հայաստան լրագիր Կ. Պոլսոյ, 31 Յունվար 1852։

pografiaէն (էր. 74) գիտենք, թէ Հռովմի Ս. Պետրոս եկեղեցիին մէջ՝ Կորլոտտայի տապանաքարին վրայ գրուած է. — Karola Hierusalem Cypri | et Armeniae Regina | obiit XVI Julii anno Dn'o | M CCCC L XXXVII, այսինքն՝ «Կարոլա, Երուսաղէմի, Կիպրոսի և Հայաստանի Թագուհի, վախճանեալ ի 16 Յուլիսի, յամի Տեառն 1487»:

Կարլոտտա՝ կամաւոր աքսորանքի մէջ մեռնելէ յառաջ՝ թագաւորութեան բոլոր իրաւանքները փոխանցած էր իր ամուսնոյն եղբօրորդիին, Սավոյիայի Դուքս Կարոլոս Ա.ի (1485), որ սակայն առանց թագաւորելու մեռած է 1489 թուին: Արդ, ոմանք այս փոխանցումէն կը հետեւցնեն, թէ Իտալիոյ արդի թագաւորները, — որոնք Սավոյիոյ Տան կը պատկանին, — իրենց դրամներուն ու տիտղոսներուն վրայ աւելցուցած են նաեւ «Հայաստանի թագաւոր» տիտղոսը:

Բայց այս կարծիքը, որ շատ անգամներ յեղյեղուած է, ո՛ և է կերպով հաստատուած չէ:

Իտալիոյ վեհ. Թագաւորին քով իմ դիմումիս արդիւնքն ալ՝ այս անհիմն ենթադրութիւնը հերքեց: Նոյն դիմումի՝ ինձ համար կատարած էր նաեւ Հ. Մկրտիչ Վ. Պոտուրեան, և պատասխանը բացասական եղած էր: Վերջերս ալ՝ Հ. Վարդան Վ. Հացունի, որ իմ խնդրանքիս վրայ՝ Իտալիոյ Թագաւորին հեղինակած դրամագիտական բազմահատոր մէկ աշխատութեան մէջ պրպտումներ կատարեց, իր 8 փետր. 1933 թուակիր նամակով հետեւեալը պատասխանեց ինձ. — «Քննեցի Սաւոյիոյ տան դրամոց ցուցակները, որոնք «դրամոց գրին ցանկ չունենալով, պահանջեցին մի առ մի թղթա«տել. և ահա արդիւնքը: Նախ Vitt. Amedes I է, որ 1634ին «իւր դրամոց վրայ Dux Savaudie բառից քով կը յաւելու Rex «Cipri: Այս տիտղոսը կը շարունակուի, մինչեւ որ համանուն Բ «դուքսը կը յաւելու Երուսաղեմի անունն ալ, 1713ին. Jer. et «Cyp. Rex: Այնուհետեւ կը շարունակուի այս տիտղոսը, մինչեւ «1861, ուր Վիկտ. Եմմանուէլ Բ, որ մինչեւ այդ թուականը պա«հած էր նոյն տիտղոսը, Իտալիոյ միութեամբ կը պարզէ իւր տիտ«ղոսները և կը գրէ Regus d'Italia: Հետեւաբար Հայաստանի «անունը գոյութիւն չունի Կիպրոսի և Երուսաղեմի քով»:

———

## ՅԱԿՈԲ Ա. [Jacques I]

(1382-1398)

Ինչպէս որ ըսինք, Յակոբ Ա.է հայաղրամ չունինք։ Ասոր դրամներն՝ Ա կողմին վրայ ունին, մէջտեղն՝ առիւծաբարձ գահ մը, որուն վրայ Թագաւորը հանդիպահայեաց բազմած է, մէկ ձեռքը խաչակիր գունտ, իսկ միւսը՝ մական։

Խորագիրն է. – IAQVE – ROI D

Բ կողմ՝ կեդրոնը Երուսաղէմեան խաչ. իսկ շուրջը՝

+ IERVXALEM E D H,IPRE

այսինքն՝ «Յակոբ, Թագաւոր Երուսաղէմի և Կիպրոսի»։

---

## ՅԱՆՈՍ [Janus]

(1398-1432)

Այս Թագաւորն առաջինն է Կիպրոսի մէջ՝ «Հայաստանի Թագաւոր» տիտղոսը գործածող։

Ա կողմ. Թագաւորը պսակաւոր՝ նստած է գահի մը վրայ. ձեռքը բռնած է խաչակիր գունտ և մական։ Գահին ձախ կողմը չորս մասերու բաժնուած զինանշանն է. առաջինը՝ Երուսաղէմը կը ներկայացնէ. երկրորդն ու երրորդը՝ Կիպրոսի առիւծը իսկ չորրորդը՝ Հայաստանը ներկայացնող առիւծ մը։

Խորագիրն է. – երկու համաձիր շրջանակներու մէջ՝

+ IANVS. PAR LA GRACE. DE. DIE. ROI

Բ կողմ. կեդրոնը Երուսաղէմեան խաչ մը. իսկ շուրջը՝

+ D'IERVZALEM. D'CIPRE. D'ARMENI .

այսինքն՝ «Յանոս, շնորհիւն Աստուծոյ Թագաւոր – Երուսաղէմի, Կիպրոսի, Հայաստանի»։

---

## ՅՈՎ. ՀԱՆՆԷՍ Բ. [Jean II]

(1432–1458)

Թագաւորը նստած է գահաձեւ աթոռի մը վրայ. ձեռքը մական և խաչակիր գունտ։ Գահին ձախ կողմը՝ արքայական զինանշան։

Խորագիրն է. – Ա. կողմը՝ երկու շրջանակներու մէջ՝

+ IEhAN PAR LA GRACE DE DIEoV ROI

Բ կողմ՝ կեդրոնը Երուսաղէմեան խաչ. շուրջը՝

+ DE IERLMo DE CHIPRE. E DARMEN

այսինքն՝ «Յովհան, շնորհին Աստուծոյ՝ թագաւոր – Երուսաղէմի, Կիպրոսի և Հայաստանի»։

---

## ԿԱՐԼՈՏՏԱ ԼՈՒՍԻՆԵԱՆ

ԵՒ ԱՅՐԸ՝ **ԼՈՒԴՈՎԻԿՈՍ**, ԴՈՒՔՍ ՍԱՎՈՅԻՈՅ

**[ Charlotte de Lusignan et Louis de Savoie ]**

(1458–1460)

Կարլոտտայի առանձինն դրամներուն վրայ Հայաստանի յիշատակութիւնը չկայ, բայց ըստ սովորութեան՝ Ա. կողմի զինանշանը չորսի բաժնուած է, և առաջին մասը՝ Երուսաղէմը ներկայացնելէ ետք, երկրորդ ու երրորդ մասերը՝ Կիպրոսի առիւծներն են, իսկ չորրորդը՝ Հայաստանը ներկայացնող առիւծն է։

Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝

+ CARLOTA DI GRA. REGNA

այսինքն՝ «Կարլոտտա, Աստուծոյ շնորհիւ՝ թագուհի»։

Բ կողմը՝ Երուսաղէմեան խաչ։

Իսկ զալով Լուդովիկոսի հետ տպած դրամներուն.

Ա. կողմը՝ թագաւորը նստարանի ձեւով աթոռի մը վրայ բազմած է կեդրոնը. ձեռքը մական և խաչակիր գունտ։ Ձախ կողմը՝ զինանշան։

Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝

+ LVDOV····· GRACIA. REX

*Բ կողմը՝ կեդրոնը Երուսաղէմեան խաչ. իսկ շուրջը՝*

+ IERVSALEM. CIPRI. ET ARMENIE

*այսինքն՝ «Լուզով[իկոս, Աստուծոյ] շնորհիւ՝ Թագաւոր – Երուսաղէմի, Կիպրոսի և Հայաստանի»։*

---

## ՅԱԿՈԲ Բ. [Jacques II]

(1460-1473)

*Ա կողմ. Թագակիր Թագաւորը ձի հեծած՝ աջ կողմ կը ձիավարէ. աջ ձեռքը բռնած է սուր։*
*Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝*

: IAC..O..BS. ĐEI G.

*Բ կողմ՝ Երուսաղէմեան խաչ. իսկ շուրջը՝*

+ : R : IERVS : CIPRI : ET ARMIA :

*այսինքն՝ «Յակոբոս, շնորհիւն Աստուծոյ – Թագաւոր Երուսաղէմի, Կիպրոսի և Հայաստանի»։*
*— Տարբերութիւնք. Ա կողմ՝* : IA : COBO. – DEI : G :
*Բ կողմ՝* : R : IERVS : CIPRI : ET : ARMIN
*— Տարբ. Ա կողմ՝ կանգնած և ձախ դարձած առիւծ, որուն շուրջը՝*

+ IACOBVS : DE : GRACIA : REX

*Բ կողմ՝ Երուսաղէմեան խաչ. իսկ շուրջը՝*

+ IERVSALEM : CIPRI : ARMINIE

---

## ՅԱԿՈԲ Գ. [Jacques III]
## ԵՒ ՄԱՅՐԸ՝ ԿԱՏԱՐԻՆԷ [Catherine]

(1473–1474)

*Ա կողմ՝ չորսի բաժնուած վինանշան, որուն առաջին մասը կը ներկայացնէ Երուսաղէմը, երկրորդ և երրորդ մասերը՝ Կիպրոսը, իսկ չորրորդը՝ Հայաստանի առիւծը:*

*Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝*

+ KATERIN : D : G : R : IRM : : CP

*Բ կողմ՝* + IACOBS : D : G : R : IRM : CIP : A : I :

*այսինքն՝ « Կատարինէ, շնորհիւն Աստուծոյ՝ Թագուհի Երուսաղէմի, Կիպրոսի – Յակոբոս, շնորհիւն Աստուծոյ Թագաւոր Երուսաղէմի, Կիպրոսի, Հայաստանի »:*

---

## ԿԱՏԱՐԻՆԷ ԿՈՐՆԱՐՈՅ, ԱՌԱՆՁԻՆՆ
## [Catherine de Cornaro, seule.]

(1474–1489)

*Ա. կողմ՝ Թագուհին պսակաւոր, շղարշակիր. նստած է գահի վրայ, հանդիպահայեաց դիրքով. ձեռքը մական և խաչակիր գունտ:*

*Խորագիրն է. – երկու շրջանակներու մէջ՝*

+ KATERINA : VENETA : REGIAN

*Բ կողմ՝ կեդրոնը Երուսաղէմեան խաչ. իսկ շուրջը՝*

+ IERVSALEM. CIPRI. ET. ARMI.AE.

*այսինքն՝ «Կատարինէ վենետացի. Թագուհի – Երուսաղէմի, Կիպրոսի և Հայաստանի »:*

*— Տարբերութիւն. Ա. կողմ՝*

+ KATERIN : D : G : R : IRM : CP : AR

*այսինքն՝ «Կատարինէ, շնորհիւն Աստուծոյ՝ Թագուհի Երուսաղէմի, Կիպրոսի, Հայաստանի »:*

*Բ կողմ՝ կեդրոնը Երուսաղէմեան խաչ. իսկ շուրջը՝*

R : IERVS : CIPRI : ET ARMIA :

*այսինքն՝ «Թագուհի Երուսաղէմի, Կիպրոսի և Հայաստանի»:*

*ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.* — **Édouard Dulaurier,** Recueil des Croisades, *Documents arméniens,* t. I. Paris, 1869. — **V. Langlois,** Numismatique de l'Arménie au Moyen Age. Paris, 1855. — Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ԱԼԻՇԱՆ, *Սիսուան: Վենետիկ,* 1885. — Հ. ԿՂԵՄԷՍ Վ. ՍԻՊԻԼԵԱՆ, *Դասաւորութիւն Ռուբենեան դրամոց: Վիէննա,* 1892: — **G. Schlumberger,** Numismatique de l'Orient latin. Paris, 1878. - *Նոյնը,* Mélanges de numismatique et de sigillographie médiévales. Paris, 1905. — Հ. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ԹՈՐՈՍԵԱՆ, *Կիլիկիոյ և Կիպրոսի առնչութիւնք և Կ. Կոռնարոյ թագուհին. Բազմ.* 1898 *էջ* 528. Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ, *Լեւոն Ե. Լուսինեան, վերջին թագաւոր Հայոց: Պարիս,* 1908: – *Նոյնը, «Կոչնակ»,* ԺԹ *տարի,* 1919, *Թիւ* 42: — **K. J. Basmadjian,** La Cilicie, son passé et son avenir. Paris, 1919. — **M. Brosset,** Monographie des monnaies arméniennes. St. Pétersb. 1839.



124. ՆԻԿՈՍԻԱ. — *Հայ Լուսինեանի մը տապանաքարը.*

## ԺԱ․

# ՎՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ

[Domination géorgienne]

(1124-1236)

Վրաց պատմիչներէն[1] կը սորվինք, թէ իրենց Արշակունի Հարստութեան հիմնադիրներն ու շարունակողներն եղած են Հայերը։

Այսպէս՝ Վրաստանի առաջին հայ թագաւորն էր ԱՐՇԱԿ կամ ԱՐԲԱԿ (Ն․ Ք․ 93-81), որուն յաջորդած են՝ որդւէ որդի՝ ԱՐՏԱԿ (Ն․ Ք․ 81-66), ԲԱՐՏՈՆ (Ն․ Ք․ 66-33), և իրենց արենակիցն՝ ԱԴՐԻԿ (Ն․ Ք․ 2-55 Յ․ Ք․), որ ժամանակ Վրացիք՝ Հայաստանի թագաւորներուն հպատակ դարձան։ Իսկ անոնց յաջորդներուն ժամանակ երբոր Վրացիք Հայոց դէմ ապստամբեցան և արքայորդին՝ Զաբենը գերի բռնեցին, Հայերը՝ Վրաստանի վրայ յարձակեցան, երկրին մեծ մասը գրաւեցին և քանդեցին. որմէ ետք Վիրք և Օսք (= Ալանք)՝ Հայոցմէ հաշտութիւն խնդրեցին, ետ տալով Զաբենը, և խոստանալով այսպէս ծառայել Հայոց. — «Զդրամն՝ գրով և անուամբ «Հայոց թագաւորին վարել, և թէ գայ թշնամին ի վերայ ձեր, եր«կոքին թագաւորքս Վրաց կեամք և մեռանիմք ընդ ձեզ. և եթէ «դուք երթայք ի պատերազմ ընդ այլում ազգի, տասն հազար «սպառազէն ի Վրաց գան ընդ ձեզ։ Եւ հաւանեալ այսմ Հայոց, «անդրէն դարձուցին զառեալ սահմանն Վրաց, զՄուղա, զԴմուխս, «զՋաւխէթ և զԱրտահան. և եղեն Հայք և Վիրք և Օսք ազգ մի[2]»։

Ուրեմն՝ Հայկական դրամներ սկսան գործածել Վիրք և Ալանք։

Ի՞նչ էին այս դրամները։

— Անշուշտ՝ Հայաստանի մէջ հայ թագաւորներու անունով տրպուած և շրջաբերութեան մէջ գտնուող հայ դրամներ։

Վրաց Արշակունի հարստութիւնը տեւած է մօտաւորապէս երեքհարիւր յիսուն տարի, մինչեւ Վրաստանի վրայ Սասանեանց տիրապետութեան սկիզբը (265 Յ․ Ք․)։ Այս թուականէն սկսեալ

1. Քարթլիս Ցխավրէբա, Ջուանշէր, Բրոսէ և այլք։
2. ՋՈՒԱՆՇԷՐ, Պատմ. Վրաց, եր. 34։

Վրաց պատմութիւնն իր աւանդական շրջանէն ելնելով կը թեւակոխէ պատմական գետնի վրայ։

ԺԲ. դարուն՝ վերին Հայաստանի մէկ մասն, – իր Դուինով, Գանձակով, Էջմիածինով ու փառաւոր Անիով, – Վրաց իշխանութեան տակ անցած էր։

Վրական այս տիրապետութեան ժամանակներէն ծանօթ ԳԻՈՐԳԻ Գ.ի (1154–1184), իր հայասէր աղջկան՝ ԹԱՄԱՐ Թագուհիի (1184–1212), ինչպէս նաեւ ասոնց անմիջական յաջորդներուն դրամները՝ հայկական բնոյթ չունին երբեք։

Մեծանունն Թամարի օրով՝ Վրական Հայաստանի վրայ – ինչպէս նաեւ ամբողջ Վրաստանի – ընդհանուր կառավարիչ կամ փոխարքայ դրուած են ԶԱՔԱՐԷ և ԻՒԱՆԷ հայազգի եղբայրները, որոնք՝ 1199էն մինչեւ 1236՝ ամուր պարիսպներով պաշտպանեցին և բազմաթիւ եկեղեցիներով ու վանքերով ճոխացուցին իրենց խնամքին տակ գտնուած երկիրը, որով՝ Անիի արձանագրութիւններէն մէկին մէջ՝ «Թագաւոր» տիտղոսին արժանացան այս բառերով. — «Սուրբ և մեղսաքաւիչ պատարագն որ ի սմա կատարի՝ Սահակդխտո(յ) է, ծնաւղի Զաքարիա(յ) և Իւանէի, Թագաւորաց Հայոց[1]»։ Շիրակաւանի Ամենափրկիչ եկեղեցւոյ արձանագրութիւններէն մէկին մէջ ալ, – գրուած Հայոց ՈՀԷ (1228) թուին, – Խոշակ՝ Իւանէի կողակիցն՝ ինքզինք կ՚անուանէ «Վրաց և Հայւոց Թագո(ւ)հի[2]»։ Իսկ Էջմիածնի հայերէն ձեռագիրներէն Թիւ 230/1519 (Կարինեանի Թ. 223) մագաղաթեայ մեծադիր Աւետարանին, – որ «Բագնայրի Աւետարան» անունով ծանօթ է, և խոշոր երկաթագիր տառերով գրուած է, – մէկ տեղը՝ Զաքարէ և Իւանէ սպասալարները կոչուած են «կեսառոսք Հայւոց եւ Վրաց եւ ամենայն Ափխազաց» (երես $297^{ա}$)։ Ուրեմն՝ «կեսառ»ներ էին, այսինքն՝ կայսրե՛ր, «Թագաւոր» տիտղոսէն աւելի՛ բարձր, իրենց ձեռքն ունենալով ամբողջ երկրին իշխանութիւնն ու տիրապետութիւնը։

Բայց՝ ասոնցմէ դրամ չունինք, ինչպէս որ դրամ չունինք մեր քաջերու բոյնին վրայ՝ Ղարաբաղի անառիկ լեռներուն գագաթը՝ անկախութեան առաջին դրօշը պարզող անմահ Դաւիթ Բէգէն, որ՝ կ՚ըսուի թէ՝ իրաւունք ունէր դրամ տպելու։

Գիտենք, սակայն, թէ Ղարաբաղի մահմեդական մելիքները՝ դարերէ ի վեր դրամ տպած են հոն, իրենց գործածութեան համար։

---

1. Տեսնել իմ «Հայերէն արձանագրութիւնք Անւոյ եւն.» գործս, եր. 44։
2. Հ. Ղ. ԱԼԻՇԱՆ, Շիրակ, եր. 10։ Վենետիկ, 1881։

*ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ*․ — **Victor Langlois,** Essai de classification des suites monétaires de la Géorgie, depuis l'antiquité jusqu'à nos jours. Paris, 1860. - *Նոյնը,* Supplément à l'Essai de classification des suites monétaires de la Géorgie, etc. «Revue de la Numismatique belge», t. V. 3e série. Bruxelles, 1861. - ՋՈՒԱՆՇԷՐԻ *պատմչի ընծայեալ Համառօտ Պատմութիւն Վրաց։ Վենետիկ*, 1884։ — ՍԱՐՈՒԽԱՆ, *Վրաստան և Հայերը։ Վիեննա*, 1934։

ԺԲ․

# ՕՍՄԱՆԵԱՆ ՇՐՋԱՆ

[Domination ottomane]

(1512–1823)

Օսմանեան շրջանի վերաբերեալ դրամները՝ բաց ի մէկ հատէն՝ թէեւ հայկական չեն, հետեւաբար և հայկական դրամներու կարգին տեղ ունենալու իրաւունք չունին, բայց, որովհետեւ անոնցմէ մէկ մասը տպուած է Հայաստանի հողին վրայ հաստատուած Թուրք փողերանոցներուն մէջ, մեր գործին ամբողջութեան համար կ՚արժէ յիշատակել զանոնք։

Հայաստանի մէջ օսմանեան առաջին դրամը տպուած է՝

ՍԷԼԻՄ Ա․ի (1512–1520) կողմէ, Հիջրի 918ին (1512), Ամիդի (= Դիարբէկր) մէջ․ 924ին (1518) ալ՝ Խիզանի մէջ։ Այս սուլտանն է, որ Հայաստանն ու Եգիպտոսը՝ Թուրքիոյ միացուց։

ՍՈՒԼԷՅՄԱՆ Ա․ (1520–1566) նոյնպէս Ամիդի մէջ դրամ տպած է 926ին (1520)։ Նոյն տարին Կարնոյ մէջ ալ ոսկեդրամ մը տպած է։

ՍԷԼԻՄ Բ․ (1566–1574) տպած է Ամիդի և Գանձակի մէջ՝ 974ին (1566)։

ՄՈՒՐԱԴ Գ․ (1575–1595) ոսկի և արծաթ դրամներ տպած է Կարնոյ, Վանի, Նախիջեւանի, Գանձակի և Ամիդի մէջ՝ 982ին (1575)․ իսկ 986ին (1578) զարձեալ Գանձակի մէջ։ Այս սուլտանը՝ Մոկաց մէջ ալ դրամ մը տպած է, բայց թուականն անընթեռնլի է։

ՄԷՀԷՄՄԷԴ Գ․ (1595–1603) Եւդոկիոյ, Սեբաստիոյ, Գանձակի և Ամիդի մէջ՝ 1003ին (1595)՝ զանազան դրամներ տպած է։

ԱՀՄԷԴ Ա․ (1603–1617) Եւդոկիա, Գանձակ և Ամիդ՝ դրամներ տպած է 1012ին (1603)․ Կարնոյ մէջ՝ 1012ին (1603) և 1014ին (1605)․ իսկ Ամիդի ու Եւդոկիոյ մէջ ոսկեդրամներ տպած է 1013ին (1604)։

ՄՈՒՍՏԱՖԱ Ա․ (1617–1617 և 1622–1622) Ամիդի և Կարնոյ (ارزروم) մէջ արծաթ դրամներ տպած է 1031ին (1622)։

ՕՍՄԱՆ Բ․ (1618–1622) Գանձակի, Վանի, Եւդոկիոյ և Ամիդի մէջ արծաթ դրամներ տպած է 1027ին (1618)։

ՄՈՒՐԱԴ Դ. (1623–1639) *Գանձակի և Ամիդի մէջ արծաթ դրամներ տպած է* 1032*ին* (1623)։

ԻԲՐԱՀԻՄ (1639–1648) *Ամիդի մէջ արծաթ դրամ մը տպած է* 1049*ին* (1639)։

ՍԻՒԼԷՅՄԱՆ Բ. (1687–1691) *պղնձադրամ մը տպած է Վանի մէջ՝* 1100 (1688) *թուականին*։

ՄՈՒՍՏԱՖԱ Բ. (1695–1703) *Կարնոյ մէջ արծաթ դրամ մը տպած է* 1106*ին* (1695)։

*Այս սուլտանը՝ մի և նոյն թուականով՝* ارمينية (*Արմինիյա*) *վերտառութեամբ շատ հազուագիւտ ոսկեդրամ մըն ալ ունի, որ առաջին օրինակն է օսմանեան սուլտաններու դրամներուն մէջ։ Այս դրամէն օրինակ մը գտնեմ Կահիրէի Եգիպտական Թանգարանին մէջ*[1]*։ Խորագիրն է՝*

| | |
|---|---|
| *Ըզզէ նասրուհու դուրիբէ ֆի* | عز نصره ضرب فی |
| *Արմինիյա* | ارمينية |
| *սենէ* | سنة |
| 110[6] | ١١ [٦] |

*այսինքն՝ «Մեծ է Անոր*[2] *օգնութիւնը. — Տպեալ ի Հայաստան*։ 1695»։

*Ասոնցմէ զուրս՝ այս սուլտանին արծաթ մէկ դրամն ալ գիտենք, որ տպուած է Երեւանի մէջ, Հիջրի* 1115*ին* (1703)։

ԱՀՄԷԴ Գ. (1703–1727) *Երեւանի և Գանձակի մէջ զանազան դրամներ տպած է* 1115*ին* (1703)։

ՄԱՀՄՈՒԴ Ա. (1730–1754) *Գիւմիւշխանէի և Գանձակի մէջ արծաթ դրամներ տպած է* 1143*ին* (1730)։

*Նոյն տարին արծաթադրամ մըն ալ տպած է Կարսի մէջ։ Իսկ* 1146*ին* ? (1733) *պղինձ դրամ մը տպած է Դիարբէկրի մէջ*։

ՕՍՄԱՆ Գ. *սուլտանի օրով* (1754–1757) *գաւառական շատ մը փողերանոցներ՝ կամաց կամաց ջնջուեցան։ Իսկ* ՄՈՒՍՏԱՖԱ Գ.*ի օրով* (1757–1774) *օսմանեան փողերանոցը թէեւ վերջնականապէս կեդրոնացաւ Կ. Պոլսոյ մէջ, բայց՝ հակառակ այս որոշման՝* ՄԱՀՄՈՒԴ Բ. (1808–1839) *պղնձադրամ մը տպած է Վանի մէջ, Հիջրի* 1239*ին* (1823)։

*Ինչպէս տեսանք այս ցուցակէս, օսմանեան դրամներու մէջ* ارمينية (*Հայաստան*) *վերտառութեամբ մէ՛կ դրամ միայն գոյութիւն ունի*։

---

1. Տե՛ս Stanley Lane-Poole, Catalogue of the collection of Arabic Coins preserved in the Khedivial Library at Cairo, էրես 294, թիւ 1697։ London, 1897։

2. Այսինքն՝ Աստուծոյ։

*Գիտենք նաեւ, թէ* ԱԲԴ-ԻՒԼ ՄԷՋԻԴ (1839-1861) *Հիջրի* 1263*ին* (1846) *ոսկի և արծաթ դրամներ տպած է* كردستان (*Քիւրդիստան*) *վերտառութեամբ։ Նոյնպէս՝ այս սուլտանը Կարսի պաշտպանութեան համար արծաթ շքադրամ մը տպած է Հիջրի* 1272 *թուին* (1855)։

*Կ'արժէ յիշատակել նաեւ, թէ Կ. Պոլսոյ Օսմանեան փողերանոցի պետերն եղած են՝ սերունդէ սերունդ՝ հայազգի Տիւզեանները։ Նոյնպէս և փողերանոցին գործաւորներն եղած են Հայեր, որոնք մինչեւ վերջին ժամանակներս կը պաշտօնավարէին հոն։*

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. — اسماعيل غالب. تقويم مسكوكات عثمانيه. قسطنطينيه؛ ١٣٠٧. —

**Stanley Lane-Poole,** Catalogue of Oriental coins in the Br. Mus., t. VIII. The Coins of the Turks in the Br. Museum. London, 1883.

---




125. Քարտէս Այրարատ նահանգի.

## ԺԳ.

# ՆՈՐ ՇՐՋԱՆ

**[Nouvelle période]**

(1918)

Նոր Շրջանով եկանք հասանք մեր այս փշալից և տառապագին երկար ճամբորդութեան վերջին հանգրուանը։

Նախ՝ ունեցանք ԱՆԴՐԿՈՎԿԱՍԵԱՆ ԴԱՇՆԱԿՑԱՅԻՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ (22 Ապրիլ 1918) թղթադրամները. իսկ յետոյ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ հաստատումով՝ (28 Մայիս 1918) մենք վայելեցինք նորահաստատ պետութեան յատուկ թղթադրամները, որոնց վրայ սրտի սաստիկ տրոփումով, աննկարագրելի բուռն յուզումով և

*արտասուախառն ուրախութեամբ կարդացինք սա ելեկտրացուցիչ ու ցնցիչ բառերը, հայերէն խոշոր տառերով տպուած․ —*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

*«Յիսուն ռուբլի», «Հարիւր ռուբլի», «Երկու հարիւր ռուբլի»։ (Տիտ. Ա. և Բ.)։*

*Հայաստանի նախորդ և արդի կառավարութիւնները շրջաբերութեան հանեցին նաեւ հայկական ազգային նամականիշներ․․․։*

*Այսքան տիրապետութիւններէ, այսքան անտիրութիւններէ, այսքան դժբախտութիւններէ, այսքան հալածանքներէ և այսքան տառապանքներէ ետք՝ հրաշք է, որ հայ ազգը կ'ապրի՛ դեռ։*

*Այս կենսունակութիւնն ապացոյց է, որ այս տոկուն և չարքաշ ազգը՝ մեռնելու համար ստեղծուած չէ՛, այլ ապրելու՛ համար։*

*Եւ ՀԱՅ ԱԶԳԸ ՊԻՏԻ ԱՊՐԻ՛, ի՛նչ որ ալ պատահի, ո՛րքան որ մեր կեղծ « բարեկամներն » ու դարաւոր թշնամիները ջանան անճիտել մեզ։*

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ․ — Ս․ Վ․ՐԱՅԵԱՆ, *Հայաստանի Հանրապետութիւն*։ *Փարիզ*, 1928։ — **Yvert et Tellier**, Catalogue de Timbres - Poste. Paris, 1936.



126․ *Զինանշանք Տարօնի*․

# ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆՔ
## ԵՒ
## ԲԱՌԱՑԱՆԿ

Ա. = AR = արծաթ.
Ածּ. = Արծաթապղինձ = Billon.
Ա. կ. = Առաջին կողմ = Droit, Avers.
Ան. = Անագապղինձ = Bronze.
Բ կ. = Երկրորդ կողմ = Revers.
բիզանդ = byzant.
գր. = գրամ = gramme.
դահեկան ոսկի և արծաթ = denier.
դանգ, դանկ = dâniq.
դաշտ = champs.
դենար = dinar, denier.
դիդրաքմայ. Տ. երկդրամեան.
դրամ = drachme.
— հին. Տ. երկդրամեան.
— նոր = Կէս-երկդրամեան = tétrobole.
դրոշմ = coin.
երկդրամեան = didrachme.
երուսաղէմեան խաչ = croix de Jérusalem.
խորագիր — légende.
կապ = bandelette.
կէս-երկդրամեան. Տ. նոր դրամ.
կիսադրամ = hémidrachme.
— մանր = tiers de drachme.
կրկնաթեւ խաչ = croix lorraine.
հանդիպահայեաց = vu de face.
հատածիր շրջանակ = cercle grainété.
հզրրդմետր = հազարորդամետր = millimètre.
մարգարտաշար շրջանակ = cercle de perles.
Յ. Ք. = յետ Քրիստոսի.
յուշադրամ = médaille.
Ն. Ք. = նախ քան զՔրիստոս.
շրջապատ = contour.
շքադրամ. Տ. յուշադրամ.
Ո. = AV. = ոսկի.
չորեքդրամեան = tétradrachme.
Պ. = Æ = պղինձ.
վերտառութիւն. Տ. խորագիր.
Տարբ. / Տարբերութիւն } variété.
Տրծ. / Տարածութիւն } dimension.
փակագիր = monogramme.
փող = flus, obole.
քարտէզ. Տ. դենար.
քորի = triobole ?
Ք. Ա. = Քրիստոսէ առաջ.
Ք. Ե. = — ետք.

# ՀԱՅԿԱԿԱՆ ԴՐԱՄՈՑ ՀԱՒԱՔԱԾՈՑ ՈՒՆԵՑՈՂՆԵՐ

1. Ազգային Մատենադարան Կ. Պոլսոյ.
2. Ատրպետ (Լենինական).
3. Արամ Բաչաճեան (Պարիս).
4. Արտաշէս Յովհաննէսեան (Պարիս).
5. Բերլինի Պետական Թանգարան.
6. Բրիտանական Թանգարան (British Museum).
7. Գալըպճեան Եղբայրներ.
8. Գահիրէի Եգիպտական Թանգարան.
9. Գ. Շլումբերգեր (ապա՝ Bibl. Nat.).
10. Երեւանի Պետական Թանգարան.
11. Երուսաղէմի Հայոց վանք.
12. Զենոբ Մէրհամէթճեան (այժմ՝ Միհրան Մուրատեանի քով).
13. Էջմիածնի Թանգարան.
14. Ժակ Մաթոսեան (Գահիրէ).
15. Ինճուճեան Եղբայրներ.
16. Իտալիոյ Թագաւորին անձնական հաւաքածոն.
17. Լենինգրադի Ասիական Թանգարան.
18. — Երմիտաժի — .
19. Կ. Յ. Բասմաջեան.
20. Կիեւի Գանձատուն.
21. Կ. Պոլսոյ Օսմանեան Թանգարան.
22. Կրեմլինի Թանգարան (Մոսկուա).
23. Հայկազն Հապէշեան.
24. Մատթէոս Երէցեան (Բերիա).
25. Մուլթաֆօֆ (Պարիս).
26. Յարութիւն (Դոկտ.) Տէր Ղազարեան (Բերիա).
27. Պարիսի Ազգ. Մտնդրն. (Bibl. Nat. de Paris).
28. Սոյ Սահակ կաթողիկոս (ապա՝ Նուպարեան Մտնդրն).
29. Վենետկոյ Մխիթարեանց Թնգրն.
30. Վիեննայի — — .
31. — Պետական — .
32. Տիգրան Քէլէկեան (Պարիս)։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա.

## ՀԻՆԳ ԳՐԻՒ ԱՐԾԱԹ

Վարդան Պատմիչ կ՚ըսէ, թէ Մամիկոնեանք Յուստինիանոսէ հինգ գրիւ արծաթի գնեցին Կ. Պոլսոյ Ս. Սոփիա եկեղեցւոյն արեւմտեան դուռն, «ի յիշատակ Հայոց[1]»։ Ասոր հետեւանքով Ս. Սոփիայի արեւմտեան դուռը՝ մինչեւ Ստեփանոս Ասողիկ պատմիչի ժամանակ (ԺԱ. դար) կը կոչուէր «դուռն Հայոց». — Վարդան Մամիկոնեան բդեշխ՝ «երթեալ յանդիման լինէր թագաւորին Յուստինիանոսի, որ զսուրբն Սոփիա շինեաց, և հաղորդի ընդ նմա օրինաց, և յիւր անուն անուանէ զաւագ դուռնն սուրբ Սոփիայ, որ մինչեւ ցայսօր կոչի դուռն Հայոց[2]»։

Գիտենք, թէ մէկ գրիւը (լտ. satum), — որ հացահատիկներու կամ թէ ալիւրի չափ մըն էր, — տեղ տեղ կը կշռէր մօտաւորապէս 11 հազարագրամ (kilog.) և 570 գրամ. ուրեմն՝ Վարդան բդեշխի վճարածն էր 5 × 11,570 = 57,850 հազարագրամ արծաթ (՛)։ Բայց չմոռնանք, որ ըստ Հ. Յարութիւն Վ. Աւգերեանի՝ «Գրիւ ոչ միշտ զնոյն չափ նշանակէ, այլ դնի ըստ տեղւոյն փոխանակ այլ և այլ չափուց[3]»։

Տեսանք, թէ ասիկա ցորենի և նմանեաց չափն էր. սակայն չենք գիտեր, թէ որքա՞ն կը կշռէր 5 գրիւ արծաթը, զոր Մամիկոնեանք վճարեցին Յուստինիանոսի։

Ուրիշ խնդիր մըն ալ. — Ի՞նչ տեսակ արծաթ դրամ էր վճարուածը։ Արդեօ՞ք հայկական դրամ, թէ բիւզանդական։

Պատասխանը շատ որոշ է. — Յուստինիանոսի կամ Յուստինիանոս Ա.ի ժամանակ (527-565) Հայերը մասնաւոր դրամ չունէին, այլ կը գործածէին պարսկական կամ՝ թերեւս նաեւ՝ բիւզանդական դրամներ։

---

1. ՎԱՐԴԱՆ վրդպետի Հաւաքումն պատմութեան, եր. 85։ Վեննա. 1862։
2. ՍՏ. ԱՍՈՂԿԱՆ Պատմ. Տիեզերական, եր. 84-85։ Պետերբ. 1885։
3. Բացատրութիւն չափուց և կշռոց Նախնեաց, եր. 70։ Վեննա. 1821։

# ՑԱՆԿ ՊԱՏԿԵՐԱՑ

# ՏԱԽՏԱԿ Ա.

Թիւ 1. 250 ռուբլինոց թղթադրամի երկու կողմերը (Հ. Հ.)
2. 50 » » » » »

# ՏԱԽՏԱԿ Բ.

3. 100 ռուբլինոց թղթադրամի մէկ կողմը (Հ. Հ.)
4. » » » միւս » »
5. 50 » » մէկ » » (Անդրկովկ. Դաշն. Հանրպ.)
6. Պարոն Լեւոնի դրամին Ա. կողմը.
7. Արտաշատի անունով դրամ Կոմմոդոսի.
8. Տիգրան Դ.ի դրամը.
9. Արդիսսարէսի »
10. Տիգրան Մեծի «Արքայից Արքայ» դրամը.
11. Հ. Հ. Նամականիշը։

---

# ՑԱՆԿ ԱԶԳԱՑՈՒՑԱԿՆԵՐՈՒ

